ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ. ՄԻԱՑԵ՛Ք







# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՈՒՆՎԱՐ 1 1984



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**1**

ՀՈՒՆՎԱՐ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

**С О Д Е Р Ж А Н И Е**









# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1983 թվականի դեկտեմբերի 26-ին իր աշխատանքն սկսեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։**

**Պլենումը լսեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ Ն. Կ. Բայբակովի զեկուցումը «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1984 թվականի պետական պլանի մասին» և ՍՍՀՄ ֆինանսների մինիստր Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումը «ՍՍՀՄ 1984 թվականի պետական բյուջեի մասին»։**

**Պլենումի մասնակիցները մեծ ուշադրությամբ ծանոթացան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի ելույթի տեքստին։ Մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցողները լիակատար պաշտպանություն էին հայտնում այդ կարևոր քաղաքական փաստաթղթի դրույթներին ու հետևություններին, նշելով, որ դրանք սկզբունքային նշանակություն ունեն և պետք է դրվեն բոլոր կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների, բոլոր աշխատավորական կոլեկտիվների գործունեության հիմքում։**

**Ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթի տեքստը հրապարակվում է մամուլում։**

**Մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիշինը, Ուկրաինական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ա. Պ. Լյաշկոն, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ն. Սլյունկովը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ք. Մ. Բաղիրովը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Պ. Պ. Գրիշկյավիչուսը, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. Զայկովը, Ղազախստանի կոմկուսի Չիմքենտի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Ասկարովը, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը, ծանր ու տրանսպորտային մեքենաշինության մինիստր ընկ. Ս. Ա. Աֆանասևը, ՍՄԿԿ**

Չեչենա-Ինգուշեթիայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Վ. Վլասովը, ՍՄԿԿ Կեմերովոյի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ա. Գորշկովը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուներ՝ ընկերներ Վ. Ի. Վորոտնիկովին և Մ. Ս. Սոլոմենցևին փոխադրեց անդամներ:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամ ընկ. Վ. Մ. Չեբրիկովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամ ընկեր Ե. Կ. Լիգաչովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար:

Պլենումը շարունակում է աշխատանքը:

1983 թվականի դեկտեմբերի 27-ին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը շարունակում էր աշխատանքը: «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1984 թվականի պետական պլանի մասին» ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ Ն. Կ. Բայբակովի և «ՍՍՀՄ 1984 թվականի պետական բյուջեի մասին» ՍՍՀՄ ֆինանսների մինիստր Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան ՍՄԿԿ Սարատովի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Կ. Գուսևը, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ա. Տիխոնովը, Կամայի մեծաբեռ ավտոմոբիլի արտադրության միավորման (ԿԱՄԱԶ) ձուլագործարանի կարգաբերող փականագործների բրիգադավար ընկ. Գ. Ս. Բաշտանյուկը (Թաթարական ԻՍՍՀ), Մագնիտոգորսկի Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական կոմբինատի դիրեկտոր ընկ. Լ. Վ. Ռադյուկևիչը, «Կոմունարկա» պետական տոհմաբուծարանի մեքենայական կթի վարպետ ընկ. Մ. Ս. Գրոմովան (Մոսկվայի մարզ), ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստր ընկ. Պ. Ֆ. Լոմակոն, ՍՄԿԿ Կամչատկայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ի. Կաչինը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի առթիվ միաձայն ընդունեց որոշում, որը հրապարակվում է մամուլում:

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ԵԼՈՒՅԹԻ ՏԵՔՍՏԸ

Թանկագին ընկերնե՛ր:

Ցավոք սրտի, ժամանակավոր պատճառների բերումով ինձ չի հաջողվի ներկա լինել պլենումի նիստին: Բայց ես ուշի-ուշով ծանոթացել եմ եկող տարվա պլանի հիմքում դրված բոլոր նյութերին: Շատ եմ մտածել դրանց մասին, պատրաստվել էի ելույթ ունենալ և շարադրել իմ որոշ նկատառումները: Ուստի ՍՄԿԿ Կենտկոմի անդամներին ու անդամության թեկնածուներին, կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամներին, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի մասնակիցներին եմ ուղարկում իմ ելույթի տեքստը:

Ինչպես գիտեք, Կենտկոմի քաղբյուրոն, հաշվի առնելով տեղի ունեցած կարծիքների փոխանակումը, որոշում է ընդունել ձեր քննարկմանը ներկայացնել ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախապատրաստած 1984 թվականի պլանի և բյուջեի նախագծերը:

Պլենումում քննարկվելիք հարցերը կենսականորեն կարևոր են երկրի համար: Քաղաքական մեծ նշանակություն ունի այն, որ ապագայի խնդիրները առաջադրելու հետ միաժամանակ մենք գնահատում ենք, թե ինչպես են կատարվում XXVI համագումարի որոշումները, հանրագումարի ենք բերում Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումից հետո անցած ժամանակաշրջանի աշխատանքի արդյունքները, վերլուծում ենք ձեռքբերումներն ու թերությունները, որպեսզի ճիշտ հետևություններ անենք հետագայի համար:

Ընթացիկ տարում երկրում սկսեցին իրականացվել մեր տնտեսավարումը կատարելագործելու, կազմակերպվածությունը բարձրացնելու, պետական, աշխատանքային ու պլանային կարգապահությունը ամրապնդելու որոշ միջոցառումներ:

Դա մեծապես նպաստեց այն բանին, որ համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հաջողվեց մի շարք տեղամասերում շտկել գործերի վիճակը, բարձրացնել կադրերի ձեռներեցությունն ու պատասխանատվությունը, նրանց վստահությունը իրենց ուժերի նկատմամբ, բարձրացնել մասսաների ստեղծագործական ակտիվությունը: Նախատեսված կուրսը արժանացավ կոմունիստների, բոլոր աշխատավորների լիակատար հավանությանը:

Մարդիկ սկսել են աշխատել ավելի լավ տրամադրությամբ, արագացել են տնտեսական աճի տեմպերը, որոշ չափով բարձրացել են որակական ցուցանիշները: Ընդհանուր առմամբ դրական տեղաշարժ է նկատվում ժողովրդական տնտեսության մեջ: Այս ամենը հաստատում է մշակված գծի ճշտությունը, էկոնոմիկայի զարգացման առկա դժվարությունների հաղթահարման՝ կուսակցության առաջադրած խնդիրների ռեալությունն ու հիմնավորվածությունը:

Ինչպես տեսնում ենք, արդյունքներ կան: Բայց սա միայն սկիզբն է: Այժմ ամենակարևորը այն է, որ չկորցնենք ձեռք բերված տեմպը, ընդհանուր դրական գործարար մթնոլորտը, ավելի ակտիվորեն զարգացնենք դրական պրոցեսները:

1984 թվականի պլանի առաջադրանքների վերլուծությունը ցույց է տալիս, որ նրանում նախատեսված տեմպերն ու համամասնությունները հիմնա-

կանում համապատասխանում են այդ խնդիրներին, ամրապնդում են ընթացիկ տարվա դրական միտումները: Կարծում եմ, որ ընկերները սրան կհամաձայնեն:

Պլանը առաջվանից ավելի մեծ չափով է կողմնորոշված դեպի արտադրության արդյունավետության բարձրացումը: Ուժեղանում է նրա սոցիալական ուղղվածությունը: Անհրաժեշտ ամեն ինչ նախատեսված է երկրի պաշտպանունակությունը պատշաճ մակարդակում պահելու համար: Այսպիսով, պլանի նախագիծը համապատասխանում է կուսակցության քաղաքական ու տնտեսական ստրատեգիային և, կարծում եմ, կարող է ստանալ պլենումի հավանությունը:

Մի քանի օրից, ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում հաստատվելուց հետո, պլանը կդառնա էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, հազարավոր ձեռնարկությունների, միավորումների ու կազմակերպությունների տնտեսական կյանքի օրենքը: Այդ պլանով կորոշվի արտադրամասերի, տեղամասերի, արտադրական բրիգադների, միլիոնավոր աշխատավորների, բոլոր նրանց աշխատանքային ռիթմը, ովքեր անձնվեր գործունեությամբ ստեղծում են նյութական ու հոգևոր արժեքներ, ամրապնդում մեր հայրենիքի հզորությունը:

Ագրեսիվ իմպերիալիստական շրջանների մեղքով խիստ սրված միջազգային իրադրության պայմաններում պետական պլանի անշեղ կատարումը դառնում է յուրաքանչյուր սովետական մարդու, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, կուսակցական ու հասարակական յուրաքանչյուր կազմակերպության ոչ միայն պարտականությունը, այլև հայրենասիրական պարտքը:

Շատ կարևոր է, որ նոր տարվա առաջին իսկ օրերից լինի լավ մեկնարկ, որ մարդիկ տրամադրվեն է՛լ ավելի բարձրացնելու լարվածությունը աշխատանքում, չնայելով դժվարություններին, որոնք առջևում քիչ չեն:

Նախ և առաջ անհրաժեշտ է ուշադրությունը կենտրոնացնել այն առավել սուր հարցերի, այսպես կոչված, նեղ տեղերի վրա, որոնց լուծմամբ պայմանավորված կլինի գործի հաջողությունը:

Ընկերները գիտեն, որ 1984 թվականի պլանը հենց այնպես չի կազմվել: Այն հաշվեկշռված է որոշակի լարվածությամբ: Դրա վրա, իհարկե, զգալի չափով ազդել են ժողովրդական տնտեսության մեջ եղած հայտնի թերացումները, ինչպես նաև հենց պլանավորման որակը: Բայց դրանք ինչ պատճառներով էլ որ բացատրվելիս լինեն, մենք պարտավոր ենք ապահովել պլանի հաջող կատարումը: Եվ դրա առաջնագույն նախադրյալը թե՛ կենտրոնում և թե տեղերում ամբողջ աշխատանքի հստակ կազմակերպումն է:

Ըստ երևույթին, արդեն առաջին փուլում պետք է յուրաքանչյուր ճյուղում, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում լիակատար պարզություն լինի, թե ինչ ուղիներով, միջոցներով ու մեթոդներով են կատարվելու բոլոր ռեսուրսների, նյութերի, հումքի ու էներգիայի խնայողության, աշխատանքի արտադրողականության աճի, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացման՝ նախագծով նախատեսված բարձր առաջադրանքները:

Հարկավոր է այս ամենը նորից ու նորից կշռադատել և պլանի իրականացման ընթացքում շարունակ և հաստատակամորեն լրացուցիչ ռեզերվներ որոնել, որպեսզի ապահովվի ժողովրդական տնտեսության անխափան աշխատանքը:

Կուսակցականորեն խնդիրը կարող է դրվել միայն այսպես. հարկավոր է ապահովել պլանի անպայման կատարումը, բայց ընդսմին բոլոր հնարավորությունները օգտագործել դրա գերակատարման համար: Սրան պետք է նպատակամղված լինեն տնտեսական ամբողջ գործունեությունը, սոցիալիստական մրցությունը, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական մարմինների, տեղական սովետների տնտեսական, կազմակերպական, գաղափարադաստիարակչական ողջ աշխատանքը: Պլանը մշակելուց հետո ամենագլխավորն է, ասել է Լենինը, «...կարողանալ առաջացնել մասսաների և՛ մրցությունը, և՛ ինքնագործունեությունը, որպեսզի նրանք իսկույն գործի կպչեն»: (ԵԼԺ, հ. 52, էջ 43):



Կուզենայինք նշել, որ վերջին ժամանակներս ընդունվել են աշխատավորների ձեռներեցության հետագա զարգացմանը նպատակաուղղված մի շարք փաստաթղթեր: Դրանցից են նախ և առաջ աշխատավորական կոլեկտիվների մասին օրենքը, կարգապահության ամրապնդման, աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևի զարգացման մասին որոշումները և այլն:

Ըստ այնմ, թե կուսակցության որոշումները յուրաքանչյուր ձեռնարկությունում և միավորումում ինչպես կվերածվեն պրակտիկ գործերի, պետք է դատել, թե տնտեսական ղեկավարները, հասարակական կազմակերպությունները ինչպես են կարողանում մոբիլիզացնել մարդկանց, հասնել աշխատանքի վերջնական բարձր արդյունքների:

Պլանի նախագիծը քննարկելիս ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն պաշտպանեց այն առաջարկությունը, որ կուսակցական, արհմիութենական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների առջև կոնկրետ խնդիր դրվի աշխատանքի արտադրողականության արտապլանային բարձրացման հասնել, ասենք, 1 տոկոսով և արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ իջեցնել 0,5 տոկոսով: Սա պետք է դիտել որպես պլանի առթիվ կուսակցության լրացուցիչ առաջադրանք:

Ընկերներ Վ. Վ. Գրիշինը, Դ. Ա. Կունաևը, Վ. Վ. Շչերբիցկին, Է. Ա. Շևարդնաձեն, Վ. Ի. Վորոտնիկովը հաղորդել են, որ Մոսկվայի ու Լենինգրադի, Ուկրաինայի, Ղազախստանի, Վրաստանի այլ քաղաքների առաջավոր կոլեկտիվներ պատրաստ են հանդես գալու որպես այդպիսի շարժման նախաձեռնողներ:

Սա արժանի է ամենաջերմ հավանության: Այդպիսի հիմքի վրա հարկավոր է ամենուրեք կազմակերպել պարտավորությունների մշակումն ու ստանձնումը, խնայողության հատուկ հաշիվներ բացել ձեռնարկությունների, կառույցների, սովխոզների, բոլոր կազմակերպությունների համար և ակտիվորեն խրախուսել նրանց, ովքեր ավելի լավ արդյունքների կհասնեն:

1984 թվականի և ամբողջ հնգամյակի պլանի կատարման գործում լրացուցիչ լավ ավանդ կարող են դառնալ ժողովրդական նախաձեռնության նաև այլ բազմազան ձևեր:

Իր ժամանակին երկրում, օրինակ, լայնորեն ծավալվեց սարքավորումների աշխատանքի հերթափոխայնության գործակցի բարձրացման շարժումը: Հետագայում այդ շարժումը հանիրավի սկսեց մարել: Բայց չէ՞ որ այստեղ առկա են արտադրության աճի ու արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հսկայական ռեզերվներ:

Իրոք, այժմ ի՞նչ պատկեր կարելի է տեսնել: Օրինակի համար վերցնենք երկրի խոշորագույն ձեռնարկություններից մեկը՝ Խարկովի տրակտորի գործարանը: 1980—1982 թվականներին այդ ձեռնարկությունում հաստոցակազմը համալրվել է 9 տոկոսով, իսկ հերթափոխայնության գործակիցը 1,5 տոկոսից իջել է 1,41-ի: Սա բացատրում են աշխատանքային ռեսուրսների պակասով, մինչդեռ նախանձելի համառությամբ պահանջում են ավելի շատ սարքավորումներ և առանձնապես չեն անհանգստանում, թե դրանք ինչպես են օգտագործվելու:

Բայց կան նաև այլ օրինակներ: Դնեպրոպետրովսկի կոմբայնի գործարանում, որը, ի դեպ, ենթակա է նույն տրակտորային և գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրությանը, սահմանել են աշխատանքի գիտական կազմակերպման կանոններին աշխատատեղերի համապատասխանության ատեստավորման պարտադիր կարգ: Դրա շնորհիվ երեք տարում, արտադրանքի թողարկումն ավելացնելով հանդերձ, կրճատվել է շուրջ 600 աշխատատեղ, այլ խոսքով՝ առանց զգալի կապիտալ ծախսումների հենց իրենց մոտ՝ գործարանում, գտնվել են աշխատանքային ոչ քիչ ռեսուրսներ:

Կասկածից վեր է, որ արտադրության եռանդուն ավտոմատացման հետ զուգորդմամբ՝ գործի նկատմամբ հենց նման մոտեցումն է թույլ տալիս ի հայտ բերելու աշխատանքի արտադրողականության աճի հսկայական հնարավորությունները:

Ցավոք, վերջին տարիներս փաստորեն մոռացված է արտադրանքի նախագծային աշխատատարությանը արագորեն հասնելու շարժումը: Պետք է ուղղակի ասել, որ մի շարք ճյուղերում աշխատանքի ծախսումների նվազեցման նկատմամբ պատշաճ հոգածություն դեռևս չկա: Բայց չէ որ եթե վերհիշենք, ապա նախապատերազմական տարիներին ակտիվ պայքար էր մղվում աշխատատարության նախագծային մակարդակի ապահովումն արագացնելու համար:

Հարկավոր է, որ մենք վերածնենք նաև սարքավորումների աշխատանքի հերթափոխայնության գործակիցը բարձրացնելու և նախագծային աշխատատարության հասնելու շարժումը: Եվ իհարկե, այդ բանն անենք կազմակերպական ու տեխնիկական նոր հիմքի վրա: Հազիվ թե հարկ կա ապացուցելու, որ դրա հաշվին կարելի է էապես ավելացնել արտադրանքի թողարկումը և կրճատել արտադրության ծախսումները: Մինիստրությունները և գերատեսչությունները, պլանավորող մարմինները պետք է լրջորեն խորհեն այն մասին, թե ինչպես պիտի իրականացնել դրա հետ կապված միջոցառումները:

Հաջորդ հարցը: Կարգապահության ամրապնդման միջոցառումների համակարգում կարևոր նշանակություն ունի արտադրանքի մատակարարումների վերաբերյալ պայմանագրային պարտավորությունների կատարման մասին Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը: Ամեն ինչից երևում է, որ այդ միջոցառումը որոշ չափով բարելավել է դրությունը ժողովրդական տնտեսության մեջ: Բայց փաստերը նաև վկայում են, որ այդ սկզբունքային պրոբլեմը դեռ մինչև վերջ չի լուծված:

Պայմանագրերի և պատվերների կատարման համար տնտեսական ղեկավարներին ներկայացվող պահանջկոտությունը բարձրացված է: Դա այդպես է: Բայց, այնուամենայնիվ, դեռ կան «սողանցքեր», որոնք թույլ են տալիս պարգևավճարներ տալ մատակարարումների առաջադրանքները ոչ լրիվ կատարելու դեպքում: Պլանային մարմինների կողմից օրինականացված է նույնիսկ մի հատուկ տերմին. «թերակատարման առավելագույն տոկոս»: Ճիշտ է, հրահանգով վերապահում է արված, որ անկարգապահության այդ ցուցանիշը, այլ կերպ դա անվանել չի կարելի, պետք է լինի 1—2 տոկոսի և միայն բացառիկ դեպքերում՝ երեք տոկոսի սահմաններում:

Բայց քանի որ սկզբունքորեն թույլատրված է խախտել պայմանագրերը, ապա որոշ ղեկավարներ այդ «իրավունքը» օգտագործում են ամբողջ ուժով: Ասենք, որ մեքենաշինության մի շարք մինիստրություններ ընթացիկ տարում պայմանագրային պարտավորությունների թերակատարման առավելագույն սահմանը կիրառել են ձեռնարկությունների համարյա կեսի համար:

Միանգամայն հասկանալի է, որ մատակարարումների կարգապահությունը կախված է ոչ միայն ձեռնարկություններից, այլև նյութատեխնիկական մատակարարման մարմինների, տրանսպորտի, կառավարման այն բոլոր օղակների աշխատանքից, որոնք կոչված են ապահովելու արտադրական պրոցեսի անխափանությունն ու համաչափությունը: Եվ այդ պրոցեսի մասնակիցներից յուրաքանչյուրը պայմանագրային պարտավորությունների խախտման դեպքում պետք է պատասխան տա իր մեղքի չափով:

ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը պետք է քննության առնի այդ հարցերը, լրացուցիչ մշակի համապատասխան առաջարկություններ և պատշաճ կարգուկանոն հաստատի:

Ամենալուրջ ուշադրության է արժանի նաև այսպիսի մի պրոբլեմ: Մեր պլանային մարմինները, մինիստրություններն ու գերատեսչությունները դեռևս անհրաժեշտ լուծումներ չեն գտել երկրի առկա արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալը լիովին, բարձր հատույցով գործի դնելու համար:

Օրինակի համար վերցնենք վերջին տարիներս քիմիական ու նավթաքիմիական արդյունաբերության, ինչպես նաև մեքենաշինության մեջ ստեղծված հսկայական կարողությունները: Դրանցից շատերը երկար ժամանակ թերի են օգտագործվում ներճյուղային և միջճյուղային անկապակցվածության ու անհամամասնությունների պատճառով:

Կարծում ենք, որ ամեն մի մինիստրություն, ՍՍՀՄ պետպլանը, ՍՍՀՄ



պետմատը պետք է շատ կարճ ժամանակամիջոցում հատուկ միջոցառումներ մշակեն արտադրական պոտենցիալի օգտագործման արդյունավետությունը նվազեցնող նեղ տեղերի և անհամամասնությունների վերացման համար:

Եվ, իհարկե, մենք պարտավոր ենք մշտապես և հաստատակամորեն զբաղվել գիտատեխնիկական առաջադիմության արագացմամբ: Ինդուստրիայի շատ ճյուղեր այդ վճռական ուղղությամբ հիմա առաջ են շարժվում ավելի արագ և ավելի վստահ: Լավ զարկ տվեցին նոյեմբերյան պլենումից հետո ընդունված նոր որոշումները, նոր տեխնիկայի ստեղծումն ու ներդրումը խթանող կարևոր փորձերը:

Սակայն գիտատեխնիկական աշխատանքների ամբողջ համալիրի կազմակերպումը դեռևս ամենևին էլ չի կարգավորված: Մի շարք ճյուղերում նկատվում է դոփում տեղում, չեն կատարվում նոր տեխնիկայի վերաբերյալ պլանները, այդ պլանների մասշտաբայնությունն էլ հեռու է բավարար լինելուց: Ժողովրդական տնտեսության վիճակը պահանջում է, որ մինիստրությունները, գերատեսչությունները, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան վճռական շրջադարձ կատարեն դեպի արտադրության տեխնիկական մակարդակի, արտադրանքի որակի բարձրացում:

Շատ բան կախված կլինի նրանից, թե մենք գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու համար ինչպես կմոբիլիզացնենք ձեռնարկությունների, գիտահետազոտական և կոնստրուկտորական կազմակերպությունների կոլեկտիվներին, ինժեներատեխնիկական և գիտական կադրերին: Սա առաջնակարգ կարևորություն ունեցող խնդիր է: Մենք պարտավոր ենք այն լուծել:

Ամեն տարի սոցիալ-տնտեսական զարգացման պլանները քննարկելիս մենք ստիպված ենք անդրադառնալ կապիտալ շինարարության պրոբլեմներին: Դա կարելի է հասկանալ: Երկրում կապիտալ շինարարության մասշտաբները վիթխարի են: Դրա հետ է ուղղակի կապված արդյունաբերական արտադրությունն ընդլայնելու, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան ամրապնդելու, աշխատավորների բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու մեր պլանների իրագործումը:

Ցավոք, այդ կարևորագույն ճյուղերում տիրող վիճակը առաջվա պես մեզ չի կարող գոհացնել: Չի ապահովվում մի շարք կարողությունների և օբյեկտների ժամանակին գործարկումը:

Շինարարական կազմակերպությունների ղեկավարները հաճախ երկարաբարակ բացատրում են աշխատանքում տեղ գտած ձախողումները, փնտրում օբյեկտիվ պատճառներ: Սակայն հարկավոր են ոչ թե բացատրություններ, այլ շինարարության մեջ գործերի իրական բարելավում: Չէ՞ որ այդ ճյուղում ներդրված են հսկայական ժողովրդական միջոցներ, ստեղծված է հզոր ինդուստրիալ բազա, կան որակյալ նախագծային կազմակերպություններ, կառույցներն ավելի լավ են հագեցված տեխնիկայով:

Այստեղ, ինչպես որ, ի դեպ, ամենուրեք, հաջողության բանալին կադրերի պատասխանատվության բարձրացումն է, իրենց պարտականությունների անթերի կատարման համար նրանց նկատմամբ բարձր պահանջկոտությունը, հստակությունն ու ձեռներեցությունը, առաջադրված խնդիրների անվերապահ կատարումը: Հենց այս տեսանկյունից պետք է գնահատել մեր շինարարական մինիստրությունների և նրանց կոլեգիաների, տերիտորիալ մարմինների գործունեությունը, ղեկավարների աշխատանքը: Հարկավոր է առանձնապես խիստ պատասխան պահանջել բնակելի տների, դպրոցների, հիվանդանոցների, մանկական նախադպրոցական հիմնարկների, կոմունալ-կենցաղային օբյեկտների կառուցման պլանների կատարման համար:

Տնտեսական, կուսակցական և սովետական մարմինների անդուլ ուշադրությունն է պահանջում տրանսպորտի աշխատանքը: Իհարկե, վերջին ժամանակներս այստեղ նկատվում են դրական միտումներ: Բայց տրանսպորտում ավելի, քան որևէ տեղ, թերևս ավելի շատ են ռեզերվներն ու չօգտագործ-

Պետք է զգալիորեն ակտիվացնել էկոնոմիկայի ղեկավարումը կատարելագործելու, աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությունն է՛լ ավելի բարձրացնելու ուղղությամբ տարվող աշխատանքը։

Մենք կարևոր նշանակություն ենք տալիս ձեռնարկությունների իրավունքներն ընդլայնելու և աշխատանքի արդյունքների համար նրանց պատասխանատվությունն ուժեղացնելու տնտեսական գիտափորձի անցկացմանը մի շարք մինիստրություններում։ Դրա ընթացքում կստուգվեն կառավարման որոշ նոր տարրեր։ Դրանց արդյունքները հիմք կծառայեն ամբողջ ժողովրդական տնտեսության վերաբերյալ համապատասխան առաջարկություններ նախապատրաստելու համար։ Դրան պետք է վաղօրոք նախապատրաստվեն նաև մյուս ճյուղերում։ Մենք պետք է տասներկուերորդ հնգամյակ թևակոխենք լավ կարգավորված տնտեսական մեխանիզմով, որը թույլ տա լիովին օգտագործել մեր էկոնոմիկայի բոլոր հնարավորությունները։

Պետք է ասեմ, որ վերջին ժամանակներս քիչ բան չի արված պետական պլանների որակի բարելավման համար։

Բայց և այնպես, մեր պլանային մեխանիզմում թույլ տեղեր շատ են մնում։ Էկոնոմիկայի զարգացման որոշ հանգուցային խնդիրներ հաճախ հարմարեցվում են այս կամ այն ռեգիոնում ու ճյուղում ստեղծվող պայմաններին։ Պլանավորման մեջ նման, կարելի է ասել, պասիվ մոտեցումից մենք պետք է հետևողականորեն հրաժարվենք։

Ժողովրդական տնտեսության զարգացման առավել արդյունավետ ուղղությունների, այն գլխավոր օղակների ընտրությունը, որոնք թույլ են տալիս երկրի էկոնոմիկան արագորեն առաջ մղել ինտենսիվ ուղիով, պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու հասունացած խնդիրներից մեկն է։

Այդ առթիվ կկամենայի հայտնել որոշ նկատառումներ։

Կառավարման ու պլանավորման կոնկրետ ձևերը պետք է համընկնեն երկրի հասարակական զարգացման յուրաքանչյուր փուլի իրական պայմաններին։ Սա օբյեկտիվ օրինաչափություն է, որը, միանգամայն հասկանալի է, ոչ ոք չի կարող ոչ փոխել, ոչ էլ վերացնել։ Ուստի դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների վրա հիմնված կառավարման համակարգի բարելավումը մեր հասարակարգի կատարելագործման ընդհանուր պրոցեսի բաղկացուցիչ մասն է։

Ներկայումս հասունացել է կառավարման ամբողջ մեխանիզմի կոմպլեքսային կատարելագործման ծրագիր մշակելու հարցը, մեխանիզմ, որը պետք է լիովին համապատասխանի զարգացած սոցիալիզմի էկոնոմիկային և լուծվող խնդիրների բնույթին։

Կարծում եմ, որ այդպիսի ծրագիրը պետք է նախատեսի.

կառավարման կազմակերպման կառուցվածքի կատարելագործում բոլոր մակարդակներում և ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում, ներառյալ կառավարման մարմինների ու ձեռնարկությունների պարտականությունների, իրավունքների ու պատասխանատվության հստակ սահմանումը, պետության և աշխատավորական կոլեկտիվների շահերի օրգանական զուգորդումը.

ժողովրդական տնտեսության պլանավորման համակարգի բարելավում, ելնելով հանրային արտադրության սոցիալ-տնտեսական արդյունավետության բարձրացման պահանջներից.

տնտեսական լծակների և տնտեսական մեխանիզմի խթանների ամբողջության արդյունավետության բարձրացում, ներառյալ գնագոյացումը, վարկաֆինանսական համակարգը, տնտեսական գործունեության արդյունքների գնահատման մեթոդները և այլն։

Կառավարման համակարգի բարելավման հարցերի միայն կոմպլեքսային, փոխկապակցված քննարկումը կարող է լուծել այն առավելությունների ավելի լրիվ օգտագործման խնդիրը, որ առկա են արտադրության սոցիալիստական եղանակի մեջ։ Սա պետք է դառնա ՍՄԿԿ-ի ծրագրի նոր խմբագրության կարևոր բաղկացուցիչ մասը։



Այսպիսիք են այն մի քանի հարցերը, որոնց վրա ես անհրաժեշտ համարեցի կանգ առնել։ Դրանցով, իհարկե, չի սպառվում լուծման կարիք ունեցող տնտեսական պրոբլեմների շրջանակը, մանավանդ որ կյանքը շարունակ առաջադրում է նորերը։

Մեր հաջողությունները վճռական չափով պայմանավորված կլինեն մասսաների մոբիլիզացմամբ, հանձնարարված գործի նկատմամբ մարդկանց ստեղծագործական վերաբերմունքով, սոցիալիստական մրցության հետագա կարգացմամբ։

Շատ կարևոր նշանակություն ունեն կադրերի հանգամանալի ընտրությունը ըստ նրանց գործարար ու քաղաքական հատկանիշների, արտադրության խուկան կազմակերպիչների, ձեռներեց, ընդունակ աշխատողների դաստիարակումը։ Նրանց նկատմամբ հաստատված բարյացակամ վերաբերմունքը հարկավոր է է՛լ ավելի մեծ չափով զուգորդել բարձր խստապահանջության և սկզբունքայնության հետ։

Այս ամենը կուսակցական աշխատանքի անհետաձգելի խնդիրներն են։

Ներկայումս կուսակցության մեջ ավարտվում է հաշվետու-ընտրական կամպանիան։

Տեղի ունեցած ժողովներն ու կոնֆերանսները ցույց տվեցին, որ բոլոր կուսակցական կազմակերպությունները լիովին պաշտպանում են կուսակցության XXVI համագումարի, Կենտկոմի նոյեմբերյան և հունիսյան պլենումների որոշումները, որ նրանք բոլորն էլ ձգտում են վճռականորեն կատարելագործել կուսակցական ղեկավարման ոճն ու մեթոդները։ Սրանում մենք տեսնում ենք ժողովրդական տնտեսության հետագա վերելքի, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման նոր խնդիրների հաջող լուծման գրավականը։

Ընկերնե՛ր, վերջում կուզենայի իմ խոհերը հայտնել կուսակցության ու ժողովրդի հանդեպ այն մեծ դերի ու պատասխանատվության մասին, որ ունեն ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անդամները, Կենտկոմի պլենումի այս դահլիճում ներկա բոլոր մասնակիցները։

Նոյեմբերյան պլենումի՝ կոլեկտիվ կերպով մշակված որոշումներով մենք առաջ մղեցինք աշխատավորներին, նրանց նպատակաուղղեցինք աշխատելու ավելի լավ և սրա հետ մեկտեղ ծնունդ տվինք մեծ ակնկալիքների։ Քիչ բան չի արված, բայց շատ բան էլ դեռ առջևում է։

Միլիոնավոր կոմունիստներ և անկուսակցականներ անսահման հավատում են կուսակցությանը և պատրաստ են սատարելու էկոնոմիկայի ասպարեզում և հասարակական կյանքի մյուս ոլորտներում դրության հետագա բարելավման միջոցառումներին։ Սա բոլորիս վրա, յուրաքանչյուրի վրա անխտիր, հսկայական անձնական պատասխանատվություն է դնում, և մենք պարտավոր ենք արդարացնել ժողովրդի այդ բարձր վստահությունը։

Կենտկոմի անդամներն ու անդամության թեկնածուները, կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամները, ինչ տեղամասում էլ որ աշխատելիս լինեն՝ կառավարության կազմում թե ժողովրդական տնտեսության ճյուղերում, կուսակցական, սովետական մարմիններում թե գիտության մեջ, մշակույթի ոլորտում թե դիվանագիտության ասպարեզում, մենք բոլորս էլ միշտ պետք է հիշենք, որ քաղաքական ղեկավարներ ենք և պետք է ամեն ինչից վեր դասենք կուսակցության ու ժողովրդի շահերը։

Իր եռևից տանել մարդկանց և աշխատանքում ցույց տալ անձնական արժանավայել օրինակ, ամեն ինչ անել էկոնոմիկայի ու սոցիալական հարաբերությունների զարգացման, մարդկանց կյանքի բարելավման համար, ամեն ինչում անշեղորեն առաջնորդվել լենինյան վսեմ սկզբունքներով՝ ահա թե այսօր որն է գլխավորը։

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1984 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ ԵՎ ՍՍՀՄ 1984 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը նշում է, որ կուսակցության
XXVI համագումարի որոշումների կենսագործման ուղղությամբ սովետական
մարդկանց անձնվեր աշխատանքի շնորհիվ մեր երկիրը վստահորեն ընթա-
նում է տնտեսական ու սոցիալական առաջադիմության ուղիով: ՍՄԿԿ Կենտ-
կոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի հիմնադրույթներին համապա-
տասխան, սոցիալիստական տնտեսավարության կատարելագործման, կազ-
մակերպվածության ու կարգապահության, կադրերի գործարարության ու
պատասխանատվության բարձրացման հետևողականորեն վարվող գիծը դրա-
կան արդյունքներ է տալիս: Արագացել են տնտեսական զարգացման տեմ-
պերը, որոշ չափով բարելավվել են որակական ցուցանիշները, մեծացել է
արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը,
սկսել է ավելի կայուն աշխատել երկաթուղային տրանսպորտը: Բարձրացել
են բնակչության ռեալ եկամուտները:

Սրա հետ միասին, ժողովրդական տնտեսության շատ տեղամասերում
տակավին կան նեղ տեղեր, էական թերություններ, որոնց վերացման համար
պետք է մեծ աշխատանք կատարվի:

Կարևոր է, որ պահպանվեն ձեռք բերված տեմպերը, խնդիրների գործ-
նական լուծման ընդհանուր մթնոլորտը, անշեղորեն բարձրացվի էկոնոմիկայի
կուսակցական ու պետական ղեկավարման մակարդակը, ավելի ակտիվորեն
զարգացվեն արտադրության աճի դրական միտումները, կայուն բնույթ հա-
ղորդվի դրանց:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը որոշում է.

1. Ամբողջովին ու լիովին հավանություն տալ կուսակցության XXVI
համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվա-
կանի հունիսյան պլենումների մշակած ներքին ու արտաքին քաղաքակա-
նության իրագործման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի գործունեու-
թյանը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը միահամուռ հավանություն է
տալիս և պաշտպանում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ.
Անդրոպովի ելույթի բովանդակած խոր գնահատականները ու ժողովրդական
տնտեսության հետագա զարգացման հիմնական ուղղությունների վերաբերյալ
հետևությունները և այդ ելույթը դիտում է որպես մի կարևորագույն քաղա-
քական փաստաթուղթ, որը վառ կերպով արտահայտում է արդի փուլում կու-
սակցության ու սովետական պետության սոցիալ-տնտեսական քաղաքակա-
նությունը:



Պլենումը գտնում է, որ ընկեր Յու. Վ. Անդրոպովի առաջ քաշած ընթա-
ցիկ ու հեռանկարային տնտեսական անհետաձգելի խնդիրների լուծումը
պետք է դրվի ամբողջ կուսակցության, սովետական ու տնտեսական բոլոր
մարմինների, հասարակական կազմակերպությունների ու աշխատավորա-
կան կոլեկտիվների գործունեության հիմքում, պետք է դառնա յուրաքան-
չյուր կոմունիստի կարևորագույն պարտականությունը:

2. Հիմնականում հավանություն տալ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալա-
կան զարգացման 1984 թվականի պետական պլանի և ՍՍՀՄ 1984 թվա-
կանի պետական բյուջեի նախագծերին:

Պլանի ու բյուջեի նախագծերը համապատասխանում են կուսակցության
տնտեսական ստրատեգիային, նշում հանրային արտադրության հետագա
դինամիկ զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, ժողովրդի
բարեկեցության աճի ուղին, նախատեսում այն ամենը, ինչ անհրաժեշտ է
երկրի պաշտպանունակությունը հարկ եղած մակարդակում պահելու համար:

ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին՝ հիշյալ նախագծերը ներկայացնել ՍՍՀՄ
Գերագույն սովետի քննարկմանը:

3. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին,
կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմ-
ներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին,
մինիստրություններին ու գերատեսչություններին, սովետական, տնտեսական,
արհմիութենական ու կոմերիտական մարմիններին՝ լայնորեն ծավալել 1984
թվականի պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման հա-
մար աշխատավորական կոլեկտիվների, բոլոր աշխատավորների մոբիլիզաց-
ման կազմակերպչական և մասսայական-քաղաքական աշխատանքը:

Ապահովել էկոնոմիկայի արդյունավետության հետագա աճ, ուշադրու-
թյան կենտրոնում պահել տնտեսավարության մակարդակի բարձրացումը,
գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, արտադրական պոտեն-
ցիալի, նյութական, աշխատանքային ու ֆինանսական բոլոր ռեսուրսների
առավել լրիվ օգտագործումը: Հաստատակամորեն փնտրել լրացուցիչ ռե-
զերվներ, հասնել աշխատանքի արտադրողականության արտապլանային աճի
և արտադրանքի ինքնարժեքի իջեցման, շահույթի ավելացման, արտադրանք-
ների որակի բարելավման, անթերի կատարել պայմանագրային պարտավո-
րությունները:

Պետք է առաջնահերթ ուշադրություն նվիրվի խնայողության ռեժիմի
ուժեղացմանը: Մինիստրություններում ու գերատեսչություններում, յուրա-
քանչյուր տնտեսությունում պետք է կոնկրետ միջոցառումներ մշակել և իրա-
կանացնել աշխատանքի ծախսումները, հումքի, նյութերի, վառելիքաէներգե-
տիկ ռեսուրսների ծախսումն իջեցնելու համար:

Կարևոր խնդիր է ՍՍՀՄ էներգետիկ ծրագրի իրականացումը:

Հաշվի առնելով կապիտալ շինարարության հարաճուն ծավալները, հա-
տուկ ուշադրություն նվիրել շինարարական աշխատանքների կազմակերպ-
ման բարելավմանը, ուժերն ու միջոցները գործարկվող օբյեկտներում կենտ-
րոնացնելուն, արտադրական նոր կարողությունների շուտափույթ գործար-
կումն ու յուրացումը ապահովելուն:

Ծարունակ մեծացնել ագրոարդյունաբերական կոմպլեքսի աշխատողնե-
րի ջանքերը ՍՍՀՄ պարենային ծրագրի կատարման, դաշտերի բերքատվու-
թյան և անասունների մթերատվության բարձրացման նպատակով: Առավել
արդյունավետորեն օգտագործել գյուղատնտեսության զարգացմանը հատ-
կացվող միջոցները:

Էկոնոմիկան է՛լ ավելի զարգացնելու, տեխնիկատնտեսական բարձր ցու-
ցանիշների հասնելու հիման վրա հետևողականորեն շարունակել տասնմե-
կերորդ հնգամյակի սոցիալական ծրագրի իրացումը:

Հաստատակամորեն ձգտել ժողովրդական սպառման ապրանքների ար-
տադրության ավելացման, դրանց որակի բարձրացման և տեսականու ընդ-
լայնման, սպասարկումների ոլորտի ձեռնարկությունների ցանցի զարգացման

և դրանց աշխատանքի բարելավման: Ապահովել առողջապահության, լուսավորության, մշակույթի զարգացման, բնակելի տների, նախադպրոցական հիմնարկների, դպրոցների, հիվանդանոցների, պրոֆտեխուսումնարանների գործարկման՝ սահմանված առաջադրանքների կատարումը:

Անհրաժեշտ համարել, որ այս բոլոր հարցերը պատշաճ տեղ գրավեն երկրամասային ու մարզային հաշվետու-ընտրական առաջիկա կոնֆերանսներում, ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստման հետ կապված ամբողջ աշխատանքում:

4. ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը շեշտում է, որ, լուծելով ընթացիկ խնդիրները, չի կարելի թուլացնել ուշադրությունը ժողովրդական տնտեսության զարգացման ստրատեգիական պրոբլեմների նկատմամբ:

Պետք է ակտիվորեն կատարելագործել էկոնոմիկայի պլանավորման ու կառավարման համակարգը, սոցիալիստական տնտեսավարության ոճն ու մեթոդները: Կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինները պարտավոր են ամեն ինչ անել միավորումների ու ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման, նրանց ինքնուրույնության և աշխատանքի արդյունքների համար պատասխանատվության բարձրացման՝ մի շարք ճյուղերում անցկացվող տնտեսական գիտափորձի հաջող իրականացման համար:

Ստեղծված արտադրական կարողությունների առավել արդյունավետ օգտագործման համար նպատակահարմար համարել, որ ՍՍՀՄ պետպլանը, մինիստրություններն ու գերատեսչությունները, միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդները մշակեն միջճյուղային ու ներճյուղային անհամամասնությունների և նեղ տեղերի վերացման հատուկ միջոցառումներ, հստակորեն սահմանել դրանց իրականացման ուղիներն ու միջոցները:

Հարկավոր է է՛լ ավելի լայնորեն ծավալել արտադրության մեջ, տնտեսական ու մշակութային շինարարության բոլոր տեղամասերում օրինակելի կարգուկանոնի և կազմակերպվածության հաստատման աշխատանքը, ակտիվորեն պայքարել պետական, պլանային ու աշխատանքային կարգապահության ամրապնդման համար:

5. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներատեխնիկական աշխատողներին, մտավորականությանը, մեր երկրի բոլոր աշխատավորներին կոչ է անում՝ լայնորեն սոցիալիստական մրցություն ծավալել 1984 թվականի պլանի և ամբողջությամբ վերցված հնգամյակի առաջադրանքների կատարման ու գերակատարման, արտադրական բարձր արդյունքների հասնելու համար: Իմպերիալիստական շրջանների մեղքով խիստ սրված միջազգային իրադրության պայմաններում պլանային առաջադրանքների անշեղ կատարումը, բարեխիղճ, բարձր արտադրողական աշխատանքը յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր սովետական մարդու ոչ միայն պարտականությունն է, այլև հայրենասիրական պարտքը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ սովետական մարդիկ, սերտորեն համախմբվելով լենինյան կուսակցության շուրջը, անդուլ կերպով կամրապնդեն մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորությունը, բոլոր ուժերը կգործադրեն կոմունիստական շինարարության ասպարեզում նոր հաջողությունների հասնելու համար:

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննության առավ կուսակցական կազմակերպությունների խնդիրները ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստման և անցկացման կապակցությամբ: Ընդունված որոշման մեջ նշված է, որ ՍՍՀ Միության պետական իշխանության բարձրագույն մարմնի հերթական ընտրությունները սովետական պետության հասարակական-քաղաքական կյանքում խոշոր իրադարձություն են, որը մեծ նշանակություն ունի սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման համար, ՍՍՀՄ Գերագույն սովետի, երկրի ժողովրդական դեպուտատների բոլոր սովետների հետագա գործունեության համար:

Այժմյան ընտրական կամպանիան ընթանալու է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների, հնգամյակի առաջադրանքների կենսագործման համար մղվող պայքարի պատասխանատու շրջանում: Կուսակցական կազմակերպությունները կոչված են նախընտրական ամբողջ աշխատանքը սերտորեն շաղկապել սովետական հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր զարգացման այն կոնկրետ խնդիրների հետ, որոնք բխում են կուսակցության համագումարի և ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի՝ դրան հաջորդած պլենումների որոշումներից:

Ընտրությունների նախապատրաստությունը ծավալվում է մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ ամերիկյան իմպերիալիզմի մեղքով լրջորեն սրվել է միջազգային իրադրությունը: Նման պայմաններում կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը սոցիալիզմի եղբայրական երկրների հետ համատեղ հաստատակամ պայքար են մղում խաղաղության պահպանման, միջուկային աղետի կանխման համար: Կարևոր է, որ ընտրական կամպանիայի ընթացքում և դրանից հետո էլ ապահովվի սովետական մարդկանց միաձույլ համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, աճի նրանց վճռականությունը՝ պաշտպանելու խաղաղությունը, իրենց բոլոր ուժերը նվիրաբերելու երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդմանը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին, ՍՍՀՄ զինված ուժերի քաղմարմիններին պարտավորեցրել է ապահովել ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստումն ու անցկացումը կազմակերպական ու գաղափարաքաղաքական բարձր մակարդակով, անշեղորեն հետևելով ՍՍՀՄ սահմանադրությանը և ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների մասին օրենքին:

Այդ կարևոր քաղաքական կամպանիան պետք է ընթանա սոցիալիստական ժողովրդապետության հետագա զարգացման, կոմունիստների և անկուսակցականների բլոկի ամրապնդման, պետության ու հասարակության գործերի կառավարմանը քաղաքացիների է՛լ ավելի լայն ներգրավման նշանաբանով, կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի դրան հաջորդած պլենումների որոշումների կատարման համար մղվող պայքարում սովետական մարդկանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացման նշանաբանով:



2. «Լենինյան ուղիով», № 1

Ընտրությունների նախապատրաստումը կոչված է առավելագույն չափով
ծառայելու տնտեսական ու սոցիալական զարգացման՝ կուսակցության առա-
ջադրած խնդիրների լուծմանը, սովետների և աշխատավորական կոլեկտիվ-
ների դերի ու հեղինակության բարձրացմանը, պետական ու տնտեսական
մարմինների աշխատանքի կատարելագործմանը, կարգապահության և կար-
գուկանոնի ամրապնդմանը, մասսաների ձեռներեցության բարձրացմանը:

ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստման ու անց-
կացման ժամանակաշրջանում կուսակցական, սովետական, արհմիութենա-
կան, կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական մարմինների, պրո-
պագանդայի և ագիտացիայի միջոցների կազմակերպչական և մասսայական-
քաղաքական աշխատանքի հիմնական բովանդակությունը պետք է կազմեն.

— աշխատավորների մոբիլիզացումը՝ հաջողությամբ ավարտելու ընթա-
ցիկ տարվա պլանային առաջադրանքները, ռիթմիկորեն աշխատելու հնգամ-
յակի չորրորդ տարվա առաջին իսկ օրերից, է՛լ ավելի ինտենսիվացնելու
արտադրությունը, լրացնելու այն պակասը, որ թույլ է տրվել հնգամյակի նա-
խորդ տարիների պլանային առաջադրանքները կատարելիս, հստակորեն կա-
տարելու պայմանագրերով ու պատվերներով նախատեսված մատակարա-
րումները, ժամանակին գործարկելու հիմնական ֆոնդերը, կազմակերպված
անցկացնելու անասունների ձմեռումը, գարնանացանի նախապատրաս-
տումը, ավելացնելու ժողովրդական սպառման ապրանքների արտադրությու-
նը, ըստ ամենայնի ամրապնդելու աշխատանքի սոցիալիստական կարգապա-
հությունը.

— երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ուժեղացման,
ժողովրդի բարեկեցության աճի ապահովման, զարգացած սոցիալիզմի պատ-
մական նվաճումների՝ ՍՍՀՄ սահմանադրության մեջ վավերագրված սոցիա-
լիստական դեմոկրատիայի սկզբունքների ապահովման ուղղությամբ
ՍՄԿԿ-ի բեղմնավոր գործունեության խոր պարզաբանումը, աշխատավորու-
թյան դաստիարակումը ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, սովետական
հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, սոցիա-
լիզմի նվաճումներին պաշտպան կանգնելու մշտական պատրաստակամու-
թյան ոգով.

— Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքակա-
նության պրոպագանդումը, համաշխարհային սոցիալիստական ընկերակցու-
թյան ամրապնդման, խաղաղության պահպանման ու կայունացման նրա գոր-
ծունեության պրոպագանդումը, իմպերիալիզմի հետադիմական, հակաժողո-
վըրդական էության, ԱՄՆ-ի ու ՆԱՏՕ-ի չարագուշակ ռազմատենչ պլանների
ակտիվ մերկացումը, միջազգային կյանքի իրադարձությունների նկատմամբ
դասակարգային մոտեցման բարձր զգոնության դաստիարակումը, վճռական
հակահարվածը իմպերիալիստական քայքայիչ պրոպագանդային, բուրժուա-
կան ստահոդ դեմոկրատիայի փաստարկված քննադատությունը:

Որոշման մեջ ընդգծված է, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրություն-
ները պետք է դառնան ժողովրդական դեպուտատների սովետների, պետա-
կան բոլոր մարմինների գործունեության ստուգատես: Այս բանը նկատի ունե-
նալով, անհրաժեշտ է ընտրությունների նախապատրաստումը է՛լ ավելի
սերտորեն շաղկապել այն ձեռնարկությունների, կազմակերպությունների և
հիմնարկների աշխատանքի բարելավման հետ, որոնք առնչություն ունեն
բնակչության սպասարկման, սովետական մարդկանց կուլտուրական ու սո-
ցիալ-կենցաղային պահանջմունքների բավարարման հետ: Կուսակցական, սո-
վետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին առա-
ջարկված է կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի բոլոր միջոցնե-
րով ապահովել աշխատավորների, բոլոր ընտրողների լայն, ակտիվ, շահա-
գրգիռ մասնակցությունը նախընտրական միջոցառումներին: Պետք է անհրա-
ժեշտ պայմաններ ստեղծել, որպեսզի նախընտրական ժողովները գործարար,



կոնստրուկտիվ բնույթ կրեն, որպեսզի այդ ժողովներում քննադատաբար գնահատվեն պետական մարմինների աշխատանքը, ընտրողների պատվիրանների կատարումը, ի հայտ բերվեն դժվարություններն ու թերությունները, նախատեսվեն դրանց վերացման միջոցառումներ:

Ըստ ամենայնի նպաստել այն բանին, որ ընտրությունների նախապատրաստման ընթացքում լիակատար չափով իրացվի ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների մասին օրենքով նախատեսված՝ կուսակցական, արհմիութենական, կոմերիտական, մյուս հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների, զինծառայողների ժողովների իրավունքը առաջադրելու և քննարկելու թեկնածությունները դեպուտատներ և ընտրական հանձնաժողովների կազմում ներկայացուցիչներ ընտրելու համար:

Կարևոր է մասսաների շրջանում գտնել և դեպուտատության թեկնածուներ առաջադրել իրոք հեղինակավոր մարդկանց, ժողովրդի իսկական ներկայացուցիչների, ովքեր ունենան քաղաքական ու գործարար անհրաժեշտ հատկանիշներ, վայելեն աշխատավորության հարգանքը, կարողանան աշխատել մարդկանց հետ: Ըստ ամենայնի կշռադատել դեպուտատական պարտականությունները արժանավայել կատարելու, ընտրողների շահերը ներկայացնելու թեկնածուների ընդունակությունները:

Որոշման մեջ ուշադրություն է հրավիրվում, ինչպես որ եղել է նախկինում, դեպուտատության թեկնածուների կազմում բանվորների ու կոլտնտեսականների առաջատար դիրքի պահպանման վրա, ինչպես նաև մյուս սոցիալական խմբերի ու զբաղմունքների աշխատավորների, կանանց, երիտասարդների, վետերանների, միջին օղակի տեխնիկական մտավորականության, սպասարկման ոլորտի աշխատողների անհրաժեշտ ներկայացուցչության վրա, միութենական, ինքնավար հանրապետությունների և ինքնավար մարզերի բնիկ ազգություններին պատկանողների հետ միասին, այնտեղ բնակվող մյուս ազգությունների ներկայացուցիչներին դեպուտատության թեկնածուներ առաջադրելու վրա:

Դեպուտատության թեկնածուների առաջադրման հետ կապված բոլոր հարցերը հասարակական կազմակերպությունների կողմից պետք է լուծվեն՝ հաշվի առնելով աշխատավորական կոլեկտիվների կարծիքը: Հարկավոր է պայմաններ ստեղծել դեպուտատության թեկնածությունների ազատ ու լայն քննարկման համար, ուշադրությամբ հաշվի առնել աշխատավորների բոլոր դիտողությունները:

Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին հանձնարարված է ընտրությունների նախապատրաստմանն ու անցկացմանը մասնակցելու համար երաշխավորել այնպիսի կոմունիստների և անկուսակցականների, արտադրության առաջավորների ու վետերանների, որոնք ընդունակ են ապահովելու ընտրական հանձնաժողովների և ագիտկոլեկտիվների ակտիվ գործունեությունը, հմտորեն լուսաբանելու կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերը, անհատական աշխատանք տանելու ընտրողների հետ, հատկապես նրանց բնակության վայրում: Պետք է ավելի լայնորեն օգտագործել ագիտացիոն-մասսայական աշխատանքի բազմազան ձևերն ու մեթոդները, հաղթահարել կազմակերպամոլության ու ձևամոլության տարրերը: Բնակչության շրջանում տարվող ագիտացիոն- պրոպագանդիստական, կուլտուր-մասսայական և դաստիարակչական աշխատանքում ավելի լայնորեն ներգրավել ղեկավար կադրերին, ստեղծագործական միությունները, կամավոր ընկերությունները, հասարակական կազմակերպությունները, այդ գործի մեջ ներգրավել մշակույթի բոլոր տները, ակումբները, կինոթատրոնները, գրադարանները և կուլտուր-լուսավորական ու մարզական մյուս հիմնարկները:

ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական, սովետական, տնտեսական մարմիններին պարտավորեցրել է ապահովել հոգատար, ուշադիր վերաբերմունքը

ընտրությունների կապակցությամբ քաղաքացիներից ստացվող առաջարկությունների, քննադատական դիտողությունների, գանգատների ու դիմումների նկատմամբ, ստեղծել դրանց հաշվառման ու քննարկման հստակ համակարգ, իրացնել մարդկանց կողմից առաջարկվող այն ամենը, ինչ խելացի է և կոնստրուկտիվ: Անհրաժեշտ է բարձրացնել պետական մարմինների և պաշտոնատար անձանց պատասխանատվությունը, աշխատավորների առաջարկությունները ժամանակին քննության առնելու և ձեռնարկված միջոցների մասին նրանց իրազեկ պահելու համար:

Թերթերի ու ամսագրերի, հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների խմբագրությունները, հրատարակչությունները պետք է սիստեմատիկաբար տպագրեն և հաղորդեն ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստմանն ու անցկացմանը վերաբերող նյութեր, գրականություն, պլակատներ, դիտողական ագիտացիայի միջոցներ: Հարկավոր է վառ կերպով ցույց տալ ընտրական կամպանիայի ընթացքը, աշխատավորների ակտիվ մասնակցությունը այդ կամպանիային, պատմել դեպուտատության թեկնածուների մասին, պրոպագանդել ընտրությունների նախապատրաստման՝ կուսակցական կազմակերպությունների կազմակերպական ու քաղաքական աշխատանքի լավագույն փորձը:

Լայնորեն լուսաբանել սովետների և նրանց մարմինների բազմակողմանի գործունեությունը տնտեսական ու քաղաքական կարևորագույն խնդիրների լուծման, բնակչության պահանջմունքների բավարարման ասպարեզում, ՍՄԿԿ-ի քաղաքականությունը սովետական պետականության հետագա կատարելագործման, սոցիալիստական դեմոկրատիայի խորացման, պետական ու հասարակական գործերի կառավարմանը աշխատավորության մասնակցության ընդլայնման, քաղաքացիների իրավունքներն ու շահերը ապահովող սովետական օրենքների անշեղ կիրառման ուղղությամբ: Կոնկրետ օրինակներով բացահայտել սովետների համաժողովրդական, դեմոկրատական բնույթը, բնակչության հետ նրանց կապերի հետագա ամրապնդումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշման մեջ հաստատ վստահություն է հայտնված, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները կդառնան մեր երկրում իսկական ժողովրդապետության նոր համոզիչ վկայությունը, մեծ Լենինի կուսակցության շուրջը ամբողջ սովետական ժողովրդի միաձույլ համախմբվածության, կոմունիստական իդեալներին սովետական մարդկանց հավատարմության մի վառ դրսևորում:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1983 թվականի դեկտեմբերի 20-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:**

**Պլենումը լսեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահ ընկ. Հ. Ս. Սաղոյանի զեկուցումը «Հայկակաան ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման 1984 թվականի պետական պլանի մասին և Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման 1983 թվականի պետական պլանի կատարման ընթացքի մասին» և Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստր ընկ. Ջ. Ա. Ջանոյանի զեկուցումը «Հայկական ՍՍՀ 1984 թվականի պետական բյուջեի մասին և Հայկական ՍՍՀ՝ 1982 թվականի պետական բյուջեի կատարման մասին»:**

**Զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ժողովրդական դեպուտատների Երևանի քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Մ. Հ. Մուրադյանը, «Գառնի» կարի արտադրական միավորման բրիգադավար ընկ. Է. Չ. Թությանը, Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ռ. Մ. Գալստյանը, Դիլիջանի «Իմպուլս» գործարանի բանվորուհի ընկ. Տ. Վ. Համբարձումյանը, Հայաստանի կոմկուսի Եղեգնաձորի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Պ. Թարվերդյանը, Հայկական ՍՍՀ առևտրի մինիստր ընկ. Ս. Ռ. Սաֆարյանը, Քանաքեռի ալյումինի գործարանի դիրեկտոր ընկ. Ռ. Ն. Ենգոյանը, Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն» սովխոզի դիրեկտոր ընկ. Ս. Ս. Հարությունյանը:**

**Պլենումը նաև լսեց «Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովների, շրջանային ու քաղաքային կուսակցական կոնֆերանսների արդյունքների մասին և կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կատարման միջոցառումների մասին» հարցը:**

**Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի քարտուղար ընկ. Հ. Մ. Ոսկանյանը:**

**Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ն. Պ. Ստեփանյանը, Հայաստանի կոմկուսի Ղափանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ռ. Ս. Ղոնյանը, «Էլեկտրասարք» արտադրական միավորման փականագործ ընկ. Է. Թ. Հարությունյանը, Հայկական ՍՍՀ ավտոմոբիլային**

տրանսպորտի մինիստր ընկ. Խ. Ա. Դրամփյանը, «Կոմունիստ» թերթի խմբագիր ընկ. Բ. Մ. Մկրտչյանը:

Քննարկված հարցերի առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ընդունեց համապատասխան որոշումներ:

Պլենումում ընդարձակ ճառով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը ընկ. Յու. Վ. Շատալինին ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ: Պլենումը ընկ. Լ. Ս. Շուստկոյին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից:

Պլենումը ընկ. Մ. Կ. Հարությունյանին և ընկ. Ս. Օ. Թոփուզյանին ընտրեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուներ: Պլենումը ընկ. Մ. Բ. Արզումանյանին և ընկ. Վ. Ա. Տուրյանին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամության թեկնածուների պարտականություններից:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ հաստատեց ընկ. Լ. Գ. Սահակյանին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առևտրի ու կենցաղային սպասարկման բաժնի վարիչ՝ ընկ. Լ. Ս. Հակոբյանին:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎՆԵՐԻ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, ՆՐԱ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ մեծ կարևորություն են տալիս կուսկազմակերպություններում հաշվետու-ընտրական կամպանիաների անցկացմանը: Եվ դա հասկանալի է. հաշվետվություններն ու ընտրությունները ընդգրկում են կուսակցական աշխատանքի ողջ համակարգը, մեր կենսագործունեության բոլոր ոլորտները: Համակուսակցական այդ ստուգատեսների ընթացքում կոմունիստները հանրագումարի են բերում իրենց կոլեկտիվների, տվյալ շրջանի կամ քաղաքի, մարզի, երկրամասի, հանրապետության, իսկ ավելի լայն առումով՝ երկրի տնտեսական, հասարակական, քաղաքական ու մշակութային կյանքում ձեռք բերված հաջողությունները, գործարար մթնոլորտում բացահայտում թերությունները, մատնանշում այն խնդիրներն ու դրանց լուծման եղանակները, որոնք տվյալ փուլում ծառանում են աշխատավորական կոլեկտիվների առջև:

Շուրջ մեկ ամիս առաջ հանրապետության կուսակցական կազմակերպություններում ավարտվեցին հաշվետվություններն ու ընտրությունները: Հայաստանի կոմկուսի գրեթե բոլոր օղակներում՝ սկսած կուսխմբերից մինչև շրջանային ու քաղաքային կազմակերպություններ, սկզբունքային, գործարար մթնոլորտում կոմունիստները հաշիվ տվեցին այն մասին, թե կուսկազմակերպությունները մեր կյանքի բոլոր բնագավառներում ինչպես են իրականացնում հասարակության ղեկավար ուժի, նրա քաղաքական սիստեմի, պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկի իրենց դերը:

Հաշվետու-ընտրական կամպանիայի որոշիչ առանձնահատկությունն այն էր, որ դա տեղի ունեցավ այնպիսի մի ժամանակաշրջանում, երբ **ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII** համագումարների որոշումների, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների իրականացման համար մղվող համաժողովրդական պայքարը թևակոխում է իր վճռական փուլը: Կուսակցության ու ժողովրդի կյանքում վիթխարի կարևորությամբ նշանավորվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան և 1983 թվականի հունիսյան պլենումները, որոնք առաջադրեցին երկրի արտադրաուժերի զարգացման, արտադրահարաբերությունների կատարելագործման, գաղափարախոսական աշխատանքի արմատական բարելավման մի շարք նոր խնդիրներ, մշակեցին կենսական պրոբլեմների լուծման արդյունավետ եղանակներ:

1982 թվականի նոյեմբերյան պլենումից հետո ՍՄԿԿ Կենտկոմը մեծ ջանքեր է գործադրում կուսակցական աշխատանքի ոճը կատարելագործելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու, ձևամոլության, բյուրոկրատիզմի, պարադայնության դրսևորումները իսպառ վերացնելու նպատակով: Կուսակցության կյանքում տեղի ունեցող գործարար պրոցեսներն առանձնահատուկ ուժով դրսևորվեցին հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստման ու անցկացման ընթացքում: Դրանք ցույց տվեցին, որ կոմունիստների ընդհանուր տրամադրությունը, ժողովների ու կոնֆերանսների նախապատրաստմանն ու անցկացմանը նրանց անձնական մասնակցությունը նկատելիորեն տարբերվում են նախորդ համանման կամպանիաներից: Աճել է կուսակցության անդամների ակտիվությունը, նրանց դատողությունները դարձել են ավելի հասուն և ինքնուրույն, հետևությունները՝ ավելի հիմնավորված: Կոմունիստներն իրենց ավելի ու ավելի են պատասխանատու զգում ամբողջ կուսակցության համար, նրա առաջադրած բարդ խնդիրների լուծման հաջողության համար:

Հաշվետվություններն ու ընտրությունները ի մի են բերում կուսակցության կոլեկտիվ միտքն ու միասնական կամքը և դրանք ուղղում տնտեսական, կուլտուրա-

կան շինարարության և գաղափարախոսական աշխատանքի հանգուցային հարցերի լուծմանը: Ժողովների և կոնֆերանսների մասնակիցները գործիմացորեն, իրականության իրոք քաջատեղյակ քննարկում էին քաղաքական, տնտեսական, կազմակերպչական, գաղափարադաստիարակչական աշխատանքի բազմաբնույթ հարցերը, խստապահանջորեն գնահատում ձեռք բերվածը, ընտրովի ղեկավար մարմինների գործունեությունը, բացահայտում թերությունները ու վրիպումները, քննադատում դրանցում մեղավոր անձանց ու կազմակերպություններին:

Միանգամայն օրինաչափ է, որ կոմունիստների ուշադրության կենտրոնում ամենից առաջ կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման հարցերն էին: Նրանք առանձնահատուկ ուշադրություն էին նվիրում արտադրության ինտենսիվացման, աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման, որակական ցուցանիշների բարելավման, խնայողության ռեժիմի ուժեղացման խնդիրներին, մատակարարումների պայմանագրային պարտավորությունների կատարման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնման, արտադրական կարողությունների և սոցիալ-կենցաղային օբյեկտների գործարկման, տրանսպորտի միջոցների արդյունավետ օգտագործման հարցերին:

Կուսակցության մշակած երկարաժամկետ ծրագրերի և տնտեսական ստրատեգիայի կոնկրետ խնդիրների լուծման իմաստով կարևորագույն նշանակություն ունի ժողովրդական տնտեսության զարգացման տասնմեկերորդ հնգամյա պլանի կատարումը: Սովետական ողջ ժողովրդի հետ միասին, մեր հանրապետության աշխատավորները հաջողությամբ կյանքի են կոչում հարազատ կուսակցության կանխագծումները, արժանի ավանդ ներդնում մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործում:

Ակնհայտ են հատկապես հնգամյակի առանցքային տարում ձեռք բերված հաջողությունները, որոնք տնտեսավարումը կատարելագործելու, կազմակերպվածությունը բարձրացնելու, պետական, աշխատանքային ու պլանային կարգապահությունն ամրապնդելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի ընդունած որոշումների հետևողական կենսագործման արդյունք են: «Դա մեծապես նպաստեց այն բանին,— շեշտեց ընկեր Յու. Վ. Անդրոպովը ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումի իր ելույթում,— որ համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հաջողվեց մի շարք տեղամասերում շտկել գործերի վիճակը, բարձրացնել կադրերի ձեռներեցությունն ու պատասխանատվությունը, նրանց վստահությունն իրենց ուժերի նկատմամբ, աշխուժացնել մասսաների ստեղծագործական ակտիվությունը»:

Սպառման և կուտակման նպատակով օգտագործվող ազգային եկամուտը, 1982 թվականի համեմատ, անցյալ տարի երկրում ավելացավ 3,1 տոկոսով, իսկ արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը 1982 թվականի 2,9-ի դիմաց մեծացավ 4 տոկոսով: Աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 3,5 տոկոսով: Գյուղատնտեսության աշխատողները 1983 թ. 4,6 միլիարդ ռուբլով ավելի շատ մթերքներ տվեցին: Վերջին տարիների ընթացքում առաջին անգամ տեղաշարժեր են նկատվում անասնապահության բնագավառում. ավելացել են կաթի, մսի, ձվի գնումները:

Երկրի էկոնոմիկայի այս ընդհանուր տեղաշարժերին միանգամայն ներդաշնակ են այն հաջողությունները, որ ձեռք են բերել մեր հանրապետության աշխատավորական կոլեկտիվները: Նրանց անձնվեր ջանքերի, կուսակցական կազմակերպությունների ծավալած քաղաքական ու կազմակերպչական մեծ աշխատանքի շնորհիվ հանրապետությունը ժողովրդական տնտեսության զարգացման և բնակչության կենսամակարդակի բարձրացման բոլոր հիմնական ցուցանիշներով կատարեց հնգամյակի երրորդ տարվա առաջադրանքները: Ազգային եկամուտը 1982 թ. համեմատությամբ աճեց 4,5 տոկոսով, իսկ արդյունաբերական արտադրության ծավալն ու աշխատանքի արտադրողականությունը՝ համապատասխանաբար 5,2 և 2,7 տոկոսով: Ագրոարդյունաբերական կոմպլեքսի մեջ մտնող աշխատավորական կոլեկտիվները հաջողությամբ կենսագործում են հանրապետության պարենային ծրագիրը:

Չնայած խիստ աննպաստ բնակլիմայական պայմաններին, կատարվել են գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների (բացառությամբ խաղողի ու խորդենու)



և անասնապահական մթերքների արտադրության ու գնումների տարեկան պլանները: Հնգամյակի երրորդ տարին նշանավորվեց նաև մեծ ծավալի կապիտալ շինարարությամբ. պետական ներդրումների հաշվին գործարկվեցին շուրջ 1.200 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդեր կամ 25,8 տոկոսով ավելի, քան նախորդ տարում:

Հնգամյակի անցած երեք տարվա արդյունքները հիմք են տալիս ասելու, որ կայուն բազա է ստեղծվել ամբողջ հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու համար: Հանրապետության ազգային եկամուտը երեք տարում ավելացել է 17,6 տոկոսով՝ հնգամյա պլանով սահմանված 15,8-ի դիմաց, արդյունաբերական արտադրանքի աճը կազմել է 17,1 տոկոս՝ նախատեսված 15-ի փոխարեն: Երեք տարում պլանից ավելի արտադրվել է 88 միլիոն ռուբլու գյուղատնտեսական մթերք:

«ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ ՄԵՐ ԲՈԼՈՐ ՋԱՆՔԵՐԸ,— ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի իր ելույթում շեշտեց ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— ՎԵՐՋԻՆ ՀԱՇՎՈՎ ՆՊԱՏԱԿ ՈՒՆԵՆ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԺՈՂՈՎՐԴԻ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԸ: ՍԱ Է ՄԵՐ ՊԼԱՆՆԵՐԻ ՍՈՑԻԱԼ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՆՊԱՏԱԿԸ»:

Հիրավի, սոցիալիստական հասարակարգում արտադրության զարգացման հաջողություններն այն ժամանակ են միայն իմաստ ու բովանդակություն ձեռք բերում, երբ դրանք այս կամ այն չափով իրենց ազդեցությունն են թողնում մարդկանց բարեկեցության բարելավման վրա: Հետևողականորեն իրագործելով բնակչության կենսամակարդակի բարձրացման նպատակով ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խնդիրները, հանրապետության կուսակցական կազմակերպությունները սովետական և տնտեսական մարմինների ջանքերն ուղղում են ՍՄԿԿ սոցիալ-տնտեսական քաղաքականության այդ գլխավոր խնդրի լուծմանը: Վերջին երեք տարում հանրապետության բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն ավելացել են 4,5, իսկ բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձը՝ 5,6 տոկոսով: Սոցիալական կարևորագույն հարցերից մեկը, որը հետևողականորեն լուծվում է հանրապետությունում, աշխատավորների բնակարանային պայմանների բարելավումն է: 1983 թվականին ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին գործարկվեցին 1.173 հազար քառ. մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ՝ հնգամյա պլանով նախատեսված 1.055 հազարի փոխարեն: Գործարկվեցին կոմունալ-կենցաղային սպասարկման, լուսավորության, կուլտուրայի և առողջապահության բազմաթիվ նոր օբյեկտներ:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում և շրջանային ու քաղաքային կուսակցական կոնֆերանսներում, լիովին հավանություն տալով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կենսագործման նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի գործունեությանը, պատշաճը հատուցելով ձեռք բերվածին, կոմունիստները միաժամանակ հանդես եկան լուրջ դիտողություններով, որոնք վերաբերում են սկզբնական կուսկազմակերպությունների, ՀԿԿ շրջկոմների ու քաղկոմների գործունեության զանազան կողմերին՝ կազմակերպչական-կուսակցական, գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի, էկոնոմիկայի ղեկավարման հարցերին:

Կուսակցական այդ կարևոր կամպանիան մեկ անգամ ևս ցույց տվեց, որ հաշվետվությունների ու ընտրությունների ընթացքում առավել լիակատարությամբ է բացահայտվում ներկուսակցական դեմոկրատիայի ողջ էությունը, երբ «կուսակցության բոլոր գործերն անմիջականորեն կամ ներկայացուցիչների միջոցով վարում են կուսակցության բոլոր անդամները, հավասար իրավունքներով և առանց որևէ բացառության, ընդ որում կուսակցության բոլոր պաշտոնատար անձերը, բոլոր ղեկավար կոլեգիաները, բոլոր հիմնարկությունները ընտրովի են, հաշվետու, փոփոխելի» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 14, էջ 312):

Արժեքավոր շատ դիտողություններ եղան տնտեսական մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների աշխատանքի ոճի վերաբերյալ: Հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում կոմունիստների արած առաջարկությունները, նրանց հայտնած նկատառումները կուսակցությունը դիտում է իբրև հավաստի ինֆորմացիայի կարևոր աղբյուր՝ դրանց իրագործումը համարելով կուսակցական աշխատանքի արդյունավետության բարձրացման, կազմակերպությունների գործու-

նեության կոմունիստների լայն մասնակցության ապահովման, նրանց քաղաքական ակտիվության բարձրացման հուսալի միջոց:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում ընդհանուր առմամբ արվել են շուրջ 11 հազար դիտողություն և առաջարկություն: Դրանք ուշի-ուշով ուսումնասիրվել են: Մշակվել ու իրականացվում է միջոցառումների մի ամբողջ համակարգ՝ դիտողություններին ու առաջարկություններին ընթացք տալու, ամենօրյա աշխատանքում դրանք առավելագույնս հաշվի առնելու, տարբեր ոլորտներում մեր կենսագործունեության հետագա բարելավմանն ի սպաս դնելու նպատակով: Քննադատական դիտողությունների ու առաջարկությունների հետ տարվող աշխատանքը դիտելով իբրև կուսկազմակերպությունների կազմակերպչական, քաղաքական գործունեության անբաժանելի մասը և ելնելով հաշվետվությունների ու ընտրությունների արդյունքներից, ՀԿԿ Կենտկոմի բյուրոն ամեն տարի համապատասխան որոշումներ է ընդունում կոմունիստների արած քննադատական դիտողությունների և առաջարկությունների վերաբերյալ: Հաստատված կայուն պրակտիկայի համաձայն, կուսակցության քաղկոմ-շրջկոմները, մինիստրությունները, գերատեսչությունները, սովետական ու տնտեսական մարմինները, իրավասու մյուս կազմակերպությունները գործարար աշխատանք են ծավալում դիտողություններին ու առաջարկություններին ընթացք տալու, ձեռնարկված միջոցների մասին կոմունիստներին իրազեկ դարձնելու միտումով: Կենտկոմի բյուրոն և բաժինները հետևողականորեն հսկում են կոմունիստների դիտողությունների և առաջարկությունների կատարման ընթացքին: ՀԿԿ Կենտկոմի՝ 1983 թ. դեկտեմբերին տեղի ունեցած պլենումում այդ հարցի քննարկումը վկայում է այն կարևորության մասին, որ Կենտկոմը տալիս է կոմունիստների քննադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործմանը:

**ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՐԴԻ ՓՈՒԼԻ** խնդիրների լուծումը, մեր բոլոր պլանների կատարման հաջողությունը սերտորեն կապված են կուսկազմակերպությունների գործունեության կատարելագործման, նրանց մարտունակության հետագա բարձրացման, կոմունիստների ստեղծագործական նախաձեռնության զարգացման հետ: Ամենից առաջ դրան են նպատակամղված կուսակցական շինարարության վերաբերյալ ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտրոնական կոմիտեի՝ դրան հաջորդած պլենումների հիմնադրույթները, որոնց հետևողական կենսագործումը, ինչպես համոզիչ կերպով ցույց տվեց հաշվետու-ընտրական կամպանիան, բարերար ազդեցություն է ունենում ներկուսակցական կյանքի բոլոր կողմերի, կուսակցական աշխատանքի մակարդակի, կոմունիստների հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման վրա:

Հասարակության մեջ իր ղեկավար դերը ՍՄԿԿ-ն ամենից առաջ դիտում է այն բարձր պատասխանատվության տեսանկյունից, որ նա կրում է կոմունիստական շինարարության բարդ խնդիրների հաջող լուծման համար, մեր մեծ գործի բախտի համար: Մշակելով սոցիալ-տնտեսական զարգացման պլանները, սահմանելով կոնկրետ խնդիրները, ՍՄԿԿ-ն միշտ էլ շեշտը դնում է կուսակցական ղեկավարման մեթոդների կատարելագործման վրա՝ նշելով դրա կարևորությունը ոչ միայն կուսակցության, այլև ամբողջ ժողովրդի համար:

Կուսակցական ղեկավարման արդյունավետությունն ամենից առաջ չափվում է աշխատավորական կոլեկտիվների գործունեությամբ, որտեղ անմիջականորեն վճռվում է մեր պլանների ու կանխագծումների բախտը, շոշափելի իրողություն են դառնում սոցիալ-տնտեսական զարգացման ծրագրերը, առարկայորեն մարմնավորվում են քաղաքականությունն ու գաղափարախոսությունը: Այս իմաստով հատկապես կարևորվում է սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացումը: Կուսակցության այդ արմատային համակարգի կենսունակությամբ է մեծապես պայմանավորված նրա ամբողջ գործունեության հաջողությունը: Այժմ, երբ լրիվ ուժով գործում է աշխատավորական կոլեկտիվների մասին օրենքը, սկզբնական կուսկազմակերպությունները կոչված են օրենքի ընձեռած լայն հնարավորությունները ծառայեցնել կոլեկտիվների դերի իրական բարձրացմանը, դրանց հիրավի անսպառ պոտենցիալը հմտորեն ի սպաս դնել տնտեսական, քաղաքական, դաստիարակչական խնդիրների լուծմանը: Անցած տարին այդ առումով ուսանելի շատ բան տվեց:



Ինչպես և կուսակցության մյուս բոլոր օղակները, սկզբնական կուսկազմակերպություններն իրենց վրա զգացին ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումների մոբիլիզացնող վիթխարի ուժը և, ինչպես ցույց տվեց պրակտիկան, կազմակերպչական, մասսայական-քաղաքական աշխատանքի որակապես նոր տարրերով հարստացրին իրենց գործունեությունը:

Կոլեկտիվի վրա կուսակցական կազմակերպության ներգործության ուժը անմիջականորեն պայմանավորված է նրա շարքերի միասնությամբ, կոմունիստների ակտիվությամբ, ներկուսակցական աշխատանքի մակարդակով, կուսակցական կյանքի լենինյան նորմերի անշեղ պահպանմամբ: Հանրապետությունում նկատելիորեն ավելացել է այն կազմակերպությունների թիվը, որոնք այդ բոլոր գործոնների զուգորդման, կոլեկտիվների քաղաքական միջուկի իրենց դերի իրականացման լավ օրինակ են տալիս: Եվ միանգամայն օրինաչափ է, որ դրանք, իբրև կանոն, ներկայացնում են առաջավոր ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները, աշխատավորական այլ կոլեկտիվներ:

Կոլեկտիվների ուժերը մոբիլիզացնելու, արտադրական ու դաստիարակչական խնդիրները հաջողությամբ լուծելու ասպարեզում ուսանելի շատ բան կարելի է գտնել, օրինակ, Հայէլեկտրալույս, Հայէլեկտրաապարատ, Հայարդկապ (Երևան), բամբակագործվածքային (Լենինական) արտադրական միավորումների, «Ավտոմատիկա» գիտաարտադրական միավորման, «Ավտոգենմեքենա» գործարանի (Կիրովական) և մի շարք այլ ձեռնարկությունների կուսակցական կոմիտեների և բյուրոների ու արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների պրակտիկայում:

Կիրովականի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները, ինչպես այդ մասին նշվեց քաղաքային կոնֆերանսում, նկատելի աշխատանք են կատարում արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգի ներդրման և արդյունավետության բարձրացման նպատակով: Նրանց այդ համատեղ ջանքերի շնորհիվ քաղաքում հաջողությամբ իրականացվեց որակի կառավարման միասնական համակարգի արմատավորումը: Այստեղ պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը հասել է 45 տոկոսի: Դա ամենաբարձր ցուցանիշն է հանրապետությունում:

Սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման հարցը համակողմանիորեն արծարծվեց ինչպես այդ կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, այնպես էլ, մանավանդ, շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում: Հասարակական ու տնտեսական զարգացման խնդիրների մասշտաբայնությունը, դրանց լուծման գործում կուսկազմակերպությունների որոշիչ դերը քաղկոմ-շրջկոմներին պարտավորեցնում են մշտապես հոգ տանել սկզբնական կազմակերպությունների ղեկավարությունը ձեռնհաս, հեղինակություն վայելող, քաղաքականապես ու բարոյապես կայուն կոմունիստներով ամրապնդելու մասին, հանգամանորեն, գիտական ջանադրությամբ մշակել միջոցառումների հատկապես այն կոմպլեքսը, որի կիրառումը ամեն կոնկրետ դեպքում կարող է ավելի արդյունավետ լինել:

Մինչդեռ պրակտիկայում քիչ չեն դեպքերը, երբ մենք հաշտվում, հոգեբանորեն համակերպվում ենք այս կամ այն կուսկազմակերպության տևականորեն ետ մնալու փաստի հետ: Տարիներ շարունակ, ընդ որում ամենատարբեր մակարդակներում, Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատը քննադատվում է պետական առաջադրանքները ձախողելու համար: Հարցը սրությամբ դրվեց նաև ՀԿԿ XXVII համագումարում: Եվ ահա Երևանի քաղաքային կուսկազմակերպության վերջերս տեղի ունեցած XXXVIII կոնֆերանսը ամենայն լրջությամբ նորից անդրադարձավ կոմբինատի հարցին, արձանագրելով (արդեն որերորդ անգամ), որ այն ձախողում է պլանների կատարումը: Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրությունը, ՀԿԿ Լենինյան շրջկոմը լուծել ու լուծում են անհամեմատ ավելի բարդ հարցեր, և մի ձեռնարկությունը նեղ վիճակից հանելը, թվում է, ուժերից վեր խնդիր չէ:

Ակնհայտ է, սակայն, որ խոսքն այստեղ ոչ միայն տեխնիկատնտեսական ճիշտ քաղաքականության, այլև, ոչ պակաս չափով, կուսկազմակերպության գործունակության բարձրացման, ձեռնարկության բոլոր տեղամասերում կոմունիստների ավանգարդային դերի ապահովման մասին է: Ահա թե որտեղ հարկավոր էր իսկապես խորամուխ լինել գործի էության մեջ, բացահայտել ետ մնալու իրական պատճառ-

ները, կոնկրետ այս ձեռնարկության համար մշակել կոնկրետ միջոցառումներ և օգնել նրան դուրս գալու ստեղծված իրավիճակից:

Ժողովրդական տնտեսության ամեն մի ճյուղ ունի իր առաջատար արտադրական կոլեկտիվները, որոնց փորձի ներդրումը կարող էր մեծապես նպաստել ամբողջ ճյուղում գործերի վիճակի բարելավմանը: Հանրահայտ է այն մեծ դերը, որ արդյունաբերական արտադրության ընդլայնման, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման, աշխատավորների բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման գործում ունի կապիտալ շինարարությունը: Ճյուղում, անշուշտ, որոշ տեղաշարժեր կան, բայց ընդհանուր վիճակն առաջվա պես հեռու է բավարար լինելուց: Երևանի շինարարական կազմակերպությունները, օրինակ, հնգամյակի անցած երեք տարում գրեթե բոլոր հիմնական ցուցանիշներով թերակատարել են կապիտալ շինարարության պլանները: Առաջադրանքները պարբերաբար չեն կատարում այնպիսի խոշոր կազմակերպություններ, ինչպիսիք են Երևանշինը, Երքիմշինը, Գուգարքշինը և այլն: Շինարարական շատ կազմակերպություններում արմատացած թերություններից են թափթփվածությունը, անտնտեսվարությունը, անկարգապահությունը, անկազմակերպվածությունը: Մի շարք տեղերում բարձիթողի վիճակում է հաշվառման ու հաշվետվության դրվածքը, մեծ չափերի են հասնում հավելագրումները, տակավին չեն կանխվել գործալքումներն ու կադրերի հոսունությունը: Թվում էր, թե նման պայմաններում հանրապետության շինարարական գերատեսչությունների, տրեստների ու վարչությունների ղեկավարները պետք է իրենց կարևորագույն խնդիրը համարեին աշխատանքի կազմակերպման առաջադիմական եղանակների արմատավորումը: Ցավոք, մեզ մոտ դժվար է ճանապարհ հարթում նույնիսկ այնպիսի մի փորձված, պրակտիկայում իր մեծ առավելությունները լիովին հաստատած և համընդհանուր ճանաչման արժանացած առաջադիմական եղանակ, ինչպիսին բրիգադային կապալն է:

Ինչպես տեսնում ենք, կուսակցական կազմակերպությունների համար գործելու ավելի քան լայն ասպարեզ կա: Եվ Երաբդշին տրեստի ղեկավարության, նրա կուսկազմակերպության աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ այնպիսի մի դժվարին տեղամասում, ինչպիսին շինարարությունն է, թերությունները կարելի է հաջողությամբ հաղթահարել, եթե ադմինիստրացիան, կուսակցական ու հասարակական կազմակերպությունները միասնաբար կոլեկտիվի ջանքերը նպատակամղեն պետական առաջադրանքների կատարմանը: Հնգամյակի անցած տարիների պլանները տրեստը կատարել է 101,2 տոկոսով, գործարկել է արդյունաբերական բազմաթիվ օբյեկտներ: Իր հիմնական պարտականություններին զուգընթաց նրա կոլեկտիվը ակտիվորեն մասնակցում է քաղաքի սոցիալական նշանակության օբյեկտների կառուցմանը: Տրեստում ստեղծված է օրինակելի կարգապահության և բարձր պատասխանատվության մթնոլորտ, այստեղ լայնորեն կիրառվում են բրիգադային կապալն ու աշխատանքի կազմակերպման այլ առաջադիմական եղանակներ: Մնում է միայն ափսոսալ, որ առաջավոր կոլեկտիվի փորձը չի դարձել նաև մյուսների սեփականությունը, իսկ կուսկազմակերպությունները այդ կարևոր գործում ձեռներեցություն ու հետևողականություն չեն դրսևորել:

ԴՐԱԿԱՆ ՏԵՂԱՇԱՐԺԵՐԸ, ՈՐ ԱՆՑՅԱԼ ՏԱՐԻ ձեռք բերվեցին երկրի ժողովրդական տնտեսության մեջ, վկայում են կուսակցության մշակած կուրսի ճշտությունը, էկոնոմիկայի զարգացման, եղած դժվարությունների հաղթահարման նպատակով նրա առաջադրած խնդիրների ռեալությունն ու հիմնավորվածությունը: Կուսակցությունը միաժամանակ զգուշացնում է, որ չպետք է գերագնահատել կատարվածը, որ ձեռք բերվածը սոսկ առաջին դրական քայլերն են, իսկ եղած թերությունները վերացնելու համար առաջիկայում դեռ հարկ կլինի մեծ ու բարդ աշխատանք կատարել:

Այս ոգով էր տոգորված ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումի ողջ աշխատանքը: Պլենումի մասնակիցները մեծ ուշադրությամբ ծանոթացան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթին և միահամուռ հավանություն տվեցին ու պաշտպանեցին ժողովրդական տնտեսության հետագա զարգացման հիմնական ուղղությունների վերաբերյալ նրանում պարունակվող գնա-



հատականներին ու եզրակացություններին: Պլենումի ընդունած որոշման մեջ նշված է, որ Յու. Վ. Անդրոպովի առաջ քաշած ընթացիկ և հեռանկարային անհետաձգելի տնտեսական խնդիրների լուծումը պետք է դրվի ամբողջ կուսակցության, բոլոր սովետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների գործունեության հիմքում, պետք է դառնա յուրաքանչյուր կոմունիստի կարևորագույն պարտականությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հիմնականում հավանություն տվեց ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1984 թվականի պետական պլանի և պետական բյուջեի նախագծերին, որոնք այնուհետև հաստատվեցին և օրենքի ուժ ստացան ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման պլանի հիմնադրույթներին լիովին համապատասխան՝ մշակվել և ընդունվել է նաև մեր հանրապետության էկոնոմիկայի զարգացման ընթացիկ տարվա պլանը: Հնգամյակի չորրորդ տարում Հայկական ՍՍՀ-ն կհասնի տնտեսական և սոցիալական զարգացման նոր, ավելի բարձր բնագծերի: 1983 թ. համեմատությամբ հանրապետությունում ազգային եկամուտը կավելանա 5,1 տոկոսով, իսկ հնգամյակի չորս տարվա արդյունքով դրա աճը կկազմի 23,6 տոկոս՝ պլանով սահմանված 22,9 տոկոսի փոխարեն: Աշխատանքի արտադրողականությունը տարվա ընթացքում կաճի 3,8, իսկ արդյունաբերական արտադրության ծավալը՝ 4,1 տոկոսով: Պլանում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում հանրապետության պարենային ծրագրի իրականացմանը, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի, հատկապես նրա գլխավոր օղակի՝ գյուղատնտեսության արագ ու հաշվեկշռված զարգացմանը: Ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերում կապիտալ ներդրումները կկազմեն 330 միլիոն ռուբլի, 6 հազար հեկտարով կընդարձակվեն ոռոգելի հողատարածությունները, հատուկ ուշադրություն կհատկացվի անասնապահության զարգացմանը: Մեծ չափերի են հասնում կապիտալ ներդրումները. ֆինանսավորման բոլոր աղբյուրներով 1984 թ. դրանք կկազմեն 1.228 միլիոն ռուբլի՝ 3,7 տոկոսով ավելի, քան նախորդ տարում:

Լարված պլանները, իհարկե, լարված ջանքեր են պահանջում, և հանրապետության արտադրական կոլեկտիվները հնգամյակի չորրորդ տարվա առաջին իսկ օրերից աշխատանքի բարձր տեմպ են վերցրել: Նրանք լավ են հասկանում, որ այժմ, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում իր ելույթում նշում է Յու. Վ. Անդրոպովը՝ «ԱՄԵՆԱԿԱՐԵՎՈՐՆ ԱՅՆ Է, ՈՐ ՉԿՈՐՑՆԵՆՔ ՁԵՌՔ ԲԵՐՎԱԾ ՏԵՄՊԸ, ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴՐԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՐ ՄԹՆՈԼՈՐՏԸ, ԱՎԵԼԻ ԱԿՏԻՎՈՐԵՆ ԶԱՐԳԱՑՆԵՆՔ ԴՐԱԿԱՆ ՊՐՈՑԵՍՆԵՐԸ»:

Կարևորելով հնգամյակի առաջադրանքների կատարման գործում բարձր տեմպերի ապահովման անհրաժեշտությունը, դեկտեմբերյան պլենումը կուսակցական, արհմիութենական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների առջև խնդիր դրեց՝ հասնել աշխատանքի արտադրողականության արտապլանային բարձրացման մեկ տոկոսով և արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ իջեցման՝ 0,5 տոկոսով: Պլանի վերաբերյալ կուսակցության այս լրացուցիչ առաջադրանքը աշխատավորական կոլեկտիվներին, տնտեսական ղեկավարներին, կուսակցական ու հասարակական կազմակերպություններին պարտավորեցնում է հենց այդ հիմքի վրա վերանայել նախկինում նշված բնագծերը, փնտրել ու գտնել նյութական և արտադրական նոր ռեզերվներ, աշխատավորների նախաձեռնության ծավալման նոր ուղիներ՝ հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքները անպայմանորեն պլենումի սահմանած նշագծերով կատարելու համար:

Առաջադրված խնդիրների լուծումն ապահովելու կարևորագույն պայմաններից մեկը դեկտեմբերյան պլենումը համարեց կենտրոնում ու տեղերում աշխատանքի հստակ կազմակերպումը, կարգապահության ըստ ամենայնի ամրապնդումը: Կուսակցական կազմակերպությունների, նրանց ընտրովի մարմինների առաջնահերթ խնդիրն է՝ ապահովել հասարակական զարգացման այդ խիստ էական լծակների ազդեցության բարձր գործակիցը մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում:

Զարգացած սոցիալիստական հասարակարգը, հետևողականորեն կատարելագործելով իր դեմոկրատական ինստիտուտները, առավել լայն իրավունքներով օժտելով իր քաղաքացիներին, միաժամանակ ավելի մեծ պարտականություններ է

դնում վերջիններիս վրա: Կապն այստեղ ուղղակի է՝ որքան լայն են դեմոկրատական ազատությունները, այնքան մեծ է քաղաքացիական պատասխանատվությունը: Սովետական մարդիկ խոր ըմբռնումով են գնահատում սոցիալիստական դեմոկրատիան կատարելագործելու և զարգացնելու կուսակցության հետևողական քաղաքականությունը և դրան պատասխանում են ժողովրդական տնտեսության բարգավաճմանը, երկրի պաշտպանական հզորության ամրապնդմանն ուղղված անձնվեր աշխատանքով, հայրենիքի հանդեպ քաղաքացիական պարտքի օրինակելի կատարման այլ դրսևորումներով:

Ցավոք, մեզանում տակավին արմատախիլ չեն արվել աշխատանքային կարգապահության խախտման դեպքերը, իսկ մի շարք կարևոր ճյուղերում, ինչպես, ասենք, տրանսպորտում և շինարարությունում, դրանք ուղղակի անհանդուրժելի չափերի են հասնում: Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները կարգապահական տարբեր բնույթի խախտումների բազմաթիվ փաստեր էին վկայակոչում առևտրի ու կենցաղային ծառայությունների ոլորտից, արդարացիորեն դժգոհում հանցագործությունների, հակահասարակական այլ երևույթների դեմ իրավապահպան մարմինների կողմից մղվող պայքարի անբավարար վիճակից:

Կարգապահության ամրապնդումը ժամանակի հրամայական պահանջն է: Արտադրական ու հասարակական կյանքի բոլոր օղակներում կարգ ու կանոնի և սոցիալիստական օրինականության ըստ ամենայնի ամրապնդումը այն հրատապ խնդիրն է, որի լուծմանը պետք է ուղղվեն անխտիր բոլոր կոմունիստների, աշխատավորական բոլոր կոլեկտիվների ջանքերը: Հարկ է ուղղակի ասել, որ կուսկազմակերպությունները այստեղ տակավին անբավարար են օգտվում այնպիսի մի իրոք անսպառ ռեզերվից, ինչպիսին հասարակայնության ուժն է:

Ամեն մի կոլեկտիվում, փոքր թե մեծ, կան սոցիալապես հասուն, բարոյական բարձր արժանիքներով օժտված աշխատավոր մարդիկ, որոնցից էլ ստեղծվում է տվյալ կոլեկտիվի միջուկը: Կարգապահության ամրապնդման, կոլեկտիվներում բարոյահոգեբանական մթնոլորտի առողջացման իրենց պայքարում կուսկազմակերպությունները պետք է հենվեն այդ մարդկանց վրա, հասնեն այն բանին, որ օրինազանցների դեմ անհանդուրժողական վերաբերմունքը կոլեկտիվ բնավորության գիծ դառնա ամենուրեք:

Սոցիալիստական տնտեսավարման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, արտադրության կառավարմանը նրանց մասնակցության իսկական դպրոց է սոցիալիստական մրցությունը, որի կազմակերպմանը ներկայացվող պահանջները հետզհետե մեծանում են: Այսօր մրցության ծավալումը սերտորեն առնչվում է մեր էկոնոմիկայի հետագա ինտենսիվացման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման, աշխատանքի կոլեկտիվ եղանակների արմատավորման՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան ու դեկտեմբերյան պլենումների առաջադրած խնդիրների հետ: Այս ասպարեզում կուսակցական կազմակերպությունների անելիքները հստակորեն սահմանված են մրցության կազմակերպման, նրա արդյունքների ամփոփման և հաղթողների խրախուսման պրակտիկան կատարելագործելու մասին անցյալ տարի ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշմամբ:

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում աշխատավորների կոմունիստական դաստիարակության, կուսկազմակերպությունների գաղափարախոսական գործունեության հարցերի խոր քննարկումն ու համակողմանի վերլուծությունը վկայում են այն տեղաշարժի մասին, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումից հետո կատարվել է մեր աշխատանքի այս հույժ կարևոր ոլորտում: «Բոլոր աստիճանների կուսակցական կոմիտեները, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն,— պլենումում ասաց ընկեր Յու. Վ. Անդրոպովը,— պետք է հասկանան, որ բոլոր այլ հարցերի ողջ կարևորությամբ հանդերձ, որոնցով նրանց հարկ է լինում զբաղվել (տնտեսական, կազմակերպական և այլն), գաղափարախոսական աշխատանքը է՛լ ավելի է մղվում առաջին պլան»:

Գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի արդյունավետությունը մեծապես պայմանավորված է նրանով, թե այն որքանով է հաշվի առնում պատմական տվյալ ժամանակաշրջանի առանձնահատկությունները: Մեր ժամանակաշրջանը բնորոշվում է մոլորակի միլիարդավոր մարդկանց մտքերի ու սրտերի համար բնե-



ռայնորեն հակադիր երկու աշխարհայացքների, երկու սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի, աննախադեպ հակամարտությամբ: Այդ պայքարի ելքը վճռվում է ոչ միայն տեսության ու մեծ քաղաքականության ոլորտներում, այլև, ոչ պակաս չափով, յուրաքանչյուր կոլեկտիվում գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի վիճակով: Գաղափարախոսական արժույթների, իսկ ավելի լայն առումով՝ քաղաքականության մասին մարդիկ դատում են ոչ միայն ըստ տեսական դրույթների, այլև այն կոնկրետ իրավիճակների, որոնց հետ առնչվում են առօրյա կյանքում: Կուսակցության ծրագրային հիմնադրույթը, որ կարևոր է ոչ միայն տնտեսական խնդիրների լուծման գաղափարախոսական ապահովումը, այլև գաղափարախոսական աշխատանքի տնտեսական ու սոցիալական ապահովումը, կուսակցական կազմակերպություններից պահանջում է նորովի մոտենալ գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի ողջ կոմպլեքսի պլանավորմանն ու իրականացմանը:

Աշխատանքի լենինյան ոճի էական հատկանիշներից է գործարարությունը: Դեռևս ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ հոդվածում Վ. Ի. Լենինը գրում էր, թե առաջին պլան են մղվում կազմակերպական աշխատանքի գործնականությունն ու գործարարությունը: Հույժ արդիական են Լենինի ցուցումները կառավարման կուլտուրայի ստեղծման մասին, այն մասին, որ «Սովետական վարչական մեքենան պետք է աշխատի ճշտապահ, հստակ, արագ» (ԵԼԺ, հ. 54, էջ 120): Լենինյան ցուցումներն այսօր էլ հուսալի կողմնորոշիչներ են բոլոր մարմինների, հատկապես կառավարման հետ առնչվող հիմնարկությունների, կազմակերպությունների ու անձանց համար:

Կառավարման, պլանավորման, ամբողջ տնտեսական մեխանիզմի կատարելագործման հարցերը մեզ համար հրատապ են նաև այսօր: Այլ կերպ չի էլ կարող լինել. կառավարման կատարելագործումը անընդհատ պրոցես է, քանի որ անընդհատ է նաև արտադրության, գիտության ու տեխնիկայի առաջընթացը: Ծագող նոր խնդիրները, բնականաբար, նոր լուծումներ են պահանջում, և կուսակցությունը մշտապես հոգ է տանում, որպեսզի կառավարման ոճն ու մեթոդները համապատասխանեն տնտեսական ու սոցիալական զարգացման տվյալ փուլի պահանջներին: Կառավարման կատարելագործման ասպարեզում աշխատանքներն այժմ տարվում են այն հաշվով, որպեսզի մենք, ինչպես ասված է ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթում, «տասներկուերորդ հնգամյակ թևակոխենք լավ կարգավորված տնտեսական մեխանիզմով, որը թույլ տա լիովին օգտագործել մեր էկոնոմիկայի բոլոր հնարավորությունները»:

Լարված, լիարյուն կյանքով են այս օրերին ապրում կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունները: Երկիրը նախապատրաստվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրություններին: Իշխանության բարձրագույն մարմնի հերթական ընտրությունները խոշոր իրադարձություն են սովետական պետության հասարակական-քաղաքական կյանքում: Կուսակցական կազմակերպությունները նախընտրական ամբողջ աշխատանքը սերտորեն շաղկապում են սովետական հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր զարգացման այն կոնկրետ խնդիրների հետ, որոնք բխում են ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտրոնական կոմիտեի՝ դրան հաջորդած պլենումների որոշումներից:

Նախընտրական ժողովներում սրտաբաց, անկեղծ խոսակցություն է ծավալվում մեր կյանքի բոլոր կողմերի մասին, հանրամուգարի են բերվում հաջողությունները, նշվում առկա թերությունները, արվում արժեքավոր առաջարկություններ՝ ուղղված ժողովրդական դեպուտատների սովետների գործունեության բարելավմանը, պետական ու տնտեսական մարմինների աշխատանքի կատարելագործմանը: ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական, սովետական, տնտեսական մարմիններին պարտավորեցրել է ապահովել հոգատար, ուշադիր վերաբերմունքը ընտրությունների կապակցությամբ քաղաքացիներից ստացվող առաջարկությունների, քննադատական դիտողությունների, գանգատների ու դիմումների նկատմամբ, ստեղծել դրանց հաշվառման ու քննարկման հստակ համակարգ, իրականացնել այն ողջ խելացին ու կոնստրուկտիվը, որ առաջարկում են մարդիկ:

Ընտրական կամպանիան թևակոխում է իր վճռական փուլը: Կուսակցական կազմակերպությունները պետք է ակտիվորեն ծավալեն կոմունիստների և անկուսակ-

ցականների բլոկի թեկնածուների օգտին տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը, ընտրական կամպանիայից վճռականորեն արմատախիլ անել կազմակերպամոլության և ձևամոլության տարրերը, հասնել այն բանին, որ ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները դառնան ժողովրդական դեպուտատների սովետների, պետական բոլոր մարմինների գործունեության իսկական ստուգատես:

Համապետական մի այլ միջոցառում, ասես ցուցադրելով սովետական ժողովրդապետության խոր դեմոկրատիզմը, զուգադիպում է ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստմանն ու անցկացմանը: Այս օրերին ամենուրեք, աշխատավորների բարձր ակտիվության պայմաններում, քննարկվում է հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի՝ ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը: Երկրի տնտեսական, քաղաքական, հոգևոր կյանքի արմատական հարցերի շուրջ ժողովրդի հետ խորհրդակցելու՝ ՍՄԿԿ ավանդական կուրսը, նախագծի համաժողովրդական քննարկման բուն իրողությունը վկայում են սովետական դեմոկրատիայի խորապես ժողովրդական էության, պետական հարցերի լուծմանը աշխատավորական զանգվածների ամենալայն մասնակցության մասին:

Նախագիծը դնելով համաժողովրդական քննարկման, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն կուսակցական կոմիտեներին հանձնարարել է տեղերում գլխավորել այդ աշխատանքը և ապահովել ստացվող բոլոր առաջարկությունների ու դիտողությունների մանրազնին հաշվառումը: Ժողովրդի կոլեկտիվ միտքը առավելագույնս ի սպաս դնել մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության գործի հետագա բարելավմանը՝ ահա այս է կուսակցական կազմակերպությունների խնդիրը:

1984 թվականը սկսվեց միջազգային իրադրության բնավ ոչ այն պայմաններում, ինչպիսին կկամենային բարի կամքի մարդիկ: Իմպերիալիստական ուժերի, ամենից առաջ ԱՄՆ-ի միլիտարիզմի ու ագրեսիվության աճի հետևանքով աշխարհում շեշտակի սրվել է իրադրությունը: Խոր մտահոգություն արտահայտելով այդ առթիվ, ՍՍՀՄ Գերագույն սովետը «Միջազգային դրության և սովետական պետության արտաքին քաղաքականության մասին» վերջերս ընդունած իր որոշման մեջ հրապարակավ հայտարարեց, որ Սովետական Միությունը չի սպառնում ոչ մի երկրի անվտանգությանը, լինի Արևմուտքում, թե Արևելքում: Նա ուզում է հաշտ ու խաղաղ ապրել բոլոր երկրների հետ և կենսագործել սոցիալ-քաղաքական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքը: Սովետական պետության իշխանության բարձրագույն մարմինը վստահություն է հայտնում, որ բանականությունը կարող է և պետք է մարդկությանը փրկի միջուկային աղետից: Այսօրվա այս ամենահրատապ պրոբլեմի լուծման գործում կարող են և պետք է ծանրակշիռ ավանդ ներդնեն աշխարհի բոլոր պառլամենտներն ու ժողովուրդները, և հենց այդ կոչով էլ նրանց դիմում են ՍՍՀՄ Գերագույն սովետը և սովետական ժողովուրդը:

Մարդկային բանականության հաղթանակի նկատմամբ հավատով, ապագայի հանդեպ իրեն հատուկ պատմական լավատեսությամբ էլ սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել խաղաղ շինարարության 1984 թվականի պլանների իրականացմանը:

---



# ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍԱԿԱՆ ՄՏՔԻ ԱՆՍՊԱՌ ԳԱՆՁԱՐԱՆԸ

(Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐԻ ԼԻԱԿԱՏԱՐ ԺՈՂՈՎԱԾՈՒԻ ՀԱՅԵՐԵՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՎԱՐՏՄԱՆ ԱՌԹԻՎ)

**Հ. ՍԻՄՈՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի — ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի դիրեկտոր, պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*ԱՎԱՐՏՎԵՑ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԵՐԿԵՐԻ ԼԻԱԿԱՏԱՐ ԺՈՂՈՎԱԾՈՒԻ 55 հատորյակի հայերեն հրատարակությունը: Այն հաջողությամբ իրականացրել են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտը — ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղը և «Հայաստան» հրատարակչությունը:*

*Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի հայերեն հրատարակությունը, անտարակույս, խոշոր իրադարձություն է Հայաստանի կոմունիստական կուսակցության, հանրապետության աշխատավորների գաղափարաքաղաքական կյանքում:*

*Կոմունիստական կուսակցության գործունեության կարևորագույն բնագավառներից մեկը գաղափարախոսական աշխատանքն է: ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը նշեց. «Անհրաժեշտ է մեր գաղափարախոսական, դաստիարակչական, պրոպագանդիստական ամբողջ աշխատանքը վճռականորեն բարձրացնել այն մեծ ու բարդ խնդիրների մակարդակին, որ կուսակցությունը լուծում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում»:*

*Կուսակցության գաղափարախոսական աշխատանքում անփոխարինելի հզոր զենք է Վ. Ի. Լենինի թողած հսկայական գրական ժառանգությունը: Դժվար է անգամ պատկերացնել, որ կազմակերպչական անդադրում գործունեությամբ զբաղված մարդն ի վիճակի էր ստեղծել այդքան մեծաթիվ աշխատություններ, որոնցից շատերը նոր փուլ են նշանավորել մարդկության գիտական մտքի զարգացման համար:*

*Վ. Ի. Լենինը հանճարեղ տեսաբան էր, հեղափոխական գիտության մեծ ռահվիրա: Լինելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գործի հավատարիմ շարունակողը, Լենինն իր դարակազմիկ աշխատություններով ստեղծագործաբար և համակողմանիորեն զարգացրեց մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը՝ փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը, գիտական սոցիալիզմի տեսությունը: Հա-*

րազատ մնալով մարքսիզմի ոգուն, Լենինն այն բարձրացրեց նոր աստիճանի, պատասխան տվեց ժամանակի հասունացած բարդ ու հրատապ հարցերին։

Հիրավի, վիթխարի է Լենինի, որպես տեսաբանի, բազմակողմանի տաղանդը։ Հասարակական գիտությունների գրեթե բոլոր բնագավառներում նա ասել է նոր խոսք, դրանցից յուրաքանչյուրն արգասավորել նոր գաղափարներով։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, նրա Կենտրոնական կոմիտեն մեծագույն հոգատարություն են ցուցաբերում լենինյան տեսական ժառանգության նկատմամբ։ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կուսարխիվում պահվում են մեծ առաջնորդի ավելի քան երեսուն հազար փաստաթղթեր. Նրա նշանավոր աշխատությունների՝ գրքերի, բրոշյուրների, հոդվածների, զեկուցումների ձեռագրերը, դրանց նախապատրաստական նյութերը, ճառերի ու ելույթների պլաններն ու կոնսպեկտները, գրառումների տետրերը, ուրվագրերն ու նոթերը, զանազան աղբյուրներից կատարված քաղվածքները, ռուսերեն, գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն հարյուրավոր գրքերի լուսանցքներում կատարած նշումներն ու դիտողությունները և այլ նյութեր։ Կուսակցությունը ոչ միայն խանդաղատանքով պահում, պահպանում է դրանք, այլև հոգ է տանում դրանց հրատարակման մասին։ Լենինի աշխատությունները հրատարակվում են առանձին գրքերով, թեմատիկ և երկերի ժողովածուներով, մեծ տպաքանակով։ Դրանք հրատարակվում են միութենական բոլոր հանրապետությունների ազգային լեզուներով, ինչպես նաև արտասահմանյան տասնյակ լեզուներով։

Վ. Ի. Լենինի երկերը բազմահատոր ժողովածուներով մեր երկրում լույս են տեսել հինգ անգամ։ Դրանցից յուրաքանչյուրը նախորդի համեմատ եղել է ավելի լիակատար, քանի որ ժամանակի ընթացքում հայտնաբերվել են լենինյան նոր աշխատություններ, նոր փաստաթղթեր։ Միևնույն ժամանակ ամեն մի հրատարակության իրականացման ընթացքում մեծ աշխատանք է կատարվել տեքստերը հրատարակության նախապատրաստելու, հատորների պոլիգրաֆիական ձևավորումը բարելավելու նպատակով։

Վ. Ի. Լենինի 20 հատորից բաղկացած երկերի առաջին ժողովածուի հրատարակությունը սկսվել էր դեռևս նրա կենդանության օրոք։ Հետագայում, առաջնորդի մահից հետո, իրականացվեցին նրա երկերի երկրորդ և երրորդ հրատարակությունները՝ 30-ական հատորով։ Չորրորդ հրատարակությունն սկսվեց իրականացվել Հայրենական մեծ պատերազմի նախօրյակին։ 1941 թ. լույս տեսան այդ հրատարակության 1-ին, 2-րդ և 3-րդ հատորները, իսկ 4-րդ հատորը լույս տեսավ պատերազմից հետո՝ 1946 թ.։ Ապա հաջորդաբար լույս տեսան մյուս հատորները։ Չորրորդ հրատարակությունը զգալիորեն տարբերվում էր նախորդ հրատարակություններից։ Այն սկզբում լույս ընծայվեց 35 հատորով, որոնցում զետեղվեցին բազմաթիվ նոր փաստաթղթեր ու նյութեր։ Բայց այդ հատորներում տեղ չգտան ինչպես ժամանակին հրատարակված, այնպես էլ նոր հայտնաբերված մի շարք փաստաթղթեր, ինչպես նաև բազմաթիվ նախապատրաստական նյութեր։ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը, կատարելով բաժանորդների ցանկությունը, լույս ընծայեց չորրորդ հրատարակության ևս 10 լրացուցիչ հատոր։

Պետք է ասել սակայն, որ վերոհիշյալ հրատարակություններից ոչ մեկը լիակատար չէր։ ՍՄԿԿ Կենտկոմը 1957 թ. հունվարի 8-ին որոշում ընդունեց լույս ընծայել Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուն՝ 55 հատորով։ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը և քաղհրատը 1957—1968 թթ. հրատարակեցին ժողովածուի բոլոր հատորները։

Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուում, բնականաբար, զետեղվել են այն բոլոր աշխատությունները, որոնք տեղ են գտել Երկերի նախորդ՝ ոչ լիակատար ժողովածուների մեջ։ Նոր, լիակատար ժողովածուում ժամանակագրական հաջորդականությամբ լույս են տեսել Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ, Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, Ի՞նչ անել, Մի քայլ առաջ, երկու քայլ ետ, Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ, Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Պետություն և հեղափոխություն, Սովետական իշխանության հերթական խնդիրները, Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին, «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, Պարենային հարկի մասին, Կոոպերացիայի մասին և լենինյան մյուս հիմնարար աշխատությունները։

Սույն հրատարակության մեջ զետեղվել են «Իսկրա», «Վպերյոդ», «Պրոլետարի», «Սոցիալ-դեմոկրատ», «Պրավդա» թերթերում, բոլշևիկյան հանդեսներում և ժողովածուներում լույս տեսած առաջնորդի հոդվածները, ռուսական և արտասահմանյան մամուլի տարբեր օրգաններում տպագրված հարցազրույցները։ Նրանում ընդգրկվել են կուսակցական համագումարներում, կոնֆերանսներում, սովետների համագումարներում, Կոմինտերնի կոնգրեսներում Լենինի զեկուցումներն ու ճառերը, նրա ելույթները կուսակցության ղեկավար օրգանների նիստերում, բազմամարդ ժողովներում ու միտինգներում։ Հրատարակության մեջ տեղ են գտել այն թռուցիկները, հայտարարությունները, դիմումները, ծրագրային փաստաթղթերը, բանաձևերի նախագծերը, դեկրետները, ողջույնները, որոնց հեղինակը եղել է Լենինը։ Վերջապես, ժողովածուում ամփոփված են լենինյան նամակները, հեռագրերը, գրությունները, ուղիղ հեռախոսագծով խոսակցությունների գրառումները, հարցաթերթիկները և այլ նյութեր։

Երկերի լիակատար ժողովածուում զետեղվել են նաև լենինյան նոր աշխատություններ՝ կարևոր արժեք ներկայացնող 1.070 նոր փաստաթղթեր ու նյութեր, որոնք նախկինում տակավին անծանոթ էին ընթերցողին և հիմնականում հայտնաբերվել են Վ. Ի. Լենինի Երկերի չորրորդ հրատարակության ավարտին հաջորդած տարիներին։

Առաջնորդի երկերի ներկա հրատարակությունը նախորդներից զգալիորեն տարբերվում է ոչ միայն իր ծավալով, այլև ընդգրկված նյութի բազմազանությամբ։ Դա ամենից առաջ վերաբերում է տարբեր տեսակի նախապատրաստական նյութերին, որոնք այստեղ մեծ տեղ են զբաղեցնում։ Դրանք պարզ պատկերացում են տալիս, թե ինչպես է ստեղծվել լենինյան այս կամ այն երկը, թե նա ինչպիսի վիթխարի նախնական աշխատանք է կատարել իր աշխատությունները գրելիս։ Այդ նյութերը մեզ ծանոթացնում են նրա ստեղծագործական մտքի սլացքին, վկայում այն անխոնջ աշխատանքի, գիտական բարձր պահանջների ու չափանիշների մասին, որ Լենինը ներկայացրել է ինքն իրեն։ Նախապատրաստական նյութերը նաև ակնառու ցույց են տալիս, թե յուրաքանչյուր աշխատություն ստեղծելիս նա ինչպես է նախապես մանրազնին ուսումնասիրել տվյալ հարցին վերաբերող գրականությունը, ինչպիսի բարեխղճությամբ է հավաքել և մշակել փաստական տվյալները։

Աշխատությունները գրելիս Վ. Ի. Լենինը կատարել է վիճակագրական հսկայական աշխատանք, կազմել հարյուրավոր աղյուսակներ, որոնք նրան օգնել են համակողմանիորեն հիմնավորված եզրակացություններ անելու։ Նա խստորեն հետևում էր իր իսկ ձևակերպած այն դրույթին, որ անհնարին է գիտական ընդհանրացումներ ու ճշմարիտ հետևություններ անել՝ առանց փաստական նյութի խոր ուսումնասիրության ու համակողմանի վերլուծության։ Պատահական չէ, որ լենինյան յուրաքանչյուր աշխատություն հետազոտական տեսական, քրտնաջան աշխատանքի արգասիք է։

Առանձնահատուկ նշանակություն ունեն նախապատրաստական այն նյութերը, որոնք նախորդել են Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա գրքերին, ագրարային և ազգային հարցերին նվիրված աշխատություններին։

Հայտնի է, որ Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում ուսումնասիրությունը գրելիս Վ. Ի. Լենինն օգտագործել է շուրջ 500 գիրք, այդ թվում՝ բազմաթիվ վիճակագրական ժողովածուներ։ Հավաքած տվյալների մշակումն

ու վերլուծությունը, դրանցից արված ընդհանրացումներն ու եզրահանգումները նրան հնարավորություն ընձեռեցին վերարտադրելու Ռուսաստանում կապիտալիզմի զարգացման կոնկրետ ու իրական պատկերը։ Լենինը բազմաթիվ նշումներ է արել հատկապես նարոդնիկների հեղինակած գրքերի վրա, որոնցում փորձեր էին արվում ժխտելու կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում և առաջադրվում էին մանր արտադրության և համայնքային ձևերի մնացուկների պահպանման նախագծեր։ Այդ նշումները ցույց են տալիս, թե Լենինն ինչպես է քայլ առ քայլ, հետևողականորեն բացահայտել նարոդնիկների իդեալիստական հայացքների սնանկությունը, ցույց տվել ռեալ իրականության հետ դրանց անհարիր լինելը։

Ժողովածուում զետեղվել են Իմպերիալիզմի վերաբերյալ տետրերը, որոնք նախկինում տպագրվել են լենինյան ժողովածուներում, ապա լույս տեսել առանձին հրատարակությամբ։ Այս տետրերի նյութերը, ինչպես հայտնի է, հիմք են ծառայել Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա գրքի համար։ Դրանք ցույց են տալիս, թե Լենինն ինչպիսի քրտնաջան, նախապատրաստական աշխատանք է կատարել, տվել իմպերիալիզմի խոր և համակողմանի մարքսիստական վերլուծությունը, բացահայտել նրա անլուծելի հակասությունները։ Իր հանճարեղ երկը ստեղծելիս նա օգտագործել է տարբեր լեզուներով բազմաթիվ աղբյուրներ, քաղվածքներ արել հարյուրավոր հոդվածներից ու գրքերից, այդ թվում՝ 106 գերմաներեն, 23 ֆրանսերեն, 17 անգլերեն գրքերից։ Այս տվյալները վկայում են, թե Լենինն ինչպիսի մեծ ուշադրությամբ ու բարեխղճությամբ է ուսումնասիրել թեմայի հետ առնչվող գրականությունը այն ենթարկելով քննական խոր վերլուծության։

Առաջին անգամ սույն ժողովածուում զետեղվել է Մարքսիզմը պետության մասին աշխատությունը, որի նախապատրաստական նյութերը, ինչպես հայտնի է, դրվել են Պետություն և հեղափոխություն գրքի հիմքում։ Այդ աշխատությունը հրապարակվել է 1930 թ., XIV Լենինյան ժողովածուում, ապա առանձին գրքով առաջին անգամ լույս է տեսել 1932 և 1934 թթ.։

Լիակատար ժողովածուում ընդգրկված Փիլիսոփայական տետրերում նախկին հրատարակությունների համեմատությամբ զետեղվել են մի քանի լրացուցիչ նյութեր՝ Գ. Վ. Պլեխանովի Մարքսիզմի հիմնական հարցերը և Ն. Գ. Չերնիշևսկի, Վ. Շուլյատիկովի Կապիտալիզմի արդարացումը արևմտաեվրոպական փիլիսոփայության մեջ (Դեկարտից մինչև Է. Մախ), Ա. Դեբորինի Դիալեկտիկական մատերիալիզմ գրքերի լուսանցքներում Լենինի կատարած նշումները, ինչպես նաև փիլիսոփայության և բնագիտության վերաբերյալ մի շարք գրքերի, այդ թվում՝ Է. Հեկելի Կյանքի հրաշքները և Տիեզերական առեղծվածներ աշխատությունների մասին մամուլում լույս տեսած գրախոսությունների առթիվ արած դիտողությունը։

Վ. Ի. Լենինը վիթխարի աշխատանք է կատարել ագրարային հարցին նվիրված նյութերը հայթայթելիս և դրանք վերամշակելիս։ Նա ուսումնասիրել է հարյուրավոր գրքեր, արել բազմաթիվ քաղվածքներ ու նշումներ։

Անչափ մեծ նախապատրաստական աշխատանք է նախորդել ազգային հարցին նվիրված լենինյան աշխատությունների ստեղծմանը։ Ազգային հարցին առնչվող նախապատրաստական նյութերը, որ ժամանակին տպագրվել են լենինյան ժողովածուներում, այժմ զետեղված են Երկերի լիակատար ժողովածուում։ Դրանք վկայում են, թե ինչպիսի խորությամբ է Լենինն ուսումնասիրել փաստական տվյալները, մերկացրել ազգային ճնշման ամեն մի դրսևորում, անհաշտ եղել պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից ամենափոքր իսկ շեղումների նկատմամբ։ Քննադատելով Օ. Բաուերի քողարկված նացիոնալիստական հայացքները, Լենինը նրա «արմատական սխալը» որակում է որպես «նրբացված նացիոնալիզմ... զտված, նրբացված, բացարձակ նացիոնալիզմ... ինտերնացիոնալիզմի լրիվ մոռացում» (ԵԼԺ, հ. 24, էջ 171)։

Հսկայական հետաքրքրություն են ներկայացնում ժողովածուում առաջին անգամ զետեղված լենինյան այն փաստաթղթերը, որոնք վերաբերում են սովետական իշխանության առաջին տարիներին։ Դրանք արտացոլում են օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինի գործունեությունը ժողովրդական տնտեսության ղեկավարման, տնտեսական շինարարության, պետական կառավարչական սկզբունքների մշակման, հեղափոխական օրինականության պահպանման ասպարեզում նրա բազմաբեղուն աշխատանքը։ Այդ փաստաթղթերից են, օրինակ, Սովետական իշխանության դեմոկրատիզմի և սոցիալիստական բնույթի մասին անավարտ թեզիսները (1918 թ. առաջին կես), Ճառ Պրեսնյայի շրջանի միտինգում (1918 թ. հուլիսի 26), Ճառ նահանգական արտակարգ հանձնաժողովների չորրորդ կոնֆերանսում (1920 թ. փետրվար), Զրույց ամերիկյան «The World» թերթի թղթակից Լինկոլն Էյրի հետ (1920 թ. փետրվար), միջազգային կոմունիստական շարժման հարցերի վերաբերյալ ելույթները և այլն։

Կուլտուրական շինարարությանը նվիրված նոր նյութերից առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում առաջնորդի նոթերը պրոլետարական կուլտուրայի մասին։ Դրանք, մասնավորապես, արտացոլում են Լենինի մղած պայքարը պրոլետկուլտի, նրա առավել ականավոր ներկայացուցիչների նկրտումների դեմ։ Այսօր էլ հրատապ նշանակություն ունեն Վ. Ի. Լենինի ցուցումները պոլիտեխնիկական կրթության վերաբերյալ։ Ժողովածուում առաջին անգամ զետեղվել են Վլադիմիր Մայակովսկու ստեղծագործությունների մասին նրա նոթերը և այլն նյութեր։

Երկերի լիակատար ժողովածուում զետեղված մի շարք նյութեր արտացոլում են արհմիությունների մասին դիսկուսիան, կուսակցության X համագումարի ժամանակաշրջանում կուսակցության մղած պայքարը Տրոցկու, Բուխարինի և բանվորական օպոզիցիայի դեմ։ Այդ նյութերից հարկ է հիշատակել Արհեստակցական միությունների, ընթացիկ մոմենտի և Տրոցկու սխալների մասին ճառի կոնսպեկտը, Կուսակցության ճգնաժամը հոդվածի եզրափակիչ մասի ուրվագիծը, Դարձյալ արհմիությունների, ընթացիկ մոմենտի և Տրոցկու ու Բուխարինի սխալների մասին բրոշյուրի նյութերը, որոնցում Վ. Ի. Լենինը մերկացնում է նրանց հակակուսակցական վարքագիծը, պարզաբանում արհմիությունների անելիքները պրոլետարիատի դիկտատուրայի շրջանում, սոցիալիզմի կառուցման գործում նրանց դերը։

Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուում բոլոր աշխատություններն ու նյութերը զետեղված են ժամանակագրական կարգով։ Բացառություններ են արված լոկ այն դեպքերում, երբ անհրաժեշտ է եղել միևնույն թեմային նվիրված, բայց տարբեր ժամանակներում գրված երկերի միջև պահպանել օրգանական կապը։ Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում գրքի, իմպերիալիզմի, ազգային և ագրարային հարցերի վերաբերյալ տետրերի և Փիլիսոփայական տետրերի նախապատրաստական նյութերն առանձնացվել են առանձին հատորներում։ Ամբողջ նամակագրությունը նույնպես ի մի է հավաքվել և հրապարակվել ժողովածուի վերջին հատորներում։ Առանձին հատոր են կազմում իր հարազատներին Լենինի գրած նամակները։

Ի տարբերություն Վ. Ի. Լենինի Երկերի 4-րդ հրատարակության, Երկերի լիակատար ժողովածուի մի քանի հատորներ ունեն հավելվածներ, որոնցում զետեղված են դիմումներ, խնդրագրեր, կենսագրական բնույթի այլ նյութեր։

Երկերի սույն ժողովածուն ունի հանգամանալից գիտական-տեղեկատու ապարատ, որն ընթերցողներին օգնում է ավելի խոր ուսումնասիրել լենինյան աշխատությունները։ Դրանով իսկ վերացվել է Երկերի 4-րդ հրատարակության թերությունը՝ տեղեկատու ապարատի, մասնավորապես ծանոթագրությունների չափից ավելի սեղմ լինելը։ Տեղեկատու ապարատի մեջ մտնում են՝ ամբողջ հրատարակության ընդհանուր առաջաբանը, հատորների առաջաբանները, Լենինի կյանքի և գործունեության տարեթվերը, ծանոթագրությունները, կենսագրական համառոտ տվյալներ պարունակող անվանացանկերը, այն գրքերի ցանկերը, որոնցից մեջբերումներ է արված։

Վ. Ի. Լենինի երկերի նոր հրատարակության իրականացման ընթացքում մեծ աշխատանք է կատարվել տեքստերը սկզբնաղբյուրների, այսինքն՝ առաջնորդի ձեռագրերի, նրա կենդանության օրոք լույս տեսած հրատարակությունների

հայտությունների մեխանիկական պատճենումներ, բացթողումներ, իմաստային աղավաղումներ և այլն։ Ըստ ամենայնի պահպանելով ժամանակակից գրական հայերենի կանոններն ու պահանջները, հարկ էր հաղթահարել նաև լեզվական պուրիզմի դրսևորումները, ճշտել հասարակական-քաղաքական տերմինները, ըստ հնարավորին պահպանել լենինյան ստեղծագործությունների ոճական առանձնահատկությունները, առաջնորդի պատկերավոր խոսքի ուժն ու հմայքը։ Անհրաժեշտ էր նաև նկատի ունենալ, որ անցյալում լենինյան հիմնարար երկերի թարգմանությունն իրականացրել են մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների թարգմանության գործում մեծ վաստակ ունեցած մեր լավագույն մտավորականներից Պ. Մակինցյանը, Ց. Խանդադյանը, Թ. Ավդալբեկյանը, Ե. Տեր-Մինասյանը, Խ. Ավդալբեկյանը, որոնք առաջիններից էին, որ սովետական կարգերի հաղթանակից հետո Հայաստանում սկիզբ դրեցին լենինյան գաղափարական ժառանգության գիտական թարգմանությանը, մշակեցին այդ թարգմանության իրականացման հիմնական սկզբունքները, ապա՝ հմուտ թարգմանիչներ Պ. Աբելյանը, Վ. Փոթեյանը, Հ. Ասլանյանը, Հ. Թուրշյանը, Տ. Դադյանը, Հ. Հարությունյանը, Վ. Ավագյանը, Ա. Բղնունին, Ռ. Գուլքանյանը և ուրիշներ։ Լենինյան առանձին աշխատությունները և ժողովածուների հատորները տարբեր ժամանակներում խմբագրել են կուսակցական և պետական անվանի գործիչներ Ս. Կասյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Հ. Կոստանյանը, Ա. Հովհաննիսյանը, Ա. Խանջյանը, Ա. Մռավյանը, Հ. Ազատյանը, Հ. Գյուլիքեխյանը, Թ. Մանդալյանը, Ա. Ադոյանը և այլք։ Մեր անվանի թարգմանիչների ու խմբագիրների հարուստ գիտելիքներին, նրանց լեզվական բարձր կուլտուրային և արվեստին ենք պարտական, որ հիմնականում հաջողվել է ստույգ վերարտադրել լենինյան մտքի թռիչքներն ու ելևէջները, հարազատ մնալ նրա ոճին, պահպանել նրա հուզական կրքոտ շունչը։ Այս տեսակետից մեր նվիրյալների երախտիքն անգնահատելի է։

Այս հանգամանքը մեծապես պարտավորեցնող էր, ուստի սկզբից ևեթ վճռորոշ նշանակություն տրվեց Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի թարգմանիչների, համեմատողների, խմբագիրների ընտրությանը։ Պարզ էր, որ լենինյան տեքստերի թարգմանության, համեմատման և խմբագրման հիմնական աշխատանքները պետք է կատարվեին ինստիտուտի թարգմանության սեկտորում։ Այդ բանի խոր ըմբռնումով էլ գործի ձեռնարկեցին Վ. Ղազանչյանը, Խ. Աբեղյանը, Հ. Ամիրխանյանը, Ռ. Նիկողոսյանը, Ա. Հայրապետյանը, Բ. Դարբինյանը, Վ. Օհանյանը, Հ. Կարախանյանը, Վ. Պողոսյանը, կրտսեր գիտաշխատողները, սեկտորի մյուս աշխատողները։ Ժողովածուի հատորները հրատարակության նախապատրաստելու գործին, ինստիտուտի աշխատակիցներից բացի, ներգրավվեցին հանրապետության ճանաչված գիտնականներ, լեզվաբաններ, կուսակցական և սովետական աշխատողներ՝ Ռ. Խաչատրյանը, Հ. Գևորգյանը, Ս. Ջուրաբյանը, Մ. Արզումանյանը, Վ. Խոջաբեկյանը, Վ. Միքայելյանը, Վ. Բաղդասարյանը, Հ. Մարտիրոսյանը, Կ. Խուդավերդյանը, Հ. Հակոբյանը և ուրիշներ։ Նրանք ամենայն պատասխանատվությամբ ու բարեխղճորեն թարգմանում, համեմատում, խմբագրում էին լենինյան տեքստերը։

1972—1978 թթ. լույս տեսան Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի 1—19 հատորները։ Բայց եղած տեմպերը (տարեկան 2—3 հատոր) չէին կարող բավարարել գաղափարախոսական աշխատանքի մեծապես աճած պահանջները։ Ուստի առաջնորդի Երկերի լիակատար ժողովածուի հրատարակության արագացումը հրամայական անհրաժեշտություն էր դարձել։ 1979 թ. հունիսի 5-ին ՀԿԿ Կենտկոմի բյուրոն որոշում ընդունեց ժողովածուի հրատարակումն արագացնելու մասին։ ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտի և ՀՍՍՀ Հրատպետկոմի առջև, բնականաբար, ծառացան կազմակերպչական և այլ բնույթի բազմաթիվ դժվարություններ, լուծման կարոտ կարևոր խնդիրներ։ Մոբիլիզացվեցին ինստիտուտի և Հայհրատպետկոմի բոլոր հնարավորությունները։ Դիրեկցիայի որոշմամբ կուսակցության պատմության ինստիտուտում ստեղծվեց թարգմանչական խորհուրդ, որտեղ ընդգրկվեցին հանրապետության



լավագույն մասնագետները։ Խորհրդում պարբերաբար քննարկվում էին թարգմանության տեսության և պրակտիկայի հրատապ հարցեր, մասնավորապես հասարակական-քաղաքական տերմինների գործածության, հապավումների, դարձվածքների և այլաբանական արտահայտությունների թարգմանության, բաղադրյալ հատուկ անունների ուղղագրության, օտար բառերի հայերեն տառադարձության հարցեր և այլն։ Դրանից բացի ինստիտուտի թարգմանությունների սեկտորում ստեղծվեց գիտապրակտիկ սեմինար, որտեղ լեզվաբանության, մասնավորապես թարգմանական արվեստի բազմազան խնդիրների շուրջ զեկուցումներով հանդես էին գալիս սեկտորի առաջատար թարգմանիչները, հանրապետության ճանաչված մասնագետներ։ Լսվել են ակադեմիկոսներ Գ. Սևակի, Է. Աղայանի, գիտության դոկտորներ Հ. Գևորգյանի, Վ. Քոսյանի և ուրիշների բովանդակալից զեկուցումները։ Վերջապես, թարգմանությունների սեկտորում ստեղծվեց երիտասարդ թարգմանիչների որակավորման բարձրացման մշտական գործող սեմինար, որտեղ տեսական աշխատանքները զուգակցվում էին գործնական պարապմունքների հետ։

Լենինի Երկերի լիակատար ժողովածուի թարգմանությանը և հրատարակմանը զգալի օգնություն են ցույց տվել Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր տերմինաբանական կոմիտեն, ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստիտուտը։ Մեծ ծավալի և բարեխիղճ աշխատանք կատարեց «Հայաստան» հրատարակչության կոլեկտիվը։ Հրատարակչության բոլոր օղակներում ստեղծված էր իսկական մոբիլիզացիոն վիճակ, աշխատանքային բարձր կարգապահության մթնոլորտ։ Գովեստի է արժանի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատի և № 1 տպարանի կոլեկտիվների անբասիր աշխատանքը։ Այդ կոլեկտիվների անդամների ներդրած ջանքերի շնորհիվ հնարավոր եղավ ժամանակին ապահովել լենինյան հատորների տպագրությունը, դրանց պոլիգրաֆիական կատարման բարձր որակը։

Ծավալած մեծ աշխատանքը տվեց սպասած արդյունքը։ 1980 թ. լույս տեսան ժողովածուի 7 հատոր, 1981 թ.՝ 6, 1982 թ.՝ 7, իսկ 1983 թ.՝ 12 հատոր։ Մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների հրատարակման ծավալի իրականացման առումով դա Հայաստանի հրատարակչությունների պատմության մեջ աննախադեպ երևույթ էր։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 66-րդ տարեդարձի նախօրյակին՝ 1983 թ. հոկտեմբերին լույս տեսած 55-րդ հատորով ամբողջացվեց Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի հայերեն հրատարակությունը։ Հայ ընթերցողը Միությունում առաջիններից մեկը մայրենի լեզվով ունեցավ լենինյան տեսական մտքի անսպառ գանձարանը։

Եվ այսօր, երբ ավելի քան տասը տարիների համառ ու քրտնաջան ստեղծագործական աշխատանքը պսակված է հաջողությամբ, մենք հարգանքի ու հիացմունքի տուրք ենք մատուցում բոլոր նրանց, ովքեր դարամուտից սկսած տասնամյակներ շարունակ մայրենի լեզվի փոխադրեցին Լենինի անմահ երկերը, ստեղծեցին այն ամուր պատվանդանը, որի վրա հնարավոր եղավ իրականացնել մեծ առաջնորդի Երկերի լիակատար ժողովածուի հայերեն հրատարակությունը։

Սովետական իշխանության տարիներին Վ. Ի. Լենինի երկերը Հայաստանում հրատարակվել են 457 անգամ՝ ավելի քան 3 միլիոն ընդհանուր տպաքանակով։ Լենինյան շատ աշխատություններ վերահրատարակվել են բազմիցս։ ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. հուլիսյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը նշեց. «Մարքսիզմ-լենինիզմի... մեծահարուստ գանձարաններից են սովետական մարդիկ քաղում ոգու ուժ ու սոցիալական լավատեսություն, պատմական հեռանկարի ըմբռնում ու անխորտակելի հավատ կոմունիստական իդեալների հանդեպ»։

Մեծ առաջնորդի Երկերի լիակատար ժողովածուի հայերեն հրատարակությունը, անտարակույս, նոր թափ կհաղորդի հանրապետության կուսակցական կազմակերպությունների աշխատանքին, մեծապես կնպաստի աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործին։

---

Ռուսական երեք հեղափոխություններն էլ հեղափոխական իրադրության, հեղափոխական ճգնաժամի ծնունդ էին։ Շատ բանով դրանք ռուս-ճապոնական և առաջին համաշխարհային պատերազմների հետևանք էին։ Լենինը գրել է. «Պատերազմներն այժմ մղվում են ժողովուրդների միջոցով, ուստի և ներկայումս առանձնապես ցայտուն կերպով է դրսևորվում պատերազմի մեծ հատկությունը՝ իրապես տասնյակ միլիոնավոր մարդկանց աչքի առաջ մերկացնել այն անհամապատասխանությունը ժողովրդի ու կառավարության միջև, որը մինչև այժմ տեսանելի էր միայն փոքրաթիվ, գիտակից փոքրամասնության համար... Այս պատճառով ռազմական փլուզումը չէր կարող քաղաքական խոր ճգնաժամի սկիզբ չհանդիսանալ» (ԵԼԺ, հ. 9, էջ 184, 187)։

Լենինը նշում էր, որ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հեղափոխական իրադրության ու ճգնաժամի առաջացման պատճառներից մեկը պատերազմի ռեակցիոն, թալանչիական, անարդարացի բնույթն էր, ինչպես նաև այն, որ ժողովրդական լայն զանգվածներին խորթ էին կառավարող շրջանների վարած պատերազմի շահերը։ Պատերազմի ռեակցիոն բնույթը, բոլոր երկրների բուրժուազիայի կեղծիքը, երբ նա իր թալանչիական նպատակները քողարկում էր «ազգային» գաղափարախոսությամբ, և այս ամենն օբյեկտիվորեն հեղափոխական իրադրության հողի վրա մասսաների շրջանում անխուսափելիորեն ստեղծում էր հեղափոխական տրամադրություններ։

Հեղափոխական իրադրության, հեղափոխական ճգնաժամի և պատերազմի փոխկապակցվածության տեսակետից կարևոր է ևս մեկ լենինյան դրույթ, ըստ որի մարքսիստները պետք է ոչ միայն խանգարեն պատերազմ ծագելուն, այլև օգտագործեն «պատերազմի առաջացրած ճգնաժամը՝ բուրժուազիայի տապալումն արագացնելու համար» (ԵԼԺ, հ. 16, էջ 89)։ Լենինը և նրա զինակիցները Ռուսաստանի օրինակով, որտեղ տեղի ունեցավ Հոկտեմբերյան հեղափոխությունը, ոչ միայն տեսականորեն, այլև գործնականում ապացուցեցին տվյալ դրույթի հիմնավորվածությունը։

Լենինը ճգնաժամի խիստ կարևոր նշան էր համարում ժողովրդի աճած հետաքրքրությունը քաղաքականության նկատմամբ, նրա քաղաքական ակտիվությունը, որն «անխուսափելիորեն կարտահայտվեր մասսայական գործողությամբ» (ԵԼԺ, հ. 17, էջ 363)։

Իր աշխատություններում Վ. Ի. Լենինը մատնանշում էր սոցիալ-դեմոկրատիայի կոնկրետ խնդիրները՝ երկրում ստեղծված հեղափոխական իրադրության պայմաններում։ Նա կոչ էր անում սոցիալ-դեմոկրատներին՝ մանրակրկիտ և եռանդուն կերպով նախապատրաստվել հեղափոխությանը, ժողովրդական զանգվածներին պարզաբանել պատերազմի ողջ դաժանությունն ու անմտությունը, բուրժուազիայի տապալման համար պայքարի անհրաժեշտությունը։ Լենինը մատնանշում էր, որ մեր անվերապահելի պարտքն է մասսաներին բացատրել հեղափոխության անհրաժեշտությունը, նրան կոչել, ստեղծել համապատասխան կազմակերպություններ, չվախենալ ամենակոնկրետ կերպով բռնի պայքարի ձևերի ու «տեխնիկայի» մասին խոսելուց։

Լենինյան գաղափարները, մտքերն ու հետևությունները միշտ բխել են փաստերից։ Օրինակ, պնդելով, որ 1915 թվականին Եվրոպայում աճում էր հեղափոխական խմորումը, որը խորացել էր իմպերիալիստական պատերազմի հետևանքով, Լենինը վկայակոչում էր այնպիսի փաստեր, ինչպիսիք էին «գործադուլներն ու քաղաքական ցույցերը Ռուսաստանում, գործադուլներն Իտալիայում և Անգլիայում, քաղցի ու քաղաքական ցույցերը Գերմանիայում» (ԵԼԺ, հ. 27, էջ 156)։

Ճգնաժամը հատկապես խորացավ Ռուսաստանում։ Հենց այստեղ ստեղծվեց տիրող շրջանների համար պայթյունով առավել հղի հեղափոխական իրադրություն, որը վերաճեց հեղափոխության։ Այն, որ հեղափոխական ճգնաժամը Ռուսաստանում ավելի խորն էր և ավելի վաղ սկսվեց, Լենինը բացատրում էր նրանով, որ «ցարական Ռուսաստանում... կազմալուծումն ամենահրեշավորն էր և ...պրոլետարիատն ամենահեղափոխականն է (ոչ թե շնորհիվ նրա հատուկ արժանիքների, այլ շնորհիվ «հինգ թվականի» կենդանի ավանդույթների)» (ԵԼԺ, հ. 31, էջ 18)։



Հեղափոխական իրադրությունը, հեղափոխական ճգնաժամը Ռուսաստանում ուշագրավ են նաև այն առումով, որ ոչ լրիվ 1917 թվականի ընթացքում դրանք հանգեցրին երկու՝ Փետրվարյան բուրժուադեմոկրատական և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխություններին։ Առաջինը տապալեց ցարիզմը, իսկ երկրորդը վերացրեց կապիտալիստական հասարակարգը։

Հեղափոխական իրադրության՝ սոցիալիստական հեղափոխության վերաճման վճռական պայմանը համազգային ճգնաժամն է, երբ ամբողջ հասարակությունն է գտնվում ճգնաժամային վիճակում։ Ընդ որում համազգային ճգնաժամը սովորաբար պետք է հանգեցնի ապստամբության։ «Պետական գործերը կառավարելու «վերնախավերի» համար այդ անկարելիության և նման կառավարման հետ «ստորին խավերի» խիստ կերպով հաշվել չցանկանալու զուգադիպումն էլ հենց կազմում է այն, ինչ կոչվում է (թերևս, մի փոքր ոչ ճշգրտորեն) քաղաքական ճգնաժամ համազգային մասշտաբով» (ԵԼԺ, հ. 23, էջ 403)։ Հեղափոխական իրադրությունը բնորոշող օբյեկտիվ և սուբյեկտիվ նշանների միասնությունը վերջին հաշվով վերածվում է համազգային ճգնաժամի։

Վ. Ի. Լենինը 1905 թ. օրինակով ցույց տվեց, թե ինչպես ռուս-ճապոնական պատերազմի և քայքայման հետևանքով ստեղծված ու համազգային ճգնաժամի վերաճած հեղափոխական իրադրությունը հանգեցրեց ռուսական առաջին հեղափոխությանը։ Լենինը շեշտում էր, որ առանց ճգնաժամի, առանց դրա զարգացման՝ համազգային մասշտաբի հեղափոխության հաղթական ապստամբությունն անհնարին է։ «Կպահե՞ն, արդյոք, բոլշևիկներն իրենց ձեռքում պետական իշխանությունը» աշխատությունում, խոսելով ապստամբության բռնկման պայմանների մասին, Լենինը գրում էր, որ «ապստամբության համար հարկավոր են՝ 1) հեղափոխության սաստկանալը համազգային մասշտաբով. 2) հին, օրինակ՝ «կոալիցիոն» կառավարության բարոյական ու քաղաքական լիակատար փլուզումը.— (մեծ տատանումները բոլոր միջանկյալ տարրերի բանակում, այսինքն՝ նրանց բանակում, ովքեր կառավարության կողմն են ոչ լրիվ, թեև երեկ նրա կողմն էին» (ԵԼԺ, հ. 34, էջ 425)։

Վ. Ի. Լենինը համազգային ճգնաժամի հասունացման կարևոր ցուցանիշ էր համարում դեմոկրատիայի ուժերի աճը, գյուղացիության պրոլետարականացման տեմպերի արագացումը, որը հատկապես կարևոր էր Ռուսաստանի համար, որտեղ գյուղացիությունը կազմում էր բնակչության մեծամասնությունը։ Իսկ պրոլետարիատի թվաքանակի աճը նշանակում էր կառավարող վերնախավի դեմ գործադուլների, ցույցերի հաճախացումը, այսինքն՝ մասսաների քաղաքական ակտիվության աճը, որը հեղափոխական իրադրության օբյեկտիվ նշաններից մեկն է։ Այդ մասին է խոսվում ՌՍԴԲԿ Կենտկոմի Կրակովում կայացած խորհրդակցության՝ Լենինի գրած «Ծանուցում»-ում (տե՛ս ԵԼԺ, հ. 22, էջ 310)։

Նշենք, որ համազգային ճգնաժամը որոշում է նաև կուսակցական ուժերի տեղաբաշխումը, հնարավորություն է ընձեռում հստակ սահմանագիծ անցկացնելու տարբեր քաղաքական կուսակցությունների միջև այն պահերին, երբ «ամեն մի հասարակության բաժանումը քաղաքական կուսակցությունների ամենից ավելի պարզորոշ է երևան գալիս։ Այդպիսի ճգնաժամերի դարաշրջանները միշտ երկար տարիների և նույնիսկ տասնամյակների համար որոշում են տվյալ երկրի հասարակական ուժերի կուսակցական խմբավորումը» (ԵԼԺ, հ. 21, էջ 341)։

Վ. Ի. Լենինն առաջադրեց նաև այն դրույթը, թե համազգային մասշտաբի ճգնաժամի շրջանում, երբ երկրում առկա են հեղափոխական իրադրությունն ու հեղափոխական ճգնաժամը, բուրժուազիան ինքն է ստիպված իշխանությունը հանձնել ժողովրդին։ Այս առթիվ նա վկայակոչում էր հունգարական հեղափոխության օրինակը։

Համազգային ճգնաժամի ևս շատ կարևոր հայտանիշ են գյուղացիական ապստամբությունները։ Լենինը նշում էր, որ տվյալ դրույթը հատուկ նշանակություն էր ձեռք բերում Ռուսաստանում՝ գերազանցապես գյուղացիական, հողագործական երկրում։ Լենինն ավելացնում էր, եթե նույնիսկ ճգնաժամի

բոլոր նշանների բացակայության, սակայն միմիայն գյուղացիական ապստամբությունների դեպքում կարելի է վստահորեն խոսել համազգային ճգնաժամի մասին։ «Ճգնաժամը հասունացել է» հոդվածում (1917 թ.) Լենինը գրել է. «Եթե գյուղացիական երկրում, դեմոկրատական հանրապետության յոթամսյա գոյությունից հետո, բանը կարող էր հասնել գյուղացիական ապստամբության, ապա դա անհերքելի կերպով ապացուցում է... հակահեղափոխական ուժերի մոտենալը վերջին սահմանին» (ԵԼԺ, հ. 34, էջ 351)։

Խիստ կարևոր է Լենինի մեկ այլ դրույթը՝ կապված հեղափոխական իրադրության հարցի հետ։ Ճառերում, հոդվածներում նա այն միտքն էր շեշտում, թե հուժկու հեղափոխական ճգնաժամի՝ ռազմական ճգնաժամի շրջանում, բացահայտ հեղափոխական իրադրության պայմաններում միայն իրոք ժողովրդական իշխանությունը, մասնավորապես Ռուսաստանում՝ սովետների իշխանությունը, կարող էր երկիրը փրկել անխուսափելի կործանումից։ Եվ բուրժուազիան նման պահերին ստիպված է պետության կառավարման սանձերը հանձնել ժողովրդի ներկայացուցիչների ձեռքը։

Ի՞նչ է հեղափոխությունը, ի՞նչ է այն իրենից ներկայացնում որպես պատմական երևույթ։ Այս հարցերին Վ. Ի. Լենինը սպառիչ պատասխան է տվել։ «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ» իր նշանավոր աշխատությունում (1905 թ.) Լենինը գրել է. «Մարքսիստական տեսակետից ի՞նչ բան է հեղափոխությունը։ Հնացած քաղաքական վերնաշենքի բռնի խորտակում, վերնաշենք, որի հակասությունը նոր արտադրահարաբերությունների նկատմամբ որոշակի պահի առաջացրել է նրա փլուզումը» (ԵԼԺ, հ. 11, էջ 149)։

Հեղափոխական իրադրության և համազգային ճգնաժամի կապակցությամբ Վ. Ի. Լենինն իր աշխատություններում քննարկել է նաև պրոլետարական կուսակցության տակտիկայի հարցերը, քանի որ տվյալ հեղափոխական իրադրության ընդերքից բռնկած հեղափոխության, ապստամբության հաջողությունը շատ բանով պայմանավորված է տվյալ պահի համար կուսակցության ճիշտ ընտրած պայքարի տակտիկայով։

Դեռևս 1905 թվականին Վ. Ի. Լենինը «Ուժերի հավասարակշռություն» հոդվածում առաջադրեց հեղափոխության ինքնուրույն հարձակման շատ կարևոր դրույթը։ Ելնելով Ռուսաստանի կոնկրետ իրադրությունից, նա նշում էր, որ թեև հակահեղափոխությունը ինքն արդեն հարձակվել չէր կարող, հեղափոխությունը տանուլ կտա, «եթե մենք ևս մեկ աստիճան վեր չբարձրանանք, եթե մենք չհաղթահարենք ինքնուրույն հարձակման խնդիրը, եթե մենք չկտրենք ցարիզմի ուժը, չխորտակենք նրա փաստական իշխանությունը» (ԵԼԺ, հ. 12, էջ 6—7)։

Մարքսիստների ուղղակի պարտքը, նրանց տակտիկայի կարևորագույն խնդիրներից է կարողանալ հեղափոխական շարժմանը նեցուկ լինել, այն ուղղել ճիշտ, տվյալ իրադրությանը համապատասխանող հունով, առաջադրել պարզորոշ լոզունգներ, «ստեղծել անլեգալ կազմակերպություն և գրականություն, առանց որի չի կարելի մասսաներին հեղափոխության կոչել» (ԵԼԺ, հ. 27, էջ 136—137)։

Վ. Ի. Լենինը նշել է նաև, որ սոցիալ-դեմոկրատիան պետք է ճկուն տակտիկա ունենա, դոգմատիզմի մեջ չընկնի, այլ կարողանա իր տակտիկան և իր մերձավորագույն խնդիրները համապատասխանեցնել յուրաքանչյուր տվյալ պահի առանձնահատկություններին։ Նա ուսուցանում էր, որ սոցիալ-դեմոկրատիան պետք է յուրաքանչյուր ճգնաժամից, յուրաքանչյուր հեղափոխական իրադրությունից ճիշտ դասեր քաղի, ուշադրությամբ ուսումնասիրի կուտակված փորձը և, որ խիստ կարևոր է, հաշվի առնի ուժերի և դասակարգերի տեղաբաշխումն այս կամ այն հեղափոխական իրադրությունում։ Մշակելով իրենց տակտիկան՝ մարքսիստները պետք է գիտենան, որ ամեն մի ճգնաժամ դեն է շպրտում հինը, բաց է անում հասարակության խոցերը, բացահայտում հեղափոխական պայքարի իսկական մեխանիզմը։

Հեղափոխական իրադրության և հեղափոխական ճգնաժամի շրջանում կուսակցության կարևորագույն տակտիկական հարցերի թվին Լենինը դասում



էր ապստամբության կազմակերպման ու անցկացման հարցը։ Ապստամբության հաջող ելքի համար նա մատնանշում էր երեք հիմնական պայմաններ, որոնց մասին խոսվում է «Մարքսիզմը և ապստամբությունը» (1917 թ.) աշխատությունում. «Ապստամբությունը, հաջող լինելու համար, պետք է հենվի ոչ թե դավադրության, ոչ թե կուսակցության, այլ առաջավոր դասակարգի վրա։ Սա առաջին։ Ապստամբությունը պետք է հենվի ժողովրդի հեղափոխական վերելքի վրա։ Սա երկրորդ։ Ապստամբությունը պետք է հենվի հասունացող հեղափոխության պատմության այնպիսի բեկման կետի վրա, երբ ժողովրդի առաջավոր շարքերի ակտիվությունն ամենամեծն է, երբ ամենից ավելի ուժեղ են տատանումները թշնամիների շարքերում և հեղափոխության թույլ, կիսատ-պռատ, անվճռական բարեկամների շարքերում։ Սա երրորդ» (ԵԼԺ, հ. 344, էջ 307—308)։

Վ. Ի. Լենինը զգուշացնում էր, որ չի կարելի, անթույլատրելի է շտապողականություն ցուցաբերել ապստամբության կուրս վերցնելիս։ Եթե միայն առկա են բացահայտ հեղափոխական իրադրություն, ամենախորը ճգնաժամ, հեղաշրջման համար օբյեկտիվ պայմաններ, միայն այդ դեպքում կարելի է ապստամբության կոչ արձակել։ Լենինը նշում էր. «Ապստամբությունը շատ մեծ խոսք է։ Ապստամբության կոչը չափազանց լուրջ կոչ է»։ «Այդ լոզունգը չի կարելի առաջադրել այնքան ժամանակ, քանի դեռ չեն հասունացել հեղաշրջման ընդհանուր պայմանները, քանի դեռ որոշակի կերպով չեն արտահայտվել մասսաների հուզումն ու գործելու պատրաստակամությունը, քանի դեռ արտաքին հանգամանքները չեն հասցրել բացահայտ ճգնաժամի» (ԵԼԺ, հ. 11, էջ 451, 452—453)։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ մարքսիստները պետք է հատկապես վճռականորեն հանդես գան և գլխավորեն մասսաներին հեղափոխության բռնկման պահին։ Նա նախազգուշացնում էր, որ գործնական պայքարը կրիտիկական պահերի համար անօգուտ պրոպագանդայով փոխարինելու սխալը չպետք է գործել, «երբ իրենց համար նոր վերնաշենք կերտող դասակարգերի և մասսաների բացահայտ քաղաքական ելույթը փաստ է դարձել... այդ ժամանակ գործից հրաժարվել «հոգեկան պայմանների» և ընդհանրապես «պրոպագանդայի» վկայակոչումով՝ անկենդանություն է, մեռածություն, իմաստակություն կամ թե հեղափոխության մատնություն է և դավաճանություն նրա հանդեպ» (նույն տեղը, էջ 73)։

Լենինը բազմիցս նշել է, որ 1917 թ. հեղափոխական ճգնաժամը շատ խորը, համակողմանի, աննախադեպ ճգնաժամ է։ «Ճգնաժամն այնքան խորն է, այնքան լայնորեն ճյուղավորված, այնքան համաշխարհայնորեն մեծ, այնքան սերտորեն է կապված կապիտալի հետ, որ դասակարգային պայքարը կապիտալի դեմ անխուսափելիորեն պետք է ընդունի պրոլետարիատի և կիսապրոլետարների քաղաքական իշխանության ձև։ Այլապես՝ ելք չկա» (ԵԼԺ, հ. 32, էջ 35)։

Հեղափոխական իրադրության վերաբերյալ լենինյան դրույթները լիովին կիրառելի են ամբողջ ռուսական կայսրությունով մեկ ծավալված հեղափոխական շարժման նկատմամբ։ Փետրվարյան բուրժուադեմոկրատական և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունների շրջանում Լենինը, բոլշևիկները մեծապես կարևորում էին հեղափոխական շարժման զարգացումը Ռուսաստանի ազգային ծայրամասերում, այդ թվում՝ Անդրկովկասում։

Ընդհանուր առմամբ քաղաքական իրավիճակն Անդրկովկասում նման էր ողջ Ռուսաստանում ստեղծված իրադրությանը։ Փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո ռեգիոնում հաստատվեց երկիշխանություն. մի կողմից, բանվորների ու զինվորների դեպուտատների սովետները և առաջին հերթին՝ Թիֆլիսի բանվորների ու զինվորների դեպուտատների սովետը, մյուս կողմից՝ Ժամանակավոր կառավարության՝ 1917 թ. մարտի 9-ին ստեղծված հատուկ անդրկովկասյան կոմիտեն։ Բայց երկիշխանությունն Անդրկովկասում յուրահատուկ գծեր ուներ։ Օրինակ, եթե Պետրոգրադում, Մոսկվայում և արդյունաբերական այլ կենտրոններում առկա էին որոշակի տարաձայնություններ Ժամանակավոր կառավարության

ու նրա մարմինների և սովետների միջև, ապա Անդրկովկասում մենշևիկյան կոմիտեի և սովետների միջև այդ տարաձայնությունները աննշան էին: Դա բացատրվում էր նրանով, որ մենշևիկները, կանգնած լինելով սովետների և մասնավորապես ամենաազդեցիկ Թիֆլիսի սովետի գլուխ, հատուկ անդրկովկասյան կոմիտեի կազմի մեջ մտցնել տվեցին իրենց ներկայացուցչին՝ պետական դումայի անդամ Ա. Չխենկելուն: Մենշևիկները հայտնվեցին Անդրկովկասի կառավարման երկու մարմիններում, որը մերձեցնում էր երկիշխանության մարմինները և որոշ չափով վերացնում սահմանագիծը նրանց միջև (տե՛ս Н. Б. Махарадзе. Победа социалистической революции в Грузии. Тбилиси, 1965, стр. 50):

Անդրկովկասի համար առանձնահատուկը նաև այն էր, որ սովետներն ավելի ազդեցիկ էին, քան հատուկ անդրկովկասյան կոմիտեն: Բայց դա չէր խարխլում ժամանակավոր կառավարության տեղական մարմնի վիճակը, քանի որ մենշևիկյան-էսէռական բլոկի գլխավորած սովետներն ամեն կերպ խրախուսում էին հիշյալ կոմիտեի գործունեությունը և դրանով իսկ պաշտպանում էին շահագործողական դասակարգերի շահերը:

Խոսելով Անդրկովկասում տիրող երկիշխանության մասին, մենք ընդհուպ մոտեցանք հեղափոխական մասսաների մարմինները հանդիսացող սովետների ձեռքը իշխանության խաղաղ անցման հնարավորության և անդրկովկասյան ռեգիոնում հեղափոխական իրադրության առկայության վերաբերյալ հարցին: Բոլշևիկները բազմիցս նշել են, որ երկիշխանության շրջանում սովետների ձեռքն ամբողջ իշխանության խաղաղ անցման հնարավորությունն առկա էր հեղափոխական ագիտացիայի և պրոպագանդայի, սովետների բոլշևիկացման, մենշևիկների և էսէռների դավաճանական դիրքի մերկացման, ժամանակավոր կառավարությանն ու նրա տեղական մարմիններին որևէ վստահությունից զրկելու ուղիով: Բայց նման տակտիկան ճիշտ էր բուն երկիշխանության շրջանում: Իսկ երբ սովետներն իրենց դիրքերը զիջեցին ժամանակավոր կառավարությանը, երբ երկրում հաստատվեց հակահեղափոխության իշխանությունը, այսինքն՝ 1917 թ. հուլիսից հետո, խաղաղ անցման տակտիկան կորցրեց իր իմաստը, և բոլշևիկները ամբողջ Ռուսաստանում, այդ թվում և Անդրկովկասում, զինված ապստամբություն բարձրացնելու կուրս վերցրեցին:

Շատ կարևոր է նաև Անդրկովկասում հեղափոխական իրադրության առկայության հարցը: Իմպերիալիստական պատերազմը, ծայրաստիճան սրելով աշխատանքի և կապիտալի միջև եղած հակասությունը և հանգեցնելով անմիջականորեն հեղափոխական իրադրության ու հեղափոխական ճգնաժամի Ռուսաստանում, չշրջանցեց նաև ռուսական պետության մաս կազմող Անդրկովկասը: Եվ երբ Վ. Ի. Լենինը վերլուծում էր քաղաքական իրավիճակը Ռուսաստանում, խոսում սոցիալիստական հեղափոխության քաղաքական ու տնտեսական նախադրյալների մասին, նշում 1917 թ. սկսված ճգնաժամի համազգային, համառուսաստանյան բնույթը, նա միշտ ի նկատի ուներ ոչ միայն Ռուսաստանի կենտրոնական շրջանները, այլև նրա ազգային ծայրամասերը, այդ թվում՝ Անդրկովկասը:

Սակայն Ռուսաստանի կենտրոնում 1917 թ. հոկտեմբերին հեղափոխական իրադրությունն ու հեղափոխական ճգնաժամը հանգեցրին հաղթական զինված ապստամբության և սովետական իշխանության հաստատման, մինչդեռ Անդրկովկասում սոցիալիստական հեղափոխության լիակատար հաղթանակը տեղի ունեցավ 1920—1921 թթ.: Որո՞նք են Անդրկովկասում սովետական իշխանության հաղթանակի առանձնահատկությունները: Լենինը բազմիցս նշել է, որ միմիայն հեղափոխական իրադրության առկայությունը չի կարող երաշխավորել սոցիալիստական հեղափոխության հաջողությունը: Հեղափոխական իրադրության օբյեկտիվ նշաններին պետք է միանան նաև սուբյեկտիվ գործոնները, այսինքն՝ մասսաների հեղափոխական գործողությունները, դրանց ղեկավարումը կուսակցության կողմից: Բուն կուսակցությունն է սահմանում հեղափոխական շարժման ստրատեգիան ու տակտիկան, որը վճռական նշանակություն ունի հեղափոխության հաղթանակի համար: Ռուսաստանի կենտրոնում ապստամբության հաղթանակը հաստատեց Վ. Ի. Լենինի տվյալ դրույթը: Հաստատվեց նաև կուսակցության վերցրած զինված ապստամբության կուրսի ճշտությունը:



Անդրկովկասում բոլշևիկները լիովին պաշտպանեցին ամբողջ կուսակցության վերցրած զինված ապստամբության կուրսը, որն ընդունել էր համագումարը: Սակայն հետագայում Անդրկովկասի որոշ բոլշևիկյան գործիչներ հրապուրվեցին «խաղաղ պատրանքներով», հույս ունենալով առանց զինված ուժ գործադրելու, խաղաղ միջոցներով, «ժողովրդի շրջանում խաղաղ մեծամասնություն» նվաճելով լուծել հասունացած հեղափոխական ճգնաժամը: Նման հարցադրումը արմատապես սխալ էր: Նրանք հաշվի չառան, որ հեղափոխության զարգացման խաղաղ շրջանը վերջացել էր դեռևս 1917 թ. հուլիսին, ինչպես նաև «ի վիճակի չէին պատկերացնելու, թե որքան խորը կարող է լինել այդ (մանրբուրժուական— Ա. Ս.) կուսակցությունների, հատկապես մենշևիկների, անկումը, որքան հեռուն կարող են գնալ նրանք ամենասանձարձակ ռեակցիայի և բուրժուական նացիոնալիզմի պաշտպանության գործում...» (Նույն տեղը, էջ 66):

Հետհոկտեմբերյան պայմաններում, ողջ երկրով մեկ սովետական իշխանության հաղթարշավի շրջանում, երբ ժողովրդական զանգվածները, այդ թվում և Անդրկովկասում, լի էին հեղափոխական վճռականությամբ դադարեցնելու իմպերիալիստական պատերազմը, լուծելու ագրարային, ազգային հարցերը, այսպես կոչված՝ «մեծամասնության նվաճումը», Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ «իրականությունից փախչելու քողարկում» է, որովհետև այնպիսի երաշխիքներ, թե «ամբողջ երկրում բոլշևիկների կուսակցությունն ստացել է բոլոր ձայների ճիշտ և ճիշտ կեսը՝ գումարած մեկ ձայն... պատմությունը երբեք և ոչ մի հեղափոխության ժամանակ չի տվել և բացարձակապես անկարող է տալ» (ԵԼԺ, հ. 34, էջ 501):

Ըստ էության, կուսակցության կովկասյան երկրկոմի վերցրած՝ հեղափոխության խաղաղ զարգացման կուրսը, մանավանդ Բաքվում սովետական իշխանության հաղթարշավի պայմաններում, սխալ էր և դարձավ ռեգիոնում հակահեղափոխության ուժերի ժամանակավոր հաղթանակին նպաստող գործոններից:

Այսպիսով, Անդրկովկասում, ինչպես և ամբողջ Ռուսաստանում, 1917 թ. առկա էին հեղափոխական իրադրությունն ու հեղափոխական ճգնաժամը, գոյություն ուներ երկիշխանություն, հնարավորություններ են եղել սովետների ձեռքը իշխանության խաղաղ անցման և այնուհետև զինված ապստամբության համար: Միայն կուսակցության կովկասյան երկրկոմի առանձին վրիպումները և 1918 թ. սկզբին գերմանաթուրքական ինտերվենցիայի, իսկ այնուհետև Անտանտայի և ԱՄՆ-ի ինտերվենցիայի կապակցությամբ ստեղծված յուրահատո՛ւկ քաղաքական պայմաններն ուշացրին սոցիալիստական հեղափոխության հաղթանակն Անդրկովկասում:

Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում հեղափոխական իրադրության և համազգային ճգնաժամի հարցերի վերլուծությանն ու բնութագրմանը: Նա մարքսիստներին սովորեցնում էր ճշտորեն որոշել հեղափոխական իրադրության առկայությունը, այն օգտագործել հեղափոխության համակողմանի նախապատրաստման համար, ճշտորեն սահմանել սեփական խնդիրներն ու տակտիկան:

Հեղափոխական իրադրության և համազգային ճգնաժամի վերաբերյալ լենինյան դրույթները սոցիալիստական հեղափոխության մասին նրա իսկ տեսության բաղկացուցիչ մասն են: Եվ այդ ուսմունքի ճշմարտացիությունն ապացուցել են ոչ միայն ռուսական հեղափոխությունները, այլև համաշխարհային մասշտաբով հեղափոխական շարժումները Հոկտեմբերից հետո, սոցիալիստական սիստեմի ստեղծումը, աշխարհի ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական լայն շարժման հարաճուն հաջողությունները:

# ԿՈՒՍՇՐՋԿՈՄԸ ԵՎ ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՄԻԱՎՈՐՈՒՄԸ

**Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
ՀԿԿ Կամոյի շրջկոմի քարտուղար

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1982 Թ. ՄԱՅԻՍՅԱՆ պլենումը, ընդունելով մեր երկրի երկարաժամկետ պարենային ծրագիրը, միաժամանակ մշակեց դրա իրականացման կոնկրետ միջոցառումներ։ Այդ համակարգում վճռական նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած «Գյուղատնտեսության և ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ճյուղերի կառավարումը բարելավելու մասին» որոշումը, որը հաստատվեց պլենումում։ Որոշմամբ նախատեսվեց ստեղծել շրջանային ագրոարդյունաբերական միավորումներ, որոնց հիմնական ֆունկցիան պետք է լինի կառավարման ճյուղային և տերիտորիալ սկզբունքի արդյունավետ զուգակցումը, ագրոարդյունաբերական կոմպլեքսը կազմող մինիստրությունների ու գերատեսչությունների համակարգում գտնվող տնտեսությունների, ձեռնարկությունների և հիմնարկությունների գործունեության կոորդինացումը։ Միավորումների ստեղծմամբ բացառվում է զուգահեռաբար գործող, երբեմն էլ ավելորդ օղակների գոյությունը, պարզեցվում ու արմատապես բարելավվում է գյուղատնտեսական և հարակից ճյուղերի կառավարումը։ Ագրոարդյունաբերական միավորումների առջև խնդիր է դրվում գյուղատնտեսությանը հարակից ձեռնարկությունների և հիմնարկությունների արտադրական ծրագիրը բխեցնել կոլեկտիվ և պետական տնտեսությունների պահանջներից ու շահերից, պարենային ծրագրի կատարման անհրաժեշտությունից։*

*ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումներին համապատասխան, 1983 թ. մեր շրջանում ևս ստեղծվեց ագրոարդյունաբերական միավորում, որի կազմի մեջ ներգրավվեցին կոմպլեքսի բոլոր տնտեսությունները, ինչպես նաև գյուղատնտեսությանն անմիջականորեն սպասարկող կազմակերպություններն ու ձեռնարկությունները (սովխոզները, «Գյուղտնտպետկոմի» շրջանային միավորումը, գյուղքիմիայի շրջանային տեղամասը, Գավառագետի ոռոգման ու ջրարբիացման համակարգերի վարչությունը, անտառտնտեսությունը, պանրագործարանը և այլ գյուղատնտեսական ու շինարարական կազմակերպություններ)։ Նրանց գործունեությանն առնչվող խնդիրների օպերատիվ լուծման նպատակով ստեղծվել է ագրոարդյունաբերական շրջանային միավորման խորհուրդ։*

*Առաջին իսկ օրից մեր շրջանային խորհուրդը ակտիվ գործունեություն է ծավալել գյուղատնտեսության ինտենսիվ զարգացման խնդիրները հաջողությամբ լուծելու համար և իրականացնում է այնպիսի միջոցառումներ, որոնք ապահովեն բոլոր տնտեսությունների կողմից գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետական վաճառքի առաջադրանքների անթերի կատարումը։ Անցած տարի միավորման խորհրդի նիստերում քննարկվել են գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, նոր ռեզերվների հայտնաբերման ու օգտագործման, պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդման, մեխանիզատորական կադրերի որակավորման բարձրացման ու պատրաստման, կարևոր նշանակություն ունեցող այլ հարցեր։ Խորհուրդը մշակել է նկատված թերությունները արագորեն վերացնելու գործուն միջոցառումներ։*

*Շրջանային ագրոարդյունաբերական միավորման խորհուրդը հսկողության տակ վերցրեց այնպիսի մի էական հարցի լուծումը, ինչպիսին բոլոր սովխոզների տնտեսական զարգացման համար հավասար պայմանների ստեղծումն է։ Հաշվի առնելով գիտական երկրագործության պահանջները, խորհրդի որոշմամբ կազմվեցին տնտեսությունների էկոնոմիկայի զարգացման պլաններ։ Հատկապես ուշադրություն նվիրվեց հանրային հոտի կերի կայուն բազայի ամրապնդմանը, գյուղում արտադրական և կենցաղային օբյեկտների կառուցմանը, ինտենսիվ գործոնների հաշվին գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը։ Ըստ ծրագրի, պետք է զարգացման լուրջ քայլեր անեն նաև գյուղական բնակչության անձնական օժանդակ տնտեսությունները։*

*Ագրոարդյունաբերական միավորման և նրա խորհրդի արդյունավետ գործունեության ապահովման, պարենային ծրագրով աշխատավորական կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների հաջող լուծման համար պահանջվում է ըստ ամենայնի բարձրացնել կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի մակարդակը։ Շրջանային միավորման ստեղծման, նրա գործունեության առաջին քայլերի հետ առնչվող հարցերը քննարկվել են ինչպես կուսշրջկոմի բյուրոյում, այնպես էլ շրջսովետի սեսիայում։ Շրջկոմը և շրջսովետի գործկոմը հատուկ ուշադրություն են նվիրում այն բանին, որ միավորման գործելակերպը լիովին բավարարի արդի պահանջները, ստեղծվի որակապես նոր, ավելի մեծ օղակ, որը վերացնի իր ընդգրկած բոլոր ձեռնարկությունների նախկին պատնեշները ու ստեղծի մեկ օրգանական ամբողջություն։ Միավորման ապարատը կոմպլեկտավորվեց էկոնոմիկան լավ իմացող, արտադրության կազմակերպման հմտությամբ և գործնական ու քաղաքական հատկանիշներով օժտված կադրերով։ Այստեղ կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու առումով վճռական դեր ունի կուսշրջկոմի նորաստեղծ գյուղատնտեսական բաժինը։ Բաժնին առընթեր սկզբից ևեթ կազմավորվեց 20 մարդուց բաղկացած գյուղատնտեսական հանձնաժողով, որի մեջ ընդգրկվեցին ագրոարդյունաբերական միավորման գլխավոր մասնագետները։ Հանձնաժողովը կանոնավոր կերպով քննարկում է գյուղատնտեսական արտադրության հրատապ հարցերը, նշում դրա զարգացմանը նպաստող ուղիներ։*

*Ագրոարդյունաբերական կոմպլեքսի ղեկավարումը կուսշրջկոմը հիմնականում իրականացնում է իր գյուղբաժնի միջոցով։ Բաժինը մեծ ուշադրություն է հատկացնում գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման և նրա ինտենսիվացման, առաջավոր փորձի ներդրման, գիտության և արտադրության կապի ամրապնդման վերաբերյալ շրջկոմի բյուրոյի ընդունած որոշումների կատարմանը, պարբերաբար ուսումնասիրում է դրա ընթացքն ու արդյունքները, վերլուծում գործերի վիճակը։*

*Ագրոարդյունաբերական միավորման աշխատանքի աշխուժացմանը, նրա կուսակցական ղեկավարման բարելավմանը մեծապես նպաստեց 1983 թ. մարտին տեղի ունեցած հանրապետական սեմինար-խորհրդակցությունը, որը քննարկեց կոմպլեքսի բոլոր օղակների գործունեության բարձր արդյունավետության ապահովման հարցերը։ «Հարկավոր է,— իր բացման խոսքում ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Դեմիրճյանը, —ոչ թե աշխատել կառավարման նոր մարմինների փոխարեն, այլ ապահովել դրանց կուսակցական ղեկավարումը, ցույց տալ օգնություն և աջակցություն, մղել նրանց դեպի կոնկրետ գործեր, լուծել կոմպլեքսի զարգացման կոնկրետ պրոբլեմները...»։ Սեմինար-խորհրդակցությունը, իրոք, ագրոարդյունաբերական կոմպլեքսի տնտեսական մեխանիզմի և դրա կուսակցական ղեկավարման կատարելագործման յուրատեսակ դպրոց հանդիսացավ։*

Ագրոարդյունաբերական միավորման գործունեության առաջին իսկ տարվա արդյունքներն արտահայտվեցին այն բանում, որ շրջանը արագորեն ավարտեց գյուղատնտեսական տեխնիկայի նորոգումը, բոլոր տնտեսություններն ապահովվեցին հացահատիկային, կերային կուլտուրաների, կարտոֆիլի սերմացուով, հաջողությամբ կատարեցին կաթի, մսի, ձվի արտադրության ու պետական վաճառքի պլանները։

Սխալ կլինի, սակայն, եթե ասենք. թե ամեն ինչ հարթ է ընթանում։ Աշխատանքի կազմակերպման նոր համակարգին անցնելը կապված էր խոչընդոտների ու դժվարությունների հաղթահարման հետ, և առջևում դեռ շատ անելիքներ կան։ Ամենակարևորը, իհարկե, ինքնուրույն ձեռնարկությունների համատեղ, փոխշահավետ գործունեության ապահովումն է, ընդհանուր աշխատանքի ճիշտ կոորդինացումը՝ գյուղատնտեսական արտադրության շեշտակի զարգացման, պարենային ծրագրի իրականացման նպատակով։ Եվ ագրոարդյունաբերական միավորման խորհուրդը ձգտում է արդյունավետ կերպով կատարել իր այդ դերը։ Եթե նախկինում, ասենք, Գավառագետի ոռոգման և ջրարբիացման համակարգերի վարչության և որևէ սովխոզի միջև ծագում էր աշխատանքային ինչ-որ հակասություն, ապա այժմ խորհուրդը պետք է իր գործունեությամբ բացառի նման դեպքերը։ Հարկավոր է նաև սովխոզների ղեկավարներին տոգորել միմյանց գործուն օգնություն ցույց տալու ցանկությամբ։ Ագրոարդյունաբերական միավորման խորհրդի նիստերում քննարկվող հարցերին փոքր տնտեսությունների ղեկավարները երկչոտ մոտեցում են ցուցաբերում։ Սա նույնպես հնից է գալիս, բայց արդեն հաղթահարվում է։ Այժմ էլ որոշակի դժվարությունների հետ է կապված ֆինանսական ազատ միջոցները մեկ օղակից մյուսին տրամադրելու խնդիրը։

Պարենային ծրագրի կարևոր պահանջներից մեկը ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ նրա հետ կապված արդյունաբերական ճյուղերի արդյունավետության հետագա բարձրացումն է, վճռական անցումը աճի գերազանցապես ինտենսիվ գործոններին։ Դա բխում է կուսակցության տնտեսական քաղաքականությունից։ Ինչպես ասվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումում, «Դա նաև պարենային պրոբլեմի լուծման առավել ներգործուն և փաստորեն միակ հնարավոր ուղին է»։ Գյուղատնտեսությունը վարել արդյունավետորեն, նշանակում է, առաջին հերթին, արդյունավետորեն օգտագործել հիմնական բնական հարստությունը՝ հողը, և դրանից ստանալ առավելագույն արդյունք։ Շրջանում հարուստ փորձ է կուտակվել հողերի մելիորացման, դաշտավարության մեքենայացման մակարդակի բարձրացման (այժմ արդեն 98 տոկոս), պարարտացման ու քիմիացման, ցանքերի մշակության նոր եղանակների, բարձր բերքատու սորտերի ներդրման գործը կազմակերպելու ասպարեզում։ Այդ խնդիրները գործարար քննարկման առարկա են դառնում կուսշրջկոմի բյուրոյի, իսկ այժմ նաև ագրոարդյունաբերական միավորման խորհրդի նիստերում, շրջկոմում հրավիրված խորհրդակցություններում և կուսակցական ժողովներում։ Բնավ չստանձնելով միավորման խորհրդի ֆունկցիաները՝ շրջկոմը պարբերաբար անդրադառնում է այդ հարցերին և դրանց լուծման վրա բևեռում միավորման խորհրդի ու սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը։ Եվ եթե վերջին տարիներին գյուղատնտեսական շրջանառության և ոռոգման ցանցի մեջ են ներգրավվել հարյուրավոր հեկտար նոր հողատարածություններ, 4.430 հեկտարով աճել է կերային կուլտուրաների ցանքատարածությունը, էապես բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ապա այդ հաջողություններում զգալի դեր են խաղացել կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած հետևողական աշխատանքը, նրանց մշակած միջոցառումների անշեղ իրականացումը։

Վերցնենք թեկուզև կարտոֆիլի արտադրությունը։ Երկար տարիներ այդ կուլտուրայի միջին բերքատվությունը հեկտարից կազմում էր 60—70, իսկ առաջավոր համարվող տնտեսություններում՝ 80—90 ցենտներ։ Կուսշրջկոմում երկար խորհեցինք ցածր բերքատվության պատճառների և այդ գործում արմատական բեկում մտցնելու շուրջ։ Հարցի լուծման լավագույն միջոցը հա-



մարեցինք սորտափոխանակությունն ու սորտաթարմացումը։ Նոր, բարձրբերքատու սորտերի ներդրմամբ հնարավոր եղավ կարտոֆիլի հեկտարի միջին բերքատվությունը բարձրացնել 2—3 անգամ և վճռական քայլեր անել այդ բնագավառում գործերի վիճակը շտկելու նպատակով։ Արդեն երկրորդ տարին է, ինչ Կարմիրի տնտեսությունում ցանվում են Հոլանդիայից ներմուծված կարտոֆիլի բարձրբերքատու սորտեր, որոնց ցանքադաշտերի ամեն մի հեկտարից ստացվում է 400—500 ցենտներ բերք։ Ընթացիկ տարում այդ սորտերից ամբարվել է 3.200 տոննա լավորակ բերք, որից ավելի քան 1.200 տոննան առանձնացվել է որպես սերմացու՝ շրջանի տնտեսությունների համար, իսկ 1.100 տոննա էլ հատկացվել է հանրապետության մյուս շրջաններին։ Կարտոֆիլի արտադրության ու պետական մթերումների, սերմացուի առանձնացման և իրացման կազմակերպման գործն իր ձեռք է վերցրել ագրոարդյունաբերական շրջանային միավորման խորհուրդը։ Այդ գործի կուսակցական ղեկավարումն իրականացնում է շրջկոմի գյուղբաժինը։ Եվ շրջանի տնտեսությունների ձեռք բերած բարձր ցուցանիշները նաև նրանց տևական, համառ ջանքերի արգասիք են։ Տասնմեկերորդ հնգամյակի առանցքային տարում, օրինակ, շրջանում կարտոֆիլի միջին բերքը կազմեց 186 ցենտներ, նախատեսված 130-ի փոխարեն, արտադրվեց 15.300 տոննա կարտոֆիլ, պետական մթերումների պլանը կատարվեց 195 տոկոսով։ Այդ հաջողություններում մեծ է առաջավոր տնտեսությունների և բարձր բերքի վարպետների ներդրումը։ Կարմիրի տնտեսությունը ամեն մի հեկտարից ստացել է մեր շրջանի համար աննախադեպ բերք՝ 331 ցենտներ, Սարուխանինը՝ 200, Բատիկյանի, Գեղարքունիքի, Լանջաղբյուրի, Նորադուզի տնտեսությունները՝ 167—191 ցենտներ։ Շրջանում առաջավորների շարքը գլխավորում է Կարմիրի պետական տնտեսության՝ Վոլոդյա Հունանյանի ղեկավարած բրիգադը, որը ռեկորդային բերք է ստացել։ Բրիգադի մարդիկ ապացուցեցին, որ ագրոտեխնիկական կանոնների հետևողական կիրառման, քրտնաջան աշխատանքի դեպքում հեկտարից 390 ցենտներ կարտոֆիլի միջին բերքի ստացումը միանգամայն իրական խնդիր է։ Իսկ ահա հոլանդական սորտերի բերքատվությունը նրանք հեկտարից հասցրին 500 ցենտների։ Այդ նվաճումներում հսկայական ներդրում ունեն Խաչիկ Սուչյանը, Մյասնիկ Հակոբյանը և ուրիշներ։ Իրենց տնտեսությունների միջին բերքատվության ցուցանիշները զգալիորեն գերազանցել են Տարիել Ջիչոյանը (Սարուխան), Հարություն Զաքարյանը (Բատիկյան), Լիպարիտ Խաչատրյանը (Գեղարքունիք) և ուրիշներ։

Դաշտավարության կարևոր նորույթներից է մի շարք տնտեսություններում հաճարի ցանքը։ Դրա ցանքատարածությունն արդեն հասնում է 100 հեկտարի, իսկ առաջիկա տարիներին ավելի կընդարձակվի։ Նախատեսվում է արմատավորել նաև կտավատը։

Շրջանի գյուղատնտեսական արտադրության առաջատար ճյուղերից է անասնապահությունը։ Կուսշրջկոմը սկզբնական կուսկազմակերպությունների ու ագրոարդյունաբերական միավորման խորհրդի ուշադրությունը հրավիրում է պարենային ծրագրով այդ բնագավառի համար սահմանված խնդիրների լուծման վրա։ Բնակչությանը սննդամթերքի անխափան մատակարարման շահերն այսօր պահանջում են, որպեսզի ագրոարդյունաբերական շրջանային միավորումը և նրա խորհուրդը առանձնահատուկ ուշադրություն նվիրեն անասնապահության ինտենսիվացմանը, կերի կայուն բազայի ստեղծմանը և այդ ճանապարհով հասնեն մսի ու կաթի արտադրության շեշտակի ավելացման։

Գաղտնիք չէ, որ կովերի կաթնատվության և մթերվող անասունների կենդանի քաշի ավելացումը հնարավոր չէ առանց անասնագլխաքանակի կազմի բարելավման, տոհմային աշխատանքի կատարելագործման, բարձրմթերատու ցեղի անասունների բազմացման, կերի բազայի ամրապնդման։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես հետամուտ են լինում այդ խնդիրների լուծմանը, դրանք դարձնում քննարկման առարկա, օգնում ագրոարդյունաբերական միավորման խորհրդին՝ ավելի կոնկրետ զբաղվելու այդ հարցերով։ Այդ ամենի շնորհիվ էապես բարելավվել է տնտե-

սություններում տարվող ցեղաբուծական աշխատանքը։ Դա կատարվում է ինչպես արժեքավոր ցեղատեսակների ներմուծման, այնպես էլ ներտնտեսային բուծման միջոցով։ Այրիվանի ցեղական երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկությունը տարեկան տալիս է 500—600 գլուխ բարձրարժեք երինջ՝ 350—400 կգ կենդանի քաշով, որոնցից յուրաքանչյուրի կաթնատվությունը կարելի է հասցնել երեք հազար և ավելի կգ-ի։ Բուծումը բարելավելու գործում վճռական դեր է խաղալու վերջերս ստեղծված միջտնտեսային արհեստական սերմնավորման միավորումը։ Հացառատի, Արծվաքարի, Կարմիրի, Նորադուզի, Կամոյի սովխոզներում առաջին անգամ կիրառվել է բարձր մսատու լիմուզին ցեղով 500 գլուխ կովի տրամախաչումը։ Կաթնատվության բարձրացման նպատակով շրջան են ներմուծվել զգալի քանակությամբ սևաբղետ, կոստրոմյան և շվից ցեղի կովեր ու երինջներ։ Եթե մի քանի տարի առաջ շրջանում չկար 2.000 կգ կաթ ստացող կթվոր, ապա այսոր շատերն արդեն պայքարում են 3.000-ականի կոչման համար։

Ցեղաբուծական հետևողական աշխատանքը լավ արդյունք է տվել նաև ոչխարաբուծության բնագավառում։ Շրջան ներմուծված լեսկինյան և կորիդել ցեղի կիսանրբագեղմ խոյերից ստացված սերունդն աչքի է ընկնում բարձրմթերատու լավ հատկանիշներով։ Կամոյի սովխոզ-տեխնիկումի № 2 ոչխարաբուծական բրիգադի հաջողությունները հիմնականում պայմանավորված են սելեկցիոն արդյունավետ աշխատանքով։ Այստեղ ամեն մի ոչխարից տարեկան ստացվում է 3,5 կիլոգրամ բուրդ։ Արտադրության առաջամարտիկների արդյունքներն ավելի բարձր են։ ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր, Լենինի և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանների ասպետ Աշոտ Զատիկյանը, Աշխատանքային փառքի երրորդ աստիճանի շքանշանի արժանացած Նրեմ Զախարյանը, ինչպես նաև Գուրգեն Զատիկյանը, Ռուբեն Քեռյանը, Սուրեն Ժամհարյանը մեկ ոչխարից, որպես կանոն, ստանում են 4,5—5 կիլոգրամ բուրդ, 100 մաքուց՝ 110—115 գառ։ Նրանց համար պատվի գործ է՝ իրենց ներդրումն անելու պարենային ծրագրի իրականացման գործում։ Այդպիսի ազնիվ զգացումով է համակված Զատիկյանների անվանի հովվական գերդաստանը։ Գերդաստանի նահապետը՝ Մկրտիչը, նրա կինը՝ Գոհարը, նրանց որդիները՝ Աշոտն ու Գուրգենը, Աշոտի կինը՝ Հասմիկը, որդիները՝ Պապինը, Համլետը, Մկրտիչը, իրենց աշխատանքային կենսագրությունը գրում են Կամոյի սովխոզ-տեխնիկումի ոչխարաբուծական ֆերմայում։ Կոմունիստ Աշոտ Զատիկյանը 1981 թ. արդյունքներով արժանացավ ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկրի կոչման, ելույթ ունեցավ կենտրոնական հեռուստատեսությամբ՝ էկրանից ներկայացնելով կապուտակ Սևանին նվիրված, Մկրտիչ հոր ընտանիքի, սովխոզի աշխատավորների խիզախումների մասին պատմող կադրեր։ Զատիկյանների գերդաստանի նահապետ Մկրտիչը սարի տնակում հյուրեր ընդունեց, խնջույքի սեղանին բաժակաճառ ասաց. «Իմ գերդաստանի անունը բարձրացրեց կոմունիստ որդիս՝ Աշոտը։ Բայց շնորհված բարձր կոչումը միայն նրանը համարել չի կարելի։ Մեր սարերն ու մեր մարդիկ են օգնել որդուս այդ կոչմանն արժանանալու համար»։

Իհարկե, գլխավոր շեշտը դնելով անասնապահության գիտական կազմակերպման, ցեղաբուծության զարգացման, մարդկանց աշխատանքային եռանդի վրա, չպետք է մոռանալ, որ նվաճումների հիմքում ոչ պակաս չափով ընկած է խնամքի բարելավումը։ Սելեկցիոն աշխատանքները ողջ ծավալով կազմակերպելու համար ժամանակ է պահանջվում, իսկ նստել ու սպասել այդ ժամանակին՝ հնարավոր չէ։ Անասնապահության ինտենսիվ զարգացումը պահանջում է նույն պայմաններում գործադրել ավելի կարևոր ռեզերվներ, ստանալ ավելին։ Իսկ ռեզերվները շատ են՝ սեփական արտադրության բարձրորակ կերերը, մեքենայական կթի ներդրումը, խնամքի արդյունավետությունը, յայլաղային պայմանների բարելավումը, մարդկանց աշխատանքային հմտությունը և այլն։ Ցավոք, ոչ բոլոր տնտեսություններն են խելամտորեն օգտվում այդ ռեզերվներից։ Վկայությունը՝ բնակլիմայական միևնույն պայմաններում գտնվող տնտեսությունների միանգամայն տարբեր արդյունքները։ Այսպես, Կամոյի, Հացառատի, Բատիկյանի, Նորադուզի սովխոզները ամեն մի կովից ստանում են 1.850—2.125, իսկ Արծվաքարի, Կարմիրի, Լճափի, Ծովազարդի սովխոզները՝ ընդամենը 1.450—1.590 կիլոգրամ կաթ։ Էական տարբերություններ կան նաև միևնույն տնտեսության տարբեր կոլեկտիվների և անասնապահների ցուցանիշներում։ Եվ եթե ետ մնացող տնտեսությունները հասնեն շրջանի, իսկ կոլեկտիվները և անհատները՝ իրենց տնտեսության միջին ցուցանիշներին, ապա հնարավոր կլինի շրջանում կաթի տարեկան համախառն արտադրությունն ավելացնել մի քանի հազար տոննայով։ Նույն բանը կարելի է ասել նաև մսի, բրդի և գյուղատնտեսական կուլտուրաների արտադրության կապակցությամբ։ Կուսշրջկոմը լրջորեն զբաղվում է այս հարցերով։ Պլենումներում, բյուրոյի նիստերում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում հանգամանորեն խոսվում է այն մասին, թե վատ աշխատանքի հետևանքով որքան բերք ու անասնապահական մթերքներ են կորչում, տրվում են գործնական հանձնարարականներ ցուցանիշները բարելավելու համար։ Այդ նպատակով, առաջին հերթին, պրոպագանդում ենք առաջավոր փորձը։ Տընտեսությունների գլխավոր մասնագետներն ավելի հաճախ են լինում ետ մնացող տեղամասերում, ստանձնում յուրատեսակ շեֆություն։ Սովխոզներում ստեղծվել են ցանքի ու մշակության աշխատանքների որակին հսկող հանձնաժողովներ՝ մասնագետների, գյուղական սովետների մշտական հանձնաժողովների անդամների մասնակցությամբ։ Նրանք հետամուտ են լինում նույն պայմաններում բարձր բերքի ապահովման հուսալի հիմքի ստեղծմանը։ Պարենային ծրագրով նախատեսվում է ընթացիկ հնգամյակի վերջին տարում կաթի համախառն արտադրությունը շրջանում հասցնել 11 հազար տոննայի, մսինը՝ 2.500, բրդինը՝ 160 տոննայի, ձվինը՝ 2,6 մլն հատի։ Իսկ դա նշանակում է, որ 1980 թ. համեմատությամբ կապահովվի էական աճ։ Նույն համամասնությամբ մեծանալու են նաև պետական մթերումների ծավալները։

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1982 թ.) պլենումը պարենային ծրագրի իրականացման գործում կարևորեց արդյունաբերական ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունների հնարավորությունների օգտագործումը։ Խնդիր դրվեց, որպեսզի «յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկություն, յուրաքանչյուր կազմակերպություն, որոնք ունակ են վարելու այդպիսի տնտեսություններ... որպես կանոն, ունենան այդպիսիք»։ Մենք լուրջ հետևություն արեցինք կուսակցության Կենտկոմի այդ պահանջից։ Պանրագործարանը, մթերման գրասենյակը, անտառտնտեսությունը, սննդի վերամշակման կոմբինատը, քաղաքի գրասենյակը և այլ ձեռնարկություններ ու հիմնարկություններ զբաղվում են անասնապահությամբ, մշակում կարտոֆիլ ու բանջարեղեն։ Անցած երկու տարում նրանց օժանդակ տնտեսությունները արտադրել են մեծ քանակությամբ միս, բանջարեղեն, կարտոֆիլ և այլ մթերքներ։ Արդյունավետ է գործում հատկապես անտառագործների օժանդակ տնտեսությունը։ Բավական է ասել, որ այն ընթացիկ տարում ստացել է կես միլիոն հատ ձու, նրան բաժին է ընկնում շրջանում արտադրվող ձվի ընդհանուր քանակի մեկ քառորդից ավելին։ Հաշվի առնելով այդ ձեռնարկությունների ու կազմակերպությունների պահանջը, ագրոարդյունաբերական միավորման խորհուրդը նրանց հատկացրել է համապատասխան հողատարածություն և օժանդակ շենքեր։

Ամեն կերպ խրախուսվում է նաև անհատական օժանդակ տնտեսությունների զարգացումը։ Անցած երկու տարում բտման նպատակով նրանց հատկացվել են մեծ քանակությամբ խոճկորներ և կեր։ Սակայն այդ գործում դեռևս շատ թերացումներ կան։ Գյուղական ընտանիքների կեսից ավելին կով չի պահում, մինչդեռ կուսակցությունը խնդիր է դնում, որ գյուղական ամեն մի աշխատավորական ընտանիք կով ունենա։ Լուծված չեն նաև անձնական օժանդակ տնտեսություններում պահվող անասունները կերով ապահովելու, տավարի էգ մատղաշ վաճառելու հարցերը։

Կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների և ագրոարդյունաբերական միավորման խորհրդի հոգածության հիմնական խնդիրներից մեկը

գյուղատնտեսության մեջ կոլեկտիվ կապալի արմատավորումն է։ Պետական տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները Սիսիանի շրջանի Բռնակոթի պետական տնտեսությունում ուսումնասիրել են այդ մեթոդով աշխատող կոլեկտիվների փորձը։ Մեր շրջանում առաջինն այն ներդրվեց Սարուխանի սովխոզում։ Սովխոզի կուսկոմիտեն անցած տարվա մարտին տեղի ունեցած իր նիստում քննարկեց այդ հարցը և որոշեց դաշտավարական №№ 5 և 6 բրիգադների բազայի վրա ստեղծել երկու մեքենայացված կոմպլեքսային օղակ (օղակավարներ՝ Գ. Հովհաննիսյան և Կ. Մադոյան), որոնցում ներգրավվեցին չորսական մեխանիզատոր և ձեռքի աշխատանք կատարող երկուական բանվոր։ Դրանցից յուրաքանչյուրին տրվեցին 20 հեկտար կարտոֆիլ, 48 հեկտար հացահատիկ, 116 հեկտար կերային կուլտուրաներ մշակելու և որոշակի քանակի բերք ստանալու առաջադրանքներ, ինչպես նաև հատկացվեցին գյուղատնտեսական անհրաժեշտ մեքենաներ ու գործիքներ։ Նրանց համար նախատեսվել են նյութական ռեսուրսների ծախսերի լիմիտ, խրախուսման միջոցներ։ Այդ օղակները ագրոտեխնիկական սեղմ ժամկետներում և բարձր որակով կատարեցին գարնանացանը, ցանքադաշտերի պարարտացման ու մշակության աշխատանքները, ավարտեցին բերքահավաքը և տարվա ընթացքում քանիցս հաղթող ճանաչվեցին սոցմրցությունում, պարգևատրվեցին տնտեսության խրախուսման ֆոնդի հաշվին։

Ակնհայտ են այդ առաջավոր ձևի առավելությունները. զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական մեքենաների օգտագործման արդյունավետությունը, կրճատվել են աշխատանքային և նյութական ծախսումները, էապես աճել է աշխատանքի արտադրողականությունը, իջել արտադրանքի ինքնարժեքը, բարձրացել մեխանիզատորների շահագրգռությունը։ Բարձր են և վերջնարդյունքները։ Դաշտավարական մյուս բրիգադների համեմատությամբ նրանք 10—15 տոկոսով ավելի բերք ստացան։

Գոհացուցիչ են նաև Կամոյի սովխոզ-տեխնիկումի կոմունիստներ Մկրտիչ Մոմչյանի և Յուրիկ Գրիգորյանի ղեկավարած կապալային օղակների արդյունքները։ Կոլեկտիվ կապալի մեթոդը լայն կիրառություն է ստացել Կարմիրի սովխոզում։ Այստեղ գործում է բանջարեղեն մշակող չորս օղակ՝ բաղկացած 20-ական մարդուց։ Նրանց տրված է հեկտարից 300 ցենտներ բերք ստանալու առաջադրանք, մինչդեռ Վրույր Խաչիկյանի ղեկավարած ընտանեկան օղակը, օրինակ, ամեն մի հեկտարից հավաքել է 450 ցենտներ։ Աշխատավորական այս ընտանիքի բոլոր անդամները ներգրավված են հանրային արտադրության մեջ։

Ավարտվեց և ընթացիկ հնգամյակի առանցքային տարին։ Շրջանի տնտեսությունները, ամբողջությամբ վերցրած, կատարեցին ու գերակատարեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի պետական պլանները (բացառությամբ ծխախոտի, որի ցանքերի մի մասը ցրտահարվեց)։ Ընդորում նախորդ տարվա համեմատությամբ զգալի աճ ապահովվեց։

Շրջանի կուսկազմակերպության և աշխատավորական կոլեկտիվների համար գործողության ուղեցույց դարձավ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի արտահայտած այն միտքը, որ պարենային ծրագրի կատարումը մեկ տարվա գործ չէ, սակայն այն չի էլ կարելի հետաձգել։ Ընթացիկ հնգամյակի անցած երեք տարիների արդյունքները վկայում են, որ մենք որոշակի քայլեր ենք արել շրջանի պարենային ծրագրի իրականացման ճանապարհին և պատվով կլուծենք տասնմեկերորդ հնգամյակում մեր առջև ծառացած խնդիրները։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1983 թ.) պլենումի որոշումները, պլենումում ընկեր Անդրոպովի ելույթի դրույթները նոր լիցք են հաղորդում մեր մարդկանց աշխատանքային եռանդին, նպաստում կուսկազմակերպությունների ակտիվության բարձրացմանը։ Կուսշրջկոմը ավելի գործուն աջակցություն ցույց կտա ագրոարդյունաբերական միավորմանն ու նրա խորհրդին, գործի կդնի բոլոր միջոցները պարենային ծրագիրը բոլոր ցուցանիշներով կատարելու համար։

---

# ԲՆԱԿԱՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽԹԱՆՈՒՄԸ

**Ռ. ԻՍԱԽԱՆՈՎ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ արագացման և արտադրության զարգացման համար բնական ռեսուրսների հսկայական չափերի հասնող օգտագործման պայմաններում հույժ կարևոր է բնօգտագործման ստրատեգիայի մշակումը։

Հասարակական արտադրության զարգացմանը զուգընթաց աստիճանաբար նվազում է բնության տարերային ուժերի ազդեցությունը մարդկանց կենսագործունեության վրա։ Սակայն, որքան ավելի է խորանում հասարակության փոխգործողությունը բնության հետ, այնքան բարդանում է փոխադարձ կապը նրանց միջև։

Այսօր բնօգտագործման ռացիոնալացման պրոբլեմն այնքան է սրվել, որ առանց դրա մի շարք խնդիրների արմատական լուծման հնարավոր չէ ապահովել հասարակության հետագա դինամիկ զարգացումը։ Բնական ռեսուրսների օգտագործման ասպարեզում օրենսդրական և վարչական միջոցների հետ մեկտեղ մեծ դեր ունի տնտեսական գործոնը։ Հենց այդ տեսանկյունով էլ պետք է իրականացնել և կիրառել բնական ռեսուրսների տնտեսական գնահատումը։ Պրակտիկայում բազմաթիվ են բնական հարստությունների շռայլման փաստերը, որոնք մեծ մասամբ բացատրվում են տնտեսական անհրաժեշտ խթանների բացակայությամբ։

Շրջակա միջավայրի անտրոպոգեն ծանրաբեռնվածության արդի մասշտաբներն այնքան մեծ են, որ բնությունն արդեն ի վիճակի չէ վերականգնել էկոլոգիական խախտված հավասարակշռությունը, վերստեղծել իրենից կորցած բարիքները։ Այդ անցանկալի հետևանքները հաղթահարելու ու կանխելու, ինչպես նաև բնական ռեսուրսների վերարտադրությունն ապահովելու համար անհրաժեշտ է ձեռնարկել բոլոր առկա միջոցները։ Էկոլոգիական պրոցեսները, ընթանալով մարդուց անկախ, արդի պայմաններում դառնում են հասարակության գիտակցական ազդեցության օբյեկտ։ Այդ պատճառով այժմ գիտության բազմաթիվ պրոբլեմների մեջ առանձնակի սրվել է բնօգտագործման ռացիոնալացման խնդիրը։ Քանի որ այս խնդիրն ընդգրկում է բազում ասպեկտներ, դրանով զբաղվում է գիտությունների մի ողջ համակարգ՝ սոցիոլոգիայից ու փիլիսոփայությունից մինչև կենսաբանությունը, բժշկությունը և տեխնիկան։ Այստեղ առավել կարևորվում է տնտեսական ասպեկտը՝ հասարակության և շրջակա միջավայրի փոխազդեցությունն ու փոխկապվածությունը։ Տնտեսագիտության առջև ծառանում է շատ բարդ խնդիր՝ հասարակական զարգացման բոլոր այլ երևույթների հետ մեկտեղ մշակել բնօգտագործման պլանավորման հիմունքները։

Բնօգտագործման պլանավորումն ունի մի շարք առանձնահատկություններ, որոնք պայմանավորված են տվյալ միջավայրի բնական երևույթների փոխկապվածությամբ և ռեսուրսների շատ տեսակների անվերարտադրելիությամբ։ Այստեղ կարևորը ոչ միայն տնտեսական, այլև բնական երևույթներն ու պրոցեսները պլանավորման օբյեկտ համարելն է, նկատի ունենալով, որ

բնության մեջ հասարակական աշխատանքի կիրառումը, տարերային գործող ուժերի համեմատությամբ, աննշան է։

Բնօգտագործումը հասարակության ու բնության փոխազդեցության բազմազան, պատմականորեն զարգացող պրոցես է, որն ամենից առաջ դրսևորվում է արտադրության մեջ։ Այստեղ մարդը, արտաքին միջավայրի հետ գտնվելով փոխազդեցության մեջ, ղեկավարվում է ինչպես բնական, այնպես էլ հասարակական օրենքներով։ Նկատենք, որ ինքը բնությունը «պահպանողական է», և շրջակա միջավայրում փոփոխությունները կատարվում են ավելի դանդաղ ու մարդու դերն այստեղ որակապես այլ է, քան հասարակական կյանքում։

Բնական աշխարհի ինքնակառավարման հսկայական պոտենցիալի պայմաններում մարդկային գործունեության հետևանքով առաջացած բնօգտագործման բացասական երևույթներն ու անհամամասնությունները ի հայտ են գալիս ոչ միանգամից, այլ տարիների ընթացքում։ Մշակված միջոցառումները հաճախ թանկարժեք են, արագորեն հնանում են, իսկ երբեմն էլ քիչ արդյունավետ։ Բնօգտագործման պլանավորումն ընդգրկում է նաև ավանդական ռեսուրսների խնայողաբար սպառման, դրանց պահպանման ու բնական սկզբնական հատկությունների վերականգնման հարցերի լուծումը՝ ապահովելով բնական կենսամիջավայրի վերարտադրությունը։

Տնտեսագիտական հետազոտությունների առաջնային խնդիրներից է բնօգտագործման քաղաքատնտեսական այնպիսի մեխանիզմի գիտական հիմունքների մշակումը, որի գործունեությունը շրջակա բնական միջավայրի վրա պետք է ուղղված լինի բացահայտելու ու կանխելու գերնորմատիվային ծանրաբեռնվածությունը։

ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. հուլիսյան պլենումում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցման մեջ տեղին է նշվում, որ «...մեր տնտեսագետներն առայժմ անբավարար արդյունավետությամբ են մշակում ժողովրդական տնտեսության պլանավորման հետագա կատարելագործման, էկոնոմիկայի կառավարման տերիտորիալ և ճյուղային սկզբունքի ճիշտ զուգորդման, հանրային արտադրության ինտենսիվացման ներգործուն տնտեսական լծակների կիրառման, ռեսուրսախնայողական վերարտադրության ապահովման հարցերը, հանրապետության յուրահատկությունից ելնելով՝ բնօգտագործման ռացիոնալացման գիտական հիմունքները»։

Հասարակության ու բնության միջև անընդմեջ բարդացող կապերը պայմանավորում են տնտեսագիտական մի շարք տեսակետների համակարգի վերանայումը՝ մարդու և բնության փոխհարաբերությունների կատարելագործման առումով։

Հայտնի է, որ մարդը ցանկացած արտադրական ֆունկցիա իրագործում է որպես փոխազդեցություն բնության հետ, բնական նյութերը հարմարեցնում իր պահանջներին։ Բնությունը մարդու գոյության պայմանն է, նրա աշխատանքի առարկան և, վերջապես, տարածական բազիս արտադրական գործունեության համար։ Չնայած դրանցից յուրաքանչյուրը նյութական բարիքների, և ոչ միայն նյութական, աղբյուր է, դրանց միջև գոյություն ունեն որոշակի հակասություններ։ Վերջիններս դրսևորվում են արտադրական ծախսերի տարբեր արդյունավետության և արտադրապրոցեսների արդյունքում էկոլոգիական իրավիճակի, այսինքն՝ մարդու կենսագործունեության պայմանների փոփոխման մեջ։ Հետևաբար, բնական գործոնի լավագույն օգտագործումը նշանակում է բնական ռեսուրսներով հասարակության պահանջների առավելագույն բավարարման ու տարածական բազիսում արտադրական գործունեության համար էկոհամակարգի պահպանման և զարգացման զուգորդում, որը դիտվում է որպես ռացիոնալ բնօգտագործում։

Պատմականորեն բնական գործոնը միարժեք չի դրսևորվում։ Եթե մարդկային հասարակության զարգացման վաղ փուլերում հիմնական դերը պատկանում էր շրջակա միջավայրին, ապա արդի պայմաններում առաջնային նշանակություն ունի բնական ռեսուրսների խելամիտ օգտագործման ու շրջակա միջավայրի պահպանման խնդիրը։ Դա տնտեսագիտությանն առաջադրում է



ընդլայնված վերարտադրության և բնական բարիքների վերստեղծման պրոբլեմների խորացված մշակման անհրաժեշտությունը։ Բնական ռեսուրսների վերարտադրությունը սոցիալական պրոցես է, որը գործում է հասարակական հարաբերությունների համակարգի շրջանակներում։ Հասարակության արդի արտադրաուժերն ի վիճակի են բնության մեջ կատարելու այնպիսի վերափոխումներ, որոնք իրենց հետևանքներով համադրվում են երկրաբանական ուժերի գործողության հետ։ Բնության վրա անտրոպոգեն ծանրաբեռնվածության աճն ավելի ու ավելի է սահմանափակում նրա «ինքնավերարտադրության» հնարավորությունները։

Բնության վերարտադրությունն ընդգրկում է բնության վերականգնումը որպես աշխատանքի առարկայի և միջոցի աղբյուր (հողերի ռեկուլտիվացում, անտառատնկում, ձկնաբուծություն և այլն), որպես տարածական բազիսի (երկրի մակերեսի վերականգնում, որոնք խախտվում են օգտակար հանածոների հանույթի հետևանքով) և, վերջապես՝ որպես մարդու բնակեցման միջավայրի պահպանում (մթնոլորտի, ջրամբարների մաքրում և այլն)։

Հասարակական վերարտադրության ոլորտում բնության վերարտադրության ընդգրկման անհրաժեշտությունը պայմանավորված է այն հանրահայտ ճշմարտությամբ, որ բնությունը հասարակության զարգացման ելակետային հիմքն է։ Հետևաբար, հասարակության զարգացումը պետք է շրջակա միջավայրի ռեսուրսների վիճակի հետ գտնվի խիստ վերահսկվող կապերի մեջ։

Էկոլոգիական միջավայրի խախտման երևույթները հնարավոր է կանխագուշակել ու կանխել մի այնպիսի կարևոր տնտեսական չափանիշի միջոցով, ինչպիսին է արտադրության բնական գործոնների գնահատումը։ Նման գնահատման էությունը բնական ռեսուրսների օգտագործման արդյունավետության և այն որոշակի ծախսերի բացահայտումն է, որոնք պետք է հաշվի առնվեն գնագոյացման մեջ։ Տեսականորեն այդ սկզբունքը առարկությունների տեղիք չի տալիս, սակայն տնտեսավարման պրակտիկայում և, առաջին հերթին, գնագոյացման մեջ այն արտացոլված չէ։

Արտադրության բնական գործոնների համակարգում տնտհաշվարկային հարաբերությունները կատարելագործելիս կարևոր է, արտադրական ֆոնդերի օրինակով, նախատեսել նաև բնական ռեսուրսների արժեքային գնահատում։ Այդ ռեսուրսների տնտեսական գնահատումը և դրա ածանցյալի՝ օգտագործվող ռեսուրսների վճարելիությունը, բնօգտագործման նկատմամբ առավել խիստ վերահսկողություն սահմանելու միջոց է։ Օգտագործված բնական ռեսուրսների վճարը կարելի է սահմանել շրջակա միջավայրի վերարտադրության ու պահպանման համար փաստորեն կատարված և պլանավորվող ծախսերի հատուցման նպատակով։

Բնական ռեսուրսների անվճար օգտագործման գործող կարգն անտեսում է դրանց ռացիոնալ օգտագործման և պահպանման անհրաժեշտությունը։ Այսպես, օրինակ, չնայած հանրապետության ծայրահեղ սակավահողությանը, մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառներով գյուղատնտեսական շրջանառությունից տարեկան օտարվում են բավականին հողային տարածություններ։ Օգտագործվող բնական ռեսուրսի, տվյալ դեպքում՝ հողի համար վճարելիության սկզբունքի կիրառումը խիստ սահմանափակում է գյուղատնտեսական շրջանառությունից հողերի օտարումը։ Այսպես, վճարի դիֆերենցման սկզբունքով, ըստ հողային տեսակների, Արարատյան դաշտի մեկ հեկտար դուրս հանված, ոռոգվող հողերը կարելի է գնահատել 75—150 հազար ռուբլի։

Մինչև այժմ տնտեսությունները, ազատված լինելով խոշոր ջրատնտեսական օբյեկտների և մելիորատիվ համակարգերի շինարարության ֆինանսավորումից, ոչ մի կոպեկ չեն վճարում նաև ռեսուրսի օգտագործման համար։ Այն հատուցվում է պետական բյուջեի հաշվին, և արտադրանքի ինքնարժեքում արտացոլվում են միայն ջրատնտեսական կառույցների շահագործման ուղղակի ծախսերը։

Ջրօգտագործման կարգավորման տնտեսական մեխանիզմի բացակայության հետևանքով ոռոգվող համակարգի օգտակար գործողության գործակիցը ամենացածրն է, որը մեր հանրապետությունում չի անցնում 0,5—0,57-ից։

Ոռոգվող ջրի օգտագործման նկատմամբ ոչ հաշվենկատ վերաբերմունքը հանգեցնում է ոչ միայն ջրի ծախսերի նկատելի ավելացման, այլև գրունտային ջրերի բարձրացման, հողերի ճահճացման և աղակալման հետևանքով որոշակի հողատարածությունների տնտեսական շրջապտույտից դուրս գալուն։ Բնական ռեսուրսների ոչ ռացիոնալ օգտագործման տվյալ գործոնների նշանակությունն առավել սրվում է, եթե հաշվի առնենք նաև, որ մեր հանրապետությունը սակավահող է և ունի սուղ ջրային հաշվեկշիռ։

Տնտեսագիտական գրականության մեջ հաճախ են անդրադառնում բնական ռեսուրսների օգտագործման վճարելիության սկզբունքի կիրառման անհրաժեշտությանը։ Եթե հողային և հանքահումքային ռեսուրսների համար ընդունելի է դիֆերենցիալ ռենտան, ապա այլ մոտեցում են պահանջում ջրային ռեսուրսները, որոնց գնահատումը կարող է ներկայացվել երկու մասով՝ ռենտային ու ծախսային։ Սակայն, քանի որ ջրային ռեսուրսների ռենտային մասի գնահատումն առայժմ հնարավոր չէ, այն կարելի է փոխարինել ջրի գնահատմամբ։

Ջրի վճարի սահմանումը պայմանավորված է տեսական ու գործնական մի շարք հարցերի լուծմամբ։ Դրանց մեջ կարևորը 1 խմ ջրի վճարի չափի հիմնավորումը և դրա տարբերակումն է ըստ շրջանների ու ջրային ռեսուրսներով ապահովվածության աստիճանի, ինչպես նաև վճարի տարբերակումն ըստ ջրսպառողների։

Նպատակահարմար է ջրային ռեսուրսները գնահատելիս հաշվի առնել տվյալ շրջանում ջրսպառման հետագա զարգացման (մաքրում, ջրատնտեսական օբյեկտների կառուցում, այլ ավազաններից ջրի փոխադրում) համապատասխան փոխհատուցումն ու բյուջետային եկամուտների որոշակի ռեզերվի ստեղծումը։ Մասնագետների հաշվարկներով, ըստ ջրամատակարարման, ջրատնտեսական նշանակության հիմնական ֆոնդերի ամորտիզացիոն հատկացումների, ջրի կորստի փոխհատուցման և ջրատնտեսական ձեռնարկությունների շահույթի, ջրի 1 խմ՝ միջին գինը կարելի է սահմանել 4—5 կոպեկ։ Ջրի գնահատման առաջարկվող մակարդակը կարող է փոփոխվել ըստ ջրի որակի (խմելու ջուրը պետք է գնահատվի ավելի բարձր)։ Ուսումնասիրելով էկոլոգիական համակարգի առանձին բաղադրիչներ, չպետք է մոռանալ, որ դրանց գոյությունը հնարավոր է միայն փոխկապակցության մեջ։ Բաղադրիչների միջև եղած հարաբերակցությունների խախտումը կարող է առաջ բերել անդառնալի պրոցեսներ։ Սևանա լճի ջրօգտագործման պրոբլեմը չէր կարելի դիտել մեկուսի, շրջակա միջավայրի ընդհանուր համակարգից դուրս։ Այստեղ անտեսվել են բնօգտագործման տնտեսական լծակները, որի հետևանքով խախտվել է նեղ ճյուղային և հասարակական շահերի զուգակցումը։

Լճի ջրային ռեսուրսների կեսդարյա օգտագործումն իրոք մեծապես նպաստեց հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացմանը, սակայն Սևանի ռեսուրսների օգտագործման հարցում անհրաժեշտ հաշվենկատություն չցուցաբերվեց։

Այժմ խիստ անհրաժեշտ է հաշվի առնել Սևանա լճի սոցիալ-տնտեսական բնութագիրը՝ Սևանը որպես մաքուր, քաղցրահամ ջրի արտադրության բնական ֆաբրիկա, հանրապետության միակ կենտրոնացված խոշոր ջրամատակարարման աղբյուր, որպես տեղական, միութենական և միջազգային նշանակության տուրիզմի ինդուստրիայի զարգացման բազա, ձկնային թանկարժեք տեսակների վերարտադրության բարձր լեռնային հազվագյուտ ջրավազան, իր բուսական և կենդանական էնդեմիկ ձևերով մեր երկրում որպես գենետիկական ֆոնդի տարրերի պահպանման գոտի։

Թվարկած բոլոր արժանիքներից հասարակությունն ընտրել է միայն լճի ջրային ռեսուրսների ինտենսիվ օգտագործման ուղին, դրանով իսկ խախտելով նրա մյուս ռեսուրսների զարգացման համաչափությունը։ Բնական ռեսուրսների տնտեսական գնահատումն ու վճարելիության սկզբունքի արդյունավետ կիրառումը խթան կհանդիսանան դրանց ռացիոնալ օգտագործման և շրջակա միջավայրի պահպանման համար։ Այստեղ տեղին է հիշատակել ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումում ընկեր Յու. Վ. Անդրոպովի այն խոսքերը, որ այժմ նյութական ռեսուրսների խնայողության հարցը պետք է դրվի նորովի։

---

# ՀԱՆՔԱՅԻՆ ՋՐԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

**Ռ. ՍԱՖԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու
**Ա. ՄԱՐԿՈՍՅԱՆ**

ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԻ բարձրացումը եղել և մնում է կուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում։ Ժողովրդական տնտեսության զարգացման ելակետը մեր ծրագրային պահանջն է՝ ամեն ինչ հանուն մարդու, ամեն ինչ մարդու բարօրության համար։

Կենսամակարդակի բարձրացման կարևոր խնդիրներից մեկը ազգաբնակչության առողջության պահպանման և կյանքի տևողության երկարացման ապահովումն է։ Նշված խնդրի լուծմանն է ծառայում նաև հանքային ջրերի արտադրությունը։ Հանքային ջրերի շատ տեսակներ բուժամիջոցից բացի, միաժամանակ, հանդիսանում են ծարավը հագեցնող սեղանի ըմպելիք (դրանք բուժիչ-սեղանի հանքային ջրերն են)։ Այդ ջրերի մի մասը չունի բուժիչ հատկություն և օգտագործվում է միայն ծարավը հագեցնելու համար (սեղանի հանքային ջրեր)։

Սովետական Միությունում 1980 թ. շշերը լցված հանքային ջրերի 4 տոկոսը եղել է բուժիչ, 63 տոկոսը՝ բուժիչ-սեղանի, 33 տոկոսը՝ սեղանի։ Հանքային ջրերի թվարկած տեսակներից արտադրության համար առավել նպատակահարմար են բուժիչ-սեղանի հանքային ջրերը, քանի որ դրանք միաժամանակ օգտագործվում են երկու նպատակով՝ բուժելու և ծարավը հագեցնելու։ Այդ պատճառով էլ տասնմեկերորդ հնգամյա պլանով նախատեսված է 1985 թվականին բուժիչ-սեղանի հանքային ջրերի տեսակարար կշիռն ընդհանուր լցման մեջ ավելացնել և հասցնել 71,8, իսկ սեղանի և բուժիչ ջրերինը՝ համապատասխանաբար՝ 24,6 և 3,6 տոկոսի։

Թեև մեր երկրի ընդերքը հարուստ է հանքային ջրերով, սակայն դրանց օգտագործմանը, որպես բուժական միջոցներ, երկար ժամանակ պատշաճ ուշադրություն չի հատկացվել։ Նախահեղափոխական Ռուսաստանում կար հանքային ջրի լցման 4 գործարան (Կիսլովոդսկ, Եսենտուկի, Ժելեզնովոդսկ, Բորժոմ), որոնց տարեկան արտադրանքը 1914 թվականին կազմել է շուրջ 18 մլն շիշ։ Հանքային ջրերից օգտվում էին միայն բնակչության ունևոր խավերը, քանի որ դրանք բավականին թանկ էին։

Այժմ հանքային ջրերի լցման գործարաններ և արտադրամասեր կան բոլոր միութենական հանրապետություններում, որոնց թողարկած արտադրանքը 1982 թվականին հասավ 2.236,5 մլն շշի, որը 1940 թվականի թողարկած արտադրանքը գերազանցեց 25 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում հանքային ջրերի լցումը Հայկական ՍՍՀ-ում 3,8 մլն շշից հասավ 280,85 միլիոնի, կամ աճը կազմեց մոտ 74 անգամ։ Միութենական միջինից աճի արագ տեմպերը հնարավորություն ընձեռեցին ամբողջ Միության հանքային ջրերի լցման մեջ զգալիորեն բարձրացնելու Հայկական ՍՍՀ բաժինը. 1940 թվականի 4,2-ից 1982 թվականին այն հասավ 12,6 տոկոսի։

Մեր հանրապետությունում հանքային ջրերի լցումը իրականացվում է 12 արտադրական կետերում, որոնցից 10-ը հանքային ջրերի լցման մասնագիտացված գործարաններ են և գտնվում են «Հայաստանի հանքային ջրեր» արտադրամիավորման կազմում։ Մյուս երկուսը հանքային ջրերի լցման արտադրամասեր են։ Վերջիններիս բաժինն ամբողջ լցման ծավալում կազմում է ընդամենը 2—3 տոկոս։ Նշված արտադրամասերից մեկը գտնվում է Կիրովականի գարեջրի գործարանում, որտեղ լցվում է «Լոռի», իսկ մյուսը՝ Երևանի ոչ ոգելից խմիչքների գործարանում, որտեղ լցվում է «Բջնի» հանքաջուրը։

Հայկական ՍՍՀ-ում թողարկվում է 9 անուն («Արզնի», «Ջերմուկ», «Դիլիջան», «Հանքավան», «Սևան», «Լիճք», «Բջնի», «Արարատ», «Լոռի») բուժիչ-սեղանի հանքային ջուր, որոնք բնակչության շրջանում ունեն մեծ պահանջարկ և՛ որպես բուժամիջոց, և՛ որպես սեղանի ըմպելիք։

Հանրապետության հանքային ջրերի լցման մասնագիտացված գործարանների տարեկան ընդհանուր կարողությունները 1983 թ. սկզբին կազմել են 398,7 մլն շիշ, իսկ 1985 թ. պլանով կկազմեն 433 մլն։

Հայկական ՍՍՀ-ն աշխատանքի միութենական բաժանման մեջ մասնագիտացել է հանքային ջրերի արդյունաբերական լցմամբ և Սովետական Միության հանքային ջրերի լցման գլխավոր տնտեսական շրջաններից մեկն է։ Նշենք, որ 1982 թվականին ՍՍՀՄ-ում շշերի մեջ լցված հանքային ջրերի 27,7 տոկոսն արտադրել է Ուկրաինական ՍՍՀ-ն, 20,6 տոկոսը՝ ՌՍՖՍՀ-ն, 15,4 տոկոսը՝ Վրացական ՍՍՀ-ն և 12,6 տոկոսը՝ Հայկական ՍՍՀ-ն։

Չնայած արտադրության արագ ավելացմանը, դեռևս լիովին չի բավարարվում հանքային ջրերի նկատմամբ աճող պահանջարկը թե՛ հանրապետությունում, թե՛ նրա սահմաններից դուրս։ Հյուսիսային Կովկասի՝ սննդի արդյունաբերության ձեռնարկությունների նախագծման պետական ինստիտուտի տվյալներով, որը մշակել է «Սովետական Միությունում հանքային ջրերի լցման ձեռնարկությունների տեղաբաշխման և զարգացման սխեման», հանքային ջրերի նկատմամբ Միության մեկ բնակչի տարեկան պահանջարկը 20 շիշ է, մինչդեռ 1982 թ. արտադրվել է միայն 8,3 շիշ։ Հանքային ջրերի պահանջարկը լիովին չի բավարարվում նաև մեր հանրապետությունում, որտեղ 1981 թ. առևտրական կազմակերպությունների հանքային ջրերի պահանջագրերը կատարվել են միայն 89,2, իսկ 1982 թվականին՝ 74,9 տոկոսով։ Դա հանգեցրեց նրան, որ մեկ բնակչի հաշվով հանքային ջրերի սպառումը 1982 թվականին, 1980 թվականի համեմատությամբ, նվազեց 22,7 տոկոսով։ 1980 թվականի 22 շշի փոխարեն 1982 թվականին հանքային ջրերի սպառումը հանրապետության մեկ բնակչի հաշվով կազմեց 17 շիշ։

Անհրաժեշտ է նաև նշել, որ հանրապետության հանքային ջրերի պահանջը անբավարար է ուսումնասիրված։ Այսօրվա դրությամբ հայտնի չէ, թե ինչպիսին է բնակչության պահանջարկը հանքային ջրերի առանձին տեսակների նկատմամբ։ Հանքային ջրերի շուկան ուսումնասիրելու գործում զգալի աշխատանք ունի կատարելու սպառման առարկաների առևտրի և իրավիճակի ուսումնասիրման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղը։

ՀՍՍՀ-ում վերջին տարիներին հանքային ջրերի սպառման նվազումը և բնակչության պահանջարկից արտադրության ետ մնալը հիմնականում բացատրվում է առկա պաշարների անբավարար օգտագործմամբ, ինչպես և նրանով, որ մեծ է արտահանման բաժինը (1982 թվականին՝ 81,5 տոկոս)։

Ներկայումս հանրապետությունում հաշվվում է ավելի քան 700 հանքաջրի աղբյուր և հորատանցք, որոնց միագումար արտահոսքը (դեբիտ) կազմում է շուրջ 1 խմ/վրկ (տարեկան 31.536 հազար խորանարդ մետր)։ Նշված աղբյուրներից և հորատանցքերից հետախուզված և ուսումնասիրված են 50-ը (ընդհանուր թվի 7,1 տոկոսը), իսկ օգտագործվում են 18-ը (ընդհանուր թվի 2,6 տոկոսը)։ Արդյունաբերական օգտագործման հանքային ջրերի հաստատված պաշարները 1982 թվականին կազմել են 172,6 լ/վրկ, կամ օրական 15 հազար



խմ, այլ կերպ ասած, հանրապետության ամբողջ հանքային ջրերի պաշարների միայն 17,3 տոկոսը։

Հանքային ջրերի արդյունաբերական բնույթի հաստատված պաշարներից օգտագործման բոլոր ուղղություններով (ածխաթթու գազի ստացում, շշերի մեջ հանքային ջրերի լցում և առողջավայրերում հանքաջրերի օգտագործում) 1982 թվականին ծախսվել է 23 լ/վրկ կամ հաստատված պաշարների 13,3 տոկոսը։ Օգտագործվող հանքային ջրի մեջ մեծ է ածխաթթու գազի ստացման համար ծախսվող ջրի բաժինը (հաստատված պաշարների 5,3 տոկոսը օգտագործվել է այդ նպատակով), զգալի է նաև լցման համար օգտագործվող ջրի բաժինը (5,2 տոկոս), իսկ առողջավայրերում ծախսվում է 2,8 տոկոսը։

Հեշտ է նկատել, որ հանրապետության հանքային ջրերի լցման ձեռնարկությունների կարողությունների և հարուստ հանքաջրաբուժական պաշարների միջև գոյություն ունի անհամամասնություն։ Արդյունաբերական լցման այսօրվա արտադրական կարողությունները հնարավորություն են ընձեռում օգտագործելու հանքային ջրերի հաստատված պաշարների միայն փոքր մասը։ Այսպես, 1980 թվականին շշավորվել է հաստատված պաշարների 2,7, 1981 թվականին՝ 2,5, 1982 թվականին՝ 2,6 տոկոսը։ Հաստատված պաշար ունեցող հանքավայրերում նույնպես հանքային ջուրն օգտագործվում է անբավարար։ Ըստ պաշարների՝ «Ջերմուկն» օգտագործվում է 25,3, «Արզնին»՝ 49,7, «Բջնին»՝ 25,7, «Լիճքը»՝ 14,6, «Սևանը»՝ 2,5, «Արարատը»՝ 10,7 տոկոսով։ Հատկապես վատ են օգտագործվում հանրապետության հանքաջրերի ամենամեծ աղբյուրի՝ Հանքավանի պաշարները (վերջինիս բաժին է ընկնում հաստատված պաշարների 25,8 տոկոսը)։ Եվ դա այն դեպքում, երբ «Հանքավանն» ունի եզակի բուժական հատկություններ։ Բերված տվյալները հաստատում են, որ հանքային ջրերի միայն հաստատված պաշարները հնարավորություն են տալիս մի քանի անգամ ընդլայնելու այսօրվա գործող կարողությունները։

ՀՍՍՀ հանքային ջրերի հաստատված պաշարները կազմում են Միության հանքային ջրերի հաստատված պաշարների 27,8 տոկոսը։ Եթե նկատի ունենանք, որ Միության հանքային ջրերի հաստատված պաշարներից (օրական 54 հազար խմ), 8,2 հազար խմ/օր հնարավոր չէ օգտագործել անմատչելի վայրերում գտնվելու և տհաճ համային հատկությունների ու կողմնակի խառնուրդների առկայության պատճառով, ապա ՀՍՍՀ հանքային ջրերի հաստատված պաշարները կկազմեն իրականում օգտագործելի միութենական հաստատված պաշարների ոչ թե 27,8, այլ 32,8 տոկոսը, այն դեպքում, երբ ՀՍՍՀ հանքային ջրերի արտադրանքը 1982 թ. բնեղեն արտահայտությամբ կազմել է Միությունում լցված հանքային ջրերի 12,6 տոկոսը։ Եթե ելնենք թեկուզ հանրապետության և երկրի հանքային ջրերի հաստատված պաշարների հարաբերակցությունից, ապա ՀՍՍՀ-ում հանքային ջրերի արտադրությունը պետք է ավելացնել առնվազն 2,6 անգամ։

Հանքային ջրերի լցման ձեռնարկությունների տեղաբաշխման և զարգացման հանրապետական հեռանկարային սխեմայի համաձայն, 1984—1985 թթ. Երասխ ավանում կառուցվելու է տարեկան 130 մլն շիշ լցնող նոր գործարան, «Ջերմուկ» գործարանի կարողությունները 1985—1986 թթ. նոր շինարարության հաշվին ավելանալու են տարեկան 35 մլն շշով, 1994—1995 թթ. նախատեսվում է Մեղրաձորում վերաբաղավորել «Հանքավան» գործարանը՝ կարողությունը տարեկան 50 մլն շշի հասցնելով, 1985—1986 թթ. կառուցվելու է լցման կայան «Արզնի» ջրի համար՝ դարձյալ տարեկան 50 մլն շիշ կարողությամբ, նույն հզորությամբ լցման կայան նախատեսվում է կառուցել 1991—1992 թթ. «Բջնի» հանքաջրի լցման համար։ Նշված կայաններում հանքաջուրը կլցվի երկաթուղային ցիստեռները, և միայն սպառման շրջաններում՝ շշերի մեջ։

Հեռանկարում նախատեսվում է հանքաջրերի լցումը մեր հանրապետությունում ավելացնել 315 մլն շշով։ Անգամ լցման նման ծավալի դեպքում կօգտագործվի Հայկական ՍՍՀ հանքային ջրերի հաստատված պաշարների հազիվ 7 տոկոսը։ Ասվածից պարզ երևում է, որ նշված սխեման անհրաժեշտ է

*վերանայել արտադրության աճի ավելացման նպատակով։ Վերանայման կարիք է զգում նաև ՀՍՍՀ հանքաջրերի արտահանման քանակը։ Այսպես, սխեմայով նախատեսված է մոտակա տարիներին արտահանել կես, իսկ հեռանկարում տարեկան մեկ միլիոն շիշ «Ջերմուկ»։ Հանքաջրերի լցման հետագա զարգացման կարևոր գործոն կարող են լինել այդ ջրերի արտահանումը և վաճառքը արտաքին շուկայում։*

*Հատկապես այժմ, երբ խմելու ջրով բնակչության պահանջարկի բավարարումը դարձել է համաշխարհային բնույթի խնդիր, և այսօր արդեն մի շարք երկրներ մշակում են այդ խնդրի լուծման ամենատարբեր եղանակներ, առավել մեծանում է մեր հանրապետության՝ թույլ հանքայնացված ջրերի արտահանման նշանակությունը։ Խմելու ջրի պրոբլեմի սրմանը զուգընթաց, համաշխարհային շուկայում նկատվում է հանքաջրերի պահանջարկի աճ։ Այսպես, միայն 1979 թվականին ԱՄՆ-ը Ֆրանսիայից գնել է 39,7 մլն դոլար արժողությամբ 136,9 մլն լիտր հանքաջուր (1 լ հանքային ջուրն արժե 0,29 դոլար)։ 1979 թ. ԱՄՆ-ի հանքաջրի շուկայի 34,5 տոկոսը՝ բնեղեն և 23,6 տոկոսն արժեքային արտահայտությամբ ապահովվել է Ֆրանսիայից այդ արտադրանքի մատակարարումների հաշվին։ Հանքային ջուր ներմուծող երկիր է նաև Կանադան, որը 1975 թ. ներմուծել է 2 մլն կանադական դոլար արժողությամբ հանքաջուր, իսկ 1979 թ.՝ 6,21 մլն։ Հանքային ջրի խոշոր մատակարարներ են Ֆրանսիան, Իտալիան և ԳՖՀ-ն։ Միայն ԳՀՖ-ն 1975—1979 թթ. Կանադա արտահանվող հանքաջուրն ըստ ծավալի ավելացրել է 6, իսկ ըստ արժեքի՝ 9 անգամ։ Կանադա ներմուծվող հանքային ջրի մեկ լիտրի միջին գինը 1979 թ. եղել է 0,56 կանադական դոլար։ Համեմատության համար նշենք, որ Կանադա ներմուծվող ամերիկյան գինու 1 լիտրը արժե 0,81, հունգարականը՝ 1,21 կանադական դոլար։*

*Քանի որ մեր հանրապետության հանքային ջրերն ունեն թույլ հանքայնացում և համային հաճելի հատկություններ, դրանք կարող են լայնորեն օգտագործվել որպես ծարավը հագեցնող զովացուցիչ միջոցներ։ Եթե ոչ մոտակա 5—10 տարիներին, ապա մինչև դարի վերջը բնակչությանը խմելու ջրով ապահովելու պրոբլեմի սրման հետ կմեծանան նաև Հայկական ՍՍՀ-ի հանքային ջրերի արտահանման հնարավորությունները։ Հանքաջրերի արտահանման մեծացմանը նպաստող նախադրյալներից մեկն էլ հանրապետության հարմար աշխարհագրական դիրքն է։ Այն գտնվում է սակավաջուր երկրներից, մասնավորապես Մերձավոր Արևելքից ոչ մեծ հեռավորության վրա։ Նույնիսկ հանքային ջրերի պաշարների մեկ տոկոսի արտահանումը, համաշխարհային շուկայի այսօրվա գնահատումներով, հավասար է 91,4 մլն ամերիկյան կամ 176,6 մլն կանադական դոլարի։*

*Հայկական ՍՍՀ-ում հանքային ջրերի արդյունաբերական լցման տեմպերի արագացմանը նպաստում են մի շարք հանգամանքներ։ Նախ՝ հանքաջրերը պատկանում են վերականգնվող ռեսուրսների թվին, ուստի և դրանց օգտագործումը ոչնչով սահմանափակելի չէ։ Մյուս կարևոր պայմանը հանրապետությունում աշխատանքային ռեսուրսների առկայությունն է։ Հանքային ջրերի արտադրության հետագա զարգացումը կնպաստի աշխատանքային ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործմանը։ Բացի այդ, մեզ մոտ հանքաջրերի աղբյուրները գտնվում են ողջ հանրապետության տարածքում, հատկապես նրա լեռնային ու նախալեռնային շրջաններում, ուստի և տեղերում արդյունաբերական լցման զարգացումը կնպաստի տվյալ վայրում բնակչության ամրակայմանը, իսկ դա բխում է արդյունաբերությունը հիմնականում միջին և փոքր քաղաքներում զարգացնելու կուրսից։*

*Հանքային ջրերի արդյունաբերական լցման աճը կնպաստի ՀՍՍՀ արդյունաբերության զարգացմանը սեփական, իր ընդերքում եղած հումքային բազայի վրա, իսկ նման հանգամանքը չի կարելի անտեսել, քանի որ առանց այն էլ բավականին մեծ է ներմուծման դերը հանրապետության արդյունաբերական արտադրանքի վերջնական արդյունքի ձևավորման մեջ։*

*Ըստ տնտեսագետների հաշվարկների, հանրապետությունում թողարկված*



*արտադրանքի արժեքի յուրաքանչյուր մեկ ռուբլուց 25 կոպեկը ստացվում է մյուս հանրապետություններից ներմուծված նյութերից և հումքից։ Այլ կերպ ասած, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման տեսակետից առավել նպատակահարմար է արտադրությունը կազմակերպել ոչ թե «ներմուծում—արտադրություն—արտահանում», այլ՝ «արտադրություն—արտահանում» սկզբունքով։*

*Եվ, վերջապես, հանքային ջրերի արտադրությունը բարձր շահութաբերություն ունեցող արդյունաբերական ճյուղերից է։ Այսպես, 1982 թ. «Բորժոմ» արտադրամիավորման շահութաբերությունը, ըստ արտադրական ֆոնդերի, կազմել է 44 տոկոս, «Եսենտուկի» № 4 և №17 ջրերինը՝ 78, «Սլավյանովյան» և «Սմիռնովյան» ջրերինը՝ 100,1 տոկոս։ Մինչդեռ մեր հանրապետությունում հանքաջրերի արտադրությունը եղել է վնասաբեր, որի պատճառների բացահայտումը և վերացումն առանձին հետազոտության նյութ են։ Միայն նշենք, որ վնասաբերությունը հիմնականում պայմանավորված է գործող մեծածախ գների թերություններով (դրանք չեն փոխհատուցում լցնող գործարանների արտադրության և սպառողին հասցնելու ծախսերը)։ Հանրապետության հանքային ջրերի մեծածախ գների կատարելագործումը և կատարված ծախսումներին դրանց համապատասխանեցումը հնարավորություն կընձեռեն արտադրությունը դարձնելու շահութաբեր։*

*Հայկական ՍՍՀ-ն Միության ամենախիտ բնակեցված հանրապետություններից է։ Ուստի նրա բնական միջավայրի և բնակչության առողջության պահպանման համար հույժ կարևոր է այնպիսի արտադրությունների ընդլայնումը, որոնք անվնաս են միջավայրի աղտոտման տեսակետից։ Այդպիսի արտադրություններից մեկն էլ հանքային ջրերի արդյունաբերական լցումն է. ամենևին էլ պատահական չէ, որ երկրում հանքաջրերի լցման գործարանների գերակշռող մասը կառուցված է առողջարաններում և առողջավայրերում։*

*Այս ամենից հետևում է, որ Հայկական ՍՍՀ-ն ունի բոլոր նախադրյալները հանքային ջրերի արտադրությունն արագ տեմպերով զարգացնելու, ժողովրդական տնտեսության մեջ նրա տեսակարար կշիռը մեծացնելու համար։*

---

# ՄՇՏԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

**Լ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**
ժողովրդական դեպուտատների Աբովյանի
քաղսովետի գործկոմի նախագահ

*Աբովյանը մեր հանրապետության ամենաերիտասարդ քաղաքներից է։ Ու թեև այն ընդամենը երկու տասնամյակի կենսագրություն ունի, բայց մեծ վերելք է ապրել և շարունակում է իր անշեղ առաջընթացը։ Այսօր քաղաքում գործում են տասնյակ արդյունաբերական ձեռնարկություններ, կրթամշակութային ու առողջապահական օջախներ, բնակչության կենցաղային ու առևտրի սպասարկման բազմազան օբյեկտներ։ Ամենուրեք հառնել են բարձրահարկ բնակելի և հասարակական բարետես շենքեր, բացվել լայնահուն պողոտաներ ու փողոցներ։ Այսօրվա Աբովյանի տարածքում անհիշելի ժամանակներից ծվարած երբեմնի Էլար անունով գյուղակի գետնափոր, երդիկավոր տների, ծուռումուռ, ցեխոտ «փողոցների» հետքն անգամ չի մնացել։ Քաղաքը շարունակում է աջ ու ձախ փռել իր թևերը, օր-օրի զարգանալ, կերպարանափոխվել ու գեղեցկանալ, տարեցտարի աճում են քաղաքի զարգացման նպատակով հատկացվող միջոցները։*

*Բնականաբար, այս ամենի հետ մեծանում են նաև ժողովրդական դեպուտատների քաղաքային սովետի և նրա գործկոմի հոգսերը, հարկ է լինում լուծել քաղաքաշինության, տնտեսական ու սոցիալական զարգացմանն առնչվող բազմաբնույթ հարցեր, հաղթահարել շատ դժվարություններ։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, սովետների գործունեության մեջ հանդես են եկել հետաքրքրական նոր կողմեր։ «Չթուլացնելով ուշադրությունը տեղական տնտեսության բնակչության սպասարկման հարցերի նկատմամբ,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— նրանք ավելի ու ավելի մեծ ավանդ են ներդնում տնտեսական և սոցիալական զարգացման կոմպլեքսային բնույթի ապահովման մեջ։ Սովետներն ավելի ու ավելի ակտիվորեն են կոորդինացնում ու վերահսկում իրենց տերիտորիաներում գտնվող ձեռնարկությունների ու կազմակերպությունների աշխատանքը» (*ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 105)։*

*Կուսակցությունը, ըստ ամենայնի պաշտպանելով տեղական սովետների գործունեության նման ուղղվածությունը, միաժամանակ խնդիր է դնում սովետի յուրաքանչյուր նստաշրջան, մշտական հանձնաժողովի յուրաքանչյուր նիստ վերածել մարդկանց իսկական խորհրդի, առավել ճիշտ լուծումների որոնման միջոցի։*

*Ելակետ ունենալով ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումներն ու պահանջները՝ ժողովրդական դեպուտատների Աբովյանի քաղաքային սովետի գործկոմն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում քաղաքի հետագա զարգացմանն առնչվող նպատակային, կոմպլեքսային ծրագրերի մշակմանն ու իրականացմանը, քաղաքային տնտեսության խնդիրների լուծմանը։ Մենք ջանում ենք ըստ ամենայնի զարգացնել բնակչության սպասարկման ոլորտը, արմատապես բարելավել նրա կենցաղը, հանգիստը, բժշկական օգնությունը, կրթության գործը, բարձրացնել մարդկանց հասարակական-քաղաքական ակտիվությունը, ամրապնդել սոցիալիստական ապրելակերպը և այլն։ Բազմաբնույթ այդ գործունեության ընթացքում մեզ զորավիգ և նեցուկ են քաղսովետի մշտական հանձնաժողովները։ Մշտական հանձնաժողովների կանոնադրության մեջ ասվում է, որ դրանք նախապատրաստում են սովետի նստաշրջանների վերապահված հարցերի նախնական քննարկումը, աջակցում են սովետի որոշումների կենսագործմանը, վերահսկում պետական մարմինների, ձեռնարկությունների, հիմնարկությունների և կազմակերպությունների գործունեությունը։*

*Իրենց այդ կարևոր դերը ճիշտ են ընկալում և կատարում մեր քաղսովետի մշտական հանձնաժողովները, որոնց թիվը հասնում է 12-ի։ Նրանց գործունեությունն սկսվում է քաղսովետի հեռանկարային աշխատանքի պլանավորումից։ Այդ պլանը մշակվում է տվյալ ու գալիք տարիների համար և ներառում մշտական հանձնաժողովների, գործադիր կոմիտեի, նրա բաժինների գործունեության հիմնական ուղղությունները։ Քաղսովետի գործկոմը ամեն կերպ օգնում է մշտական հանձնաժողովներին՝ իրենց ուժերը նպատակամղելու տնտեսական և սոցիալ-կուլտուրական կարևոր խնդիրների իրականացմանը, մեծապես նպաստում նրանց աշխատանքի որակի բարձրացմանը։*

*Աբովյանը արդյունաբերական խոշոր կենտրոն է։ Տարեցտարի երևան են գալիս նոր ձեռնարկություններ, աճում են գործողների կարողությունները։ Անցած տարի, 1980 թ. համեմատությամբ, թողարկվող արտադրանքի ծավալը մեծացավ 10 միլիոն ռուբլով։ Քաղաքի արտադրանքը առաքվում է Սովետական Միության հարյուրավոր հասցեներով և արտասահմանյան մի շարք երկրներ։ Այստեղից էլ՝ քաղսովետի գործկոմի առջև ծառացած խնդիրների բարդությունը և դրանց լուծման գործում արդյունաբերության մշտական հանձնաժողովի օգնության կարևորությունը։ Արդյունաբերական ձեռնարկությունների հոգսերը դառնում են նաև մերը, քաղսովետի գործկոմն ու արդյունաբերության մշտական հանձնաժողովը ձգտում են օգնել կոլեկտիվների գործերի բարելավմանը։ Ահա կոնկրետ մի օրինակ։ Գարեջրի գործարանը, որը քաղաքի խոշոր ձեռնարկություններից է, աշխատում էր անհամաչափ, թերակատարում էր պետական պլանները։ Արդյունաբերության մշտական հանձնաժողովը, որի նախագահն է կենսաքիմիական պատրաստուկների գործարանի բանվորուհի Ռիմա Վարդանյանը, ուսումնասիրեց հարցը և անհրաժեշտ համարեց գործարանի ղեկավարության հաշվետվությունը լսել քաղսովետի նստաշրջանում։ Սովետը հաշվետվության գործարար քննարկումից հետո, իր լիազորությունների սահմաններում միջոցառումներ մշակեց ձեռնարկության նորմալ աշխատանքի խոչընդոտները վերացնելու, արտադրության արդյունավետությունն ու արտադրանքի որակը բարձրացնելու համար։ Որոշմամբ նախատեսված ժամկետներում լուծվեցին գործարան տանող ճանապարհի կառուցման, ավտոբուսի նոր երթուղի բացելու, բնակշինարարության կոոպերատիվ կազմակերպելու, կոլեկտիվը բարձրորակ կադրերով ապահովելու և այլ հարցեր։*

*Եվ ահա, երբ 1983 թ. փետրվարին արդյունաբերության հանձնաժողովի նախաձեռնությամբ քննարկեցինք գարեջրի գործարանում և փայտամշակման կոմբինատում պլանների կատարման վիճակը, պարզվեց, որ գործարանը կատարել է 1982 թ. պլանները, արտադրամասերում գործերը լավ են, կարգապահությունը՝ նորմալ, միայն բարվոք չէ սանիտարական վիճակը, որոշ բանվորներ աշխատում են հնամաշ արտահագուստով։ Մինչդեռ փայտամշակման կոմբինատը նախորդ տարում 216 հազար ռուբլու պակաս արտադրանք էր թողարկել, թերակատարել էր նաև իրացման, շահութաբերության, հիմնական արտադրատեսակների թողարկման պլանները, պետական որականիշով արտադրանք չուներ։ Պատճառն այն է, որ ձեռնարկությունը ժամանակին չի ապահով-*

վում համապատասխան հումքով ու նյութերով և անհրաժեշտ կարգուկանոն չի սահմանված արտադրական օղակներում։

Արդյունաբերության հանձնաժողովի նախաձեռնությամբ հարցը մտցվեց քաղսովետի գործկոմի քննարկմանը։ Գործկոմը դատապարտեց փայտամշակման կոմբինատի դիրեկտոր Գ. Սարգսյանի անպատասխանատու վերաբերմունքը պետական առաջադրանքների կատարման գործում և պահանջեց ամրապնդել կադրերը, բարելավել աշխատանքային պայմանները, ռացիոնալ կերպով օգտագործել նյութերը։ Խնդիր դրվեց երկու ձեռնարկությունների ղեկավարների առջև՝ բարելավել սոցմրցության կազմակերպումը, խելամտորեն կիրառել խրախուսման միջոցները, հոգ տանել բանվորների կուլտուր-կենցաղային, մասնավորապես, բնակարանային պայմանների բարելավման մասին։

Կուսակցությունը լուրջ խնդիր է դնում՝ ընդլայնել ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ Հաշվի առնելով այդ պահանջը՝ արդյունաբերության հանձնաժողովը գործարաններում ուսումնասիրեց հարցը և պարզեց, որ թեև այդ ասպարեզում որոշակի գործ է արվում, սակայն թողարկվող արտադրանքի ծավալը չի համապատասխանում սահմանված նորմաներին։ Այս հարցը նույնպես հանձնաժողովի առաջադրմամբ քննարկվեց գործկոմի նիստում։ Հանձնարարեցինք ձեռնարկությունների ղեկավարներին ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը կազմակերպել այն հաշվով, որ դրանց վաճառքից գոյացած գումարը հավասար լինի ձեռնարկության աշխատավարձի ֆոնդին։

Արդյունաբերության հանձնաժողովի ուսումնասիրության հիման վրա քաղսովետի գործկոմի նիստում քննարկել ենք նաև կահույքի ֆաբրիկայում քաղաքացիների պատվերների ընդունման, ձևակերպման և կատարման վիճակի, սպորտային իրերի ֆաբրիկայում՝ թողարկվող արտադրանքի որակի հարցերը և մշակած միջոցառումների իրականացմանը հետևելու միջոցով օգնել նրանց՝ վերացնելու բացահայտված շատ թերություններ, բարելավելու քաղաքացիների սպասարկման գործը։

Հանձնաժողովի անդամները, որոնք բանվոր և մասնագետ դեպուտատներ են, ամենայն բարեխղճությամբ են կատարում իրենց պարտականությունները։ Հատկապես աչքի են ընկնում ինժեներ Յուրա Մանվելյանը, բանվորներ Յուրա Կարապետյանը, Հասմիկ Միրզոյանը և ուրիշներ։ Ի կենսագործումն ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1982 թ.) պլենումի որոշումների՝ հանձնաժողովի անդամները ուսումնասիրել են աշխատանքային և տեխնոլոգիական կարգապահության և խնայողության ռեժիմի կիրառման դրվածքը քաղաքի մի քանի ձեռնարկություններում։ Արդյունքները քննարկվել են հանձնաժողովի նիստում և համապատասխան հանձնարարականներ են տրվել ձեռնարկությունների ղեկավարությանը։

Արդյունաբերության հանձնաժողովը նախատեսել է առաջիկայում գարեջրի և հացի գործարաններում ուսումնասիրել աշխատանքային և կատարողական կարգապահության դրվածքը, առանձին ձեռնարկություններում՝ խնայողության ռեժիմի կիրառման, արտադրանքի որակի, սոցպարտավորությունների կատարման և արտադրանքի իրացման վիճակը։

Աբովյանն անընդհատ կառուցվող քաղաք է։ Ամեն տարի այստեղ կատարվում է տասնյակ միլիոնավոր ռուբլու կապիտալ շինարարություն։ Ընթացիկ հնգամյակի անցած երեք տարում կապիտալ ներդրումների ծավալը կազմել է ավելի քան 65 միլիոն ռուբլի։ Քաղաքի կառուցապատման հարցերը գտնվում են քաղսովետի գործկոմի և շինարարության ու շինանյութերի արդյունաբերության մշտական հանձնաժողովի ուշադրության կենտրոնում։ Մշտական հանձնաժողովը (նախագահ՝ երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանի վարպետ Բորիս Հարությունյան) պարբերաբար ուսումնասիրություններ է կատարում կառույցներում, շինանյութեր արտադրող ձեռնարկություններում և արդյունքները քննարկում իր նիստերում կամ ներկայացնում քաղսովետի ու նրա գործկոմի ուշադրությանը։ Քաղսովետի նստաշրջաններից մեկում, օրինակ, հանձնաժողովի նախաձեռնությամբ քննարկման առարկա դարձրինք քաղաքի սոցիալ-կուլտուրական և կենցաղային օբյեկտների կառուցման ընթացքը և դրա հետագա բարելավման հարցը։ Դա մեծապես նպաստեց նման օբյեկտների կառուցման և գործարկման արագացմանը։



Կամ մեկ ուրիշ օրինակ։ Քաղաքում կառուցվող բնակելի շենքերից մեկը պատրաստ էր. հանձնաժողովի անդամները որոշեցին լինել տեղում և պարզել, թե ինչպիսի որակով է այն շահագործման հանձնվել։ Նրանք պարզեցին, որ շենքի շրջակայքն անբարեկարգ է, այն ունի մասնակի թերություններ, մասնավորապես պատուհանների շրջանակների և դռների մի մասը ցածրորակ է։ Դա առիթ ծառայեց՝ ուսումնասիրելու նաև գործարկվելիք մյուս բնակելի շենքերի վիճակը։ Բացահայտեցին նման և այլ կարգի մի շարք թերություններ և հարցը քննարկեցին իրենց հանձնաժողովի նիստում։ Քննարկումից հետո հանձնաժողովի անդամները եղան բնակելի շենքերի կառուցմամբ զբաղվող № 59 շինվարչությունում, ստուգեցին ստացված շինանյութերի պահպանման վիճակը և ղեկավարությանը տեղյակ պահեցին իրենց հանձնաժողովի ընդունած որոշմանը։

Ուսումնասիրության ընթացքում բացահայտված թերությունների վերացմանը հետամուտ լինելու շնորհիվ հանձնաժողովին հաջողվեց այդ գործում որոշակի բեկում մտցնել։ Դա պարզվեց, երբ քաղսովետի գործկոմի նիստում քննարկեցինք շինարարության ընթացքին վերաբերող հարցը։ Արդեն արագացել էին շինարարության տեմպերը, բարձրացել շինմոնտաժային աշխատանքի որակը, կատարվում էին առաջադրանքները։ Այդ քննարկումով միաժամանակ պարզեցինք, որ կան նաև այլ կարգի թերություններ։ Գործկոմը հանձնարարականներ տվեց «Աբովյանշին» տրեստի №№ 59 և 61 շինվարչությունների ղեկավարներին։ Մասնավորապես պահանջվեց 1983 թ. պլանից դուրս շահագործման հանձնել երրորդ միկրոշրջանի № 19 բնակելի շենքը, բարելավել շինարարության որակը, սեղմ ժամկետում վերացնել նույն միկրոշրջանի կաթսայատան թերությունները և բնակելի շենքերն ապահովել խմելու ջրով, ջեռուցմամբ, էլեկտրաէներգիայով և գազով, բարեկարգել նորակառույց շենքերի շրջակայքը։ Այդ հանձնարարությունները կատարվեցին ժամանակին, և դրանում զգալի դեր խաղաց հանձնաժողովի անդամների մշտական հսկողության ապահովումը։ Նրանք պարբերաբար լինում էին օբյեկտներում, հետևում կատարվող աշխատանքի ընթացքին ու որակին։

Շինարարության և շինանյութերի արդյունաբերության հանձնաժողովը, սեփական նախաձեռնությամբ և նախապես կազմած աշխատանքային պլանին համապատասխան, ուսումնասիրել և գործկոմի քննարկմանն է ներկայացրել շինանյութերի և շինարարական իրերի կոմբինատում արտադրանքի որակի բարելավման, № 59 շինվարչությունում՝ խնայողության ռեժիմի ուժեղացման վիճակը և այլ հարցեր։ Այդ ուսումնասիրությունները և քննարկումները բարերար ազդեցություն են թողել ինչպես կոմբինատի և շինվարչության, այնպես էլ մյուս ձեռնարկությունների ու շինարարական կազմակերպությունների գործունեության վրա։ Դրանցում էապես բարելավվել են թողարկվող շինանյութերի և իրերի որակն ու պահպանությունը, ուժեղացել խնայողության ռեժիմը և պայքարը կորուստների ու անարտադրողական ծախսերի կրճատման համար։

Պետությունն ամեն տարի հսկայական միջոցներ է հատկացնում մեր քաղաքի բարեկարգման նպատակով։ Քաղաքը հետզհետե կարգավորվում, նոր, ակնահաճո տեսք է ստանում։ Եվ եթե կարճ ժամանակամիջոցում կառուցապատվել, բարեկարգվել ու գեղեցկացել են քաղաքի զարկերակները համարվող Երևանյան և Սևանի, Նաիրյան ու Ռոսիա փողոցները և դրանք երիզող պուրակները, Իլյիչի լայնահուն պողոտան և այն հատող զբոսայգին, ծնունդ են առել հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը խորհրդանշող հուշահամալիրը, քաղաքի հասարակական կենտրոնը՝ ընդարձակ հրապարակով և շատ այլ օբյեկտներ, ապա այդ լավ գործերում կա և բուժքույր Լիդա Զորանյանի ղեկավարած բնակարանային կոմունալ տնտեսության և բարեկարգման մշտական հանձնաժողովի լուրջ ներդրումը։

Մեր կուսակցությունը սովետական մարդկանց առողջության նկատմամբ հոգատարությունը համարում է ամենակարևոր սոցիալական խնդիրներից մեկը։ «Պետք է ամեն ինչ անել, որ սովետական մարդը միշտ և ամենուրեք կարողանա ժամանակին ստանալ որակյալ և սրտացավ բուժօգնություն» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 99—100)։ Իր գործունեության հիմքում այս պահանջն է դրել առողջապահության և սոցիալական ապահովության մշտական հանձնաժողովը, որը ղեկավարում է Աբովյանի շրջանի գլխավոր պետական սանիտարական բժիշկ, բժշկական գիտությունների թեկնածու Զինաիդա Ավագյանը։ Նրա հետևողական աշխատանքի շնորհիվ հնարավոր դարձավ քաղաքում լուծել մի շարք լուրջ պրոբլեմներ ու խնդիրներ։ Հանձնաժողովը 1982 թ. հուլիսից մինչև 1983 թ. հունիսն ընկած ժամանակամիջոցում իր նիստերում քննարկել է սանիտարահամաճարակային կոմպլեքսային միջոցառումների, բնակչության բժշկական օգնության, առողջապահական հիմնարկությունների նյութական բազայի ամրապնդման, շրջակա միջավայրի պահպանման, հասարակական սննդի և առևտրի, արդյունաբերական ձեռնարկությունների և կոմունալ հիմնարկությունների նկատմամբ սահմանվող սանիտարական հսկողության ուժեղացման և շատ այլ հարցեր։ Դրանց մի մասը, նախապես ուսումնասիրելուց հետո, ներկայացվել է գործկոմի քննարկմանը։ Այսպես, բոլորովին վերջերս քաղսովետի գործկոմում քննարկեցինք հանձնաժողովի նախապատրաստած արդյունաբերական ձեռնարկությունների սննդի օբյեկտների սանիտարական վիճակի հետագա բարելավման հարցը։ Ելնելով բացահայտված թերություններից՝ գործկոմը որոշեց ընդլայնել հասարակական սննդի ցանցը, ամրապնդել օբյեկտների նյութատեխնիկական բազան, բացել դիետիկ բաժանմունքներ, անցնել կոմպլեքսային ճաշատեսակների և աբոնենտային սպասարկման առաջավոր ձևերի կիրառմանը։ Այդ միջոցառումները հաջողությամբ իրականացվեցին։

Երկար տարիներ Աբովյան քաղաքի Կոտայք փողոցի բնակիչները բողոքում էին կոյուղու բացակայությունից, փողոցների անբարեկարգ վիճակից։ Այդ հարցը դարձավ առողջապահության և սոցիալական ապահովության մշտական հանձնաժողովի քննարկման առարկան։ Հարցը ուսումնասիրվելուց հետո ձեռնարկվեցին կոնկրետ միջոցներ։ Առաջարկվեց կահույքի «Կոտայք» արտադրական միավորմանը՝ 1,5 կիլոմետր կոյուղագիծը կառուցել։ Այժմ փողոցն ունի կոյուղի, բարեկարգվել են մյուս փողոցները։

Տեղական սովետների վերջին ընտրություններից անմիջապես հետո, երբ արդեն կազմավորվել էին մշտական հանձնաժողովները, առողջապահության և սոցիալական ապահովության հանձնաժողովն ուսումնասիրեց որոշ ձեռնարկությունների բանվորների սանիտարահիգիենիկ պայմանները։ Պարզվեց, որ այստեղ աղմուկը գերազանցում է սահմանված նորմաները, օդափոխության համակարգը գործում է անկանոն, չկա հանդերձարան, սանիտարական բարվոք վիճակում չէ ճաշարանը։ Հարցը նախ քննարկվեց հանձնաժողովի, ապա և՝ գործկոմի նիստում, ընդունվեցին ու տրվեցին համապատասխան որոշումներ ու հանձնարարականներ։ Երբ հանձնաժողովի անդամներն ամիսներ անց եղան տեղում, պարզեցին, որ զգալի փոփոխություններ են կատարվել. նվազագույնի է հասցվել աղմուկը, տեղակայվել ու կարգավորվել է օդափոխության համակարգը բոլոր արտադրամասերում, ավարտվել է հանդերձարանի շինարարությունը, հիմնական նորոգման ենթարկվել ճաշարանը, այստեղ տեղադրվել են դիետիկ սեղաններ։

Ուսումնասիրություններից մեկի ժամանակ հանձնաժողովը պարզեց, որ բուժմիավորման տեղամասային բուժսպասարկման գործում կան լուրջ թերություններ։ Երբեմն տնային համայցերը կատարվում էին անկանոն և ուշացումներով, քիչ էր սպասարկման մեքենաների քանակը, վատ էր դիսպանսերացման գործը։ Նրա միջամտությամբ էլ կատարվեցին լուրջ տեղաշարժեր. ավելացավ մեքենաների քանակը, բարելավվեց սպասարկումը, կարգավորվե-



ցին տնային համայցերը, բժիշկներն սկսեցին ավելի հաճախակի լինել հիվանդների մոտ, զրույցներ անցկացնել բնակչության համար, ընդլայնվեց դիսպանսերացման աշխատանքը և այլն։

Երբեմն մշտական հանձնաժողովները ուսումնասիրություններ են կատարում բնակիչներից ստացված ահազանգերի, դիմում-բողոքների հիման վրա։ Այսպես, առողջապահության և սոցիալական ապահովության հանձնաժողովը ահազանգեր ստացավ քաղաքի սանիտարական վիճակի վերաբերյալ։ Մարդիկ բողոքում էին, որ աղբատար մեքենաները չեն բավականացնում աղբը ժամանակին տեղափոխելու համար, բնակելի շենքերի վերին հարկերը, մանկական և սննդի օբյեկտների մի մասը ջուր չեն ունենում։ Հանձնաժողովում ներգրավված դեպուտատների թվից կազմվեց հատուկ բրիգադ, որն ուսումնասիրեց առհասարակ քաղաքի սանիտարական վիճակը և պարզեց, որ բողոքներն իրավացի են։ Հարցը քննարկվեց հանձնաժողովի նիստում և նրա անդամները որոշեցին այն մտցնել քաղսովետի գործկոմի քննարկմանը, քանի որ դրանց լուծումը իրենց ուժերից վեր էր։

Քաղսովետի գործկոմի նիստում հարցի քննարկմանը հրավիրվեցին բնակչության ծառայությանն առնչվող պատասխանատու աշխատողները։ Կոմունալ բաժնի և սանսեկտորի վարիչները կարգապահական տույժի ենթարկվեցին, գործկոմի որոշմամբ կարգավորվեց քաղաքի ջրամատակարարման գրաֆիկը, ավելացվեց աղբատար մեքենաների քանակը։

Այս կամ այն հանձնաժողովի առջև ծառացած լուրջ պրոբլեմների ուսումնասիրման և քննարկման ժամանակ հաճախ հարկ է լինում այդ գործում ներգրավել նաև մյուս հանձնաժողովների անդամներին, համապատասխան կազմակերպությունների ներկայացուցիչներին։ Դրանց աշխատանքի կոորդինացման նպատակով մեզ մոտ հաստատվել է չգրված մի օրենք՝ տվյալ հանձնաժողովի նիստին մասնակցող քաղսովետի գործկոմի աշխատակիցը սովետի մշտական 12 հանձնաժողովների միջև կազմակերպում է ինֆորմացիայի փոխանակություն այն հարցերի շուրջ, որոնք կարող են հետաքրքրել բոլորին։

Աշխատանքի կոորդինացումը հետապնդում է մեկ նպատակ՝ հանձնաժողովների ուշադրությունը սևեռել տնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծման, ձեռնարկությունների և հիմնարկությունների գործունեության բարելավման վրա։ Ահա թե ինչու գործադիր կոմիտեն մեծ ուշադրություն է հատկացնում նրանց միջև կապի ամրապնդմանը։ Դա պայմանավորված է նաև այն բանով, որ, ինչպես շատ դեպքերում ճշմարտացիորեն նշել են դեպուտատները և հանձնաժողովների անդամները, դեռևս հանձնաժողովների կազմում քիչ են մասնագետները՝ ինժեներները, տեխնիկները, շինարարները և այլն։ Գործկոմը հնարավորություն է ընձեռում նրանց՝ ակտիվի մեջ ներգրավել բանիմաց մասնագետների, որոնք, ինչպես ցույց է տվել փորձը, օգնում են լուծելու դժվարին շատ հարցեր։ Կոորդինացնելով մշտական հանձնաժողովների գործունեությունը՝ գործադիր կոմիտեն ձգտում է դեպուտատների համար ստեղծել աշխատանքի և ստեղծագործական ակտիվության բարձրացման նպաստավոր պայմաններ։ 1983 թ. մենք քննարկեցինք քաղսովետի գործկոմում, նրա բաժիններում ու վարչություններում, հիմնարկ-ձեռնարկություններում քաղաքացիների նամակների, դիմումների, գանգատների առնչությամբ տարվող աշխատանքի վերաբերյալ հարցը, որը նախապատրաստել և գործկոմի քննարկմանն էր ներկայացրել սոցիալիստական օրինականության և հասարակական կարգի պահպանության հանձնաժողովը (նախագահ՝ Յու. Մարգարյան)։

Աշխատավորների նամակների ու դիմումների առնչությամբ տարվող դրական աշխատանքի ընդհանրացման հետ միասին վերհանվեցին նաև լուրջ թերություններ, առաջ քաշվեցին չլուծված շատ հարցեր։ Արձանագրվեց, որ ստացվող նամակների մեջ զգալի են բնակարանային, կոմունալ-կենցաղային պայմանների, խմելու ջրի, ջեռուցման, էլեկտրաէներգիայի անկանոն մատակարարման, առանձնապես սպասարկող կազմակերպությունների գործունեության մեջ տեղ գտած թերությունների վերաբերյալ բողոքները։ Սպասարկող

կազմակերպությունները դեռևս շատ դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը քաղաքացիներին հուզող հարցերի լուծման, քաղաքային տնտեսության և սպասարկման ոլորտում եղած թերությունների վերացման բնագավառում։

Մշտական հանձնաժողովը հարցի ուսումնասիրության ընթացքում պարզել էր, որ մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների (մեխանիկական, երկաթբետոնե կառուցվածքների, գարեջրի գործարաններ) և կազմակերպությունների ղեկավարներ դեռևս պատշաճ ուշադրություն չեն նվիրում բնակարանային շինարարությանը հատկացված գումարների իրացմանը, որի հետևանքով մեծ թիվ են կազմում բնակարանի կարիք ունեցողների դիմումները։ Ելնելով վերոհիշյալից և հաշվի առնելով հանձնաժողովի կարծիքը՝ քաղսովետի գործկոմը որոշեց գործնական քայլեր անել բնակարանային շինարարությանը հատկացված միջոցների ժամանակին իրացման համար, հատուկ հսկողություն սահմանել բնակտարածության ապահովման վերաբերյալ քաղաքացիներից ստացված դիմումների ուսումնասիրման, քննարկման և հերթագրման նկատմամբ։

Այս ամենը վկայում է, որ մշտական հանձնաժողովների գործունեության հաջողության և առհասարակ սովետի ու նրա գործադիր կոմիտեի առջև ծառացած խնդիրների լուծման կարևոր պայմանը այդ հանձնաժողովների ակտիվության ըստ ամենայնի բարձրացումն է, դրանց նախագահների և անդամների ճիշտ ընտրությունը, նրանց ստեղծագործական ունակությունների, նախաձեռնության ու ձեռներեցության զարգացումը։ Այդ ամենն ապահովելու համար կիրառում ենք զանազան ձևեր ու մեթոդներ։ Լավ արդյունք են տալիս սովետի նստաշրջանում հանձնաժողովների հաշվետվությունների քննարկումը, դրանց նախագահների ու անդամների համար սեմինար-խորհրդակցությունների հրավիրումը, նրանց հետ անհատական զրույցները և այլն։ Հանձնաժողովների ակտիվության բարձրացման լավագույն գործոն է նաև քաղսովետի նստաշրջաններում պլանային հարցերի քննարկման ժամանակ դրանց նախագահների հարակից զեկուցումների կազմակերպումը։

Քաղսովետի նստաշրջաններում, որպես ընդունված կարգ, քննարկում ենք այս կամ այն մշտական հանձնաժողովի հաշվետվությունը։ Նոր լիազորությունների ընթացքում իրենց գործունեության մասին արդեն հաշիվ են տվել առողջապահության և սոցիալական ապահովության, երիտասարդության գործերի, ժողովրդական կրթության և կուլտուրայի, բնակչության կենցաղային սպասարկման, առևտրի ու հասարակական սննդի, շինարարության և շինանյութերի արդյունաբերության մշտական հանձնաժողովների նախագահները։ Այդ քննարկումները առիթ են ծառայում առնչվելու նոր խնդիրների հետ, որոնց լուծմամբ զգալի նպաստ ենք բերում մեր քաղաքին։ Այսպես, երիտասարդական գործերի մշտական հանձնաժողովի հաշվետվության ընթացքում նրա նախագահ, բանվորուհի դեպուտատ Լարիսա Հովհաննիսյանը հանդես եկավ նաև հրատապ լուծում պահանջող մի շարք առաջարկություններով։ Նա մասնավորապես առաջարկեց ուժեղացնել պայքարը գործալքողների, երեկոյան ժամերին հասարակական վայրերում անկարգություններ անող երիտասարդների դեմ, ողջ երիտասարդությանը ներգրավել հանրօգուտ աշխատանքում, կարգ ու կանոն սահմանել կինոթատրոններում, բարեփոխել դրանց շրջակայքը։

Այդ քննարկումը և մի ամբողջ շարք հարցերի առաջադրումը արդյունավետ եղան։ Մշակած միջոցառումների իրականացմանը հետևում էին նաև հանձնաժողովի անդամները։ Նրանք ժողովրդական դրուժինայի անդամների հետ դուրս էին գալիս ցերեկային և երեկոյան շրջագայության քաղաքի տարածքում։ Ուժեղացվեց ժողովրդական դրուժինայի, միլիցիայի, տեղամասային տեսուչների, իրավակարգի պահպանման հենակետերի աշխատանքը։ Մշտական հանձնաժողովի անդամները հաշվետվության քննարկումից հետո ևս ուսումնասիրեցին քաղաքի երիտասարդության աշխատանքի ու հանգստի պայմանները։ Մարզական իրերի ֆաբրիկայում նրանք պարզեցին, որ առանձին



արտադրամասերում անբավարար են օդափոխությունը, լուսավորությունը և այլն։ Հանձնաժողովի միջամտությամբ այդ թերությունները վերացվեցին։

Մշտական հանձնաժողովների բարձր ակտիվությունը մեծապես պայմանավորված է դրանց նախագահների ու անդամների ճիշտ ընտրությամբ, վերջիններիս բանիմացությամբ ու ձեռներեցությամբ։ Մեզ մոտ հանձնաժողովների նախագահները և անդամները բացառապես առաջավոր բանվորներ են, ինժեներատեխնիկական աշխատողներ և պարտքի գիտակցությամբ են կատարում ինչպես իրենց հիմնական աշխատանքը, այնպես էլ դեպուտատի պարտականությունները և հասարակական հանձնարարությունները։

Բարձր ակտիվության օրինակ կարող է ծառայել առևտրի և հասարակական սննդի մշտական հանձնաժողովի նախագահ Լարիսա Փիլոյանը։ Այդ առաջավոր բանվորուհին ամենայն բարեխղճությամբ ու սիրով է կատարում հանձնաժողովի նախագահի և դեպուտատի իր պարտականությունները, աչքի է ընկնում սկզբունքայնությամբ, հետևողականությամբ, անհաշտ է թերությունների նկատմամբ, հազար ու մի թելերով կապված է իր ընտրողների հետ։ Իսկ ընտրողները շատ հարցերով են դիմում նրան։ Օրինակ, նրանք դիմել էին հեռախոսային ցանցի կարգավորման, պտուղ-բանջարեղենի վաճառքի բարելավման խնդրանքով։ Լ. Փիլոյանը եղավ այդ հարցերով զբաղվող հիմնարկությունների ղեկավարների մոտ և հասավ այն բանին, որ կարգավորվեց հեռախոսային ցանցը, որոշակիորեն բարելավվեց պտուղ-բանջարեղենի մատակարարման ու վաճառքի գործը։ Նրա միջամտությամբ բացվել են պտուղ-բանջարեղենի, հացի, պարենային ապրանքների նոր խանութներ։ Հանձնաժողովի մշտական հսկողության շնորհիվ էապես բարելավվել է հասարակական սննդի օբյեկտների աշխատանքը։ Քաղաքացիների ահազանգերի և դիմումների հիման վրա հանձնաժողովն ուսումնասիրել է հացի ու հացաբուլկեղենի որակի և խնայողաբար օգտագործելու հարցերը և որոշակի ներդրում արել դրանց լուծման գործում։ Նրա նախաձեռնությամբ հասարակական սննդի օբյեկտներում և բնակելի շենքերում կազմակերպվել է հացի մնացուկների հավաքման ու օգտագործման գործը։

Քաղսովետի գործկոմը հոգ է տանում ոչ միայն մշտական հանձնաժողովների ակտիվության բարձրացման, դրանց նախագահների, անդամների նախաձեռնության զարգացման, այլև վերջիններիս ուսուցման կազմակերպման մասին։ Տեղական սովետների նախորդ ընտրություններից հետո արդեն երկու անգամ անցկացրել ենք հանձնաժողովների նախագահների ու նրանց տեղակալների սեմինար-խորհրդակցություն, որտեղ վերջիններիս պարզաբանվել են հանձնաժողովների անելիքները, իրազեկ պահվել քաղսովետի և նրա գործկոմի առջև ծառացած խնդիրներին, խորհուրդներ են տրվել նրանց, թե յուրաքանչյուր հանձնաժողով հատկապես ինչպիսի հարցերի վրա պետք է սևեռի իր ուշադրությունը։

Քաղսովետի գործկոմում գործում է կազմմասսայական աշխատանքի և դեպուտատի սենյակ, որտեղ կան ցուցադրական բազմազան միջոցներ, սովետի, նրա գործադիր կոմիտեի, մշտական հանձնաժողովների, դեպուտատների գործունեությանը նվիրված հարուստ նյութեր։ Մշտական հանձնաժողովների նախագահներն ու անդամները պարբերաբար լինում են այստեղ, ուսումնասիրում համապատասխան գրականությունն ու հրահանգները, իրենց գործունեությանն առնչվող օրենքներն ու որոշումները և այլ նյութեր։ Հանձնաժողովների փորձառու նախագահներն իրենց փորձը հաղորդում են նորընտիր նախագահներին, նրանց ծանոթացնում իրենց ղեկավարած հանձնաժողովների գործունեության վարման ձևերին ու մեթոդներին։

Մշտական հանձնաժողովների արդյունավետ աշխատանքի ապահովման, նրանց ակտիվության բարձրացման ասպարեզում ձեռք բերած հաջողություններում մեծ է ՀԿԿ Աբովյանի շրջկոմի դերը։ Քաղսովետի գործկոմը միշտ էլ ստանում է կուսշրջկոմի օգնությունը։ Շրջանային կուսկազմակերպության XXXXI կոնֆերանսը խնդիր դրեց Աբովյանը դարձնել օրինակելի կենցաղավարության քաղաք, արմատապես բարելավել նրա բարեկարգման և կառուցման աշխա-

տանքները, կատարելագործել քաղաքային տնտեսությունը: Քաղսովետի գործկոմը և մշտական հանձնաժողովները ամեն ինչ անում են այդ խնդիրը անթերի լուծելու համար:

Օգտվելով առիթից՝ կուզեի խոսել անչափ հրատապ լուծում պահանջող մեկ կարևոր հարցի մասին: Դա վերաբերում է բնակչությանը խմելու ջրով ապահովմանը: Բանն այն է, որ եղած ջուրը, որը նախատեսված էր 35 հազար բնակչի համար, այժմ արդեն չի բավարարում քաղաքի պահանջները: Պատրաստ են նախագծային ու նախահաշվային փաստաթղթերը և խնդիրն այն է, որ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի պետական պլանային կոմիտեն հոգ տանի ջրատարի կառուցումը պլանի մեջ մտցնելու մասին:

Տասնմեկերորդ հնգամյակի անցած տարիները, որոնք համընկնում են քաղսովետի վերջին գումարման լիազորությանը, արգասավոր են եղել քաղաքի հիմնարկ-ձեռնարկությունների համար: Ծխախոտի և շինարարական իրերի կոմբինատի, կահույքի «Կոտայք» արտադրամիավորման, քաղաքի, միկրոբիոլոգիայի գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվները մի քանի անգամ հաղթող են ճանաչվել համամիութենական և հանրապետական ճյուղային սոցիալիստական մրցությունում և արժանացել փոխանցիկ կարմիր դրոշի ու դրամական մրցանակների: Հանրապետության քաղաքների միջև ծավալված սոցմրցությունում հաղթել է նաև մեր քաղաքը և շահել ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը և դրամական մրցանակը: Անտարակույս, այս հաջողություններում կա նաև քաղսովետի մշտական հանձնաժողովների լուրջ ավանդը: Եվ վերջապես՝ շրջանը ընթացիկ հնգամյակի առաջին երկու տարում համամիութենական սոցմրցությունում հաղթելու համար պարգևատրվել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով: Դա մեզ համակում է հպարտության անկեղծ զգացումով. այդ բարձր պարգևի մեջ կա քաղսովետի գործկոմի և մշտական հանձնաժողովների համեստ բաժինը:

Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ որոշում ընդունեց ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստման ու անցկացման կապակցությամբ և նշեց, որ դրանք պետք է դառնան ժողովրդական դեպուտատների սովետների, պետական բոլոր մարմինների գործունեության ստուգատես: Խնդիր է դրվում ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստումը է՛լ ավելի սերտորեն շաղկապել այն ձեռնարկությունների և հիմնարկությունների աշխատանքի բարելավման հետ, որոնք առնչություն ունեն բնակչության սպասարկման, սովետական մարդկանց կուլտուրական և սոցիալ-կենցաղային պահանջմունքների բավարարման հետ: Քաղսովետի մշտական հանձնաժողովները, ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներով, ձգտում են ընտրական կամպանիայի ընթացքում ակտիվ և արդյունավետ գործունեություն ծավալել:

Ձեռքբերումներն ակնհայտ են, բայց առջևում կան շատ անելիքներ: Քաղսովետի գործկոմը կձեռնարկի բոլոր միջոցները՝ է՛լ ավելի ակտիվացնելու մշտական հանձնաժողովների գործունեությունը մեր առջև ծառացած նոր խնդիրները հաջողությամբ լուծելու, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի վերջին նստաշրջանի առաջադրած պահանջները կատարելու համար:

---



# ՉՄԻԱՆԱԼՈՒ ՇԱՐԺՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐՆ ԱՐԴԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ

**Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ՉՄԻԱՑԱԾ ԵՐԿՐՆԵՐԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ և կառավարությունների ղեկավարների VII կոնֆերանսը տեղի ունեցավ 1983 թ. մարտին Դելիում՝ իմպերիալիզմի հետադիմական ուժերի, նախ և առաջ ԱՄՆ-ի իմպերիալիզմի կողմից ռազմական հոգեգարության բորբոքման, երկրագնդի ժողովուրդներին սպառազինության նոր մրցավազք պարտադրելու և, այդպիսով, միջազգային լարվածության ծայրաստիճան սրման պայմաններում: Հանուն խաղաղության, ջերմամիջուկային աղետի կանխման մղվող պայքարի հաջողությունն ապահովող կարևոր գործոն է դասակարգային ու քաղաքական ուժերի տեղաբաշխումը միջազգային ասպարեզում: Այն պայմանավորված է երկու համաշխարհային հասարակական սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի հակամարտությամբ: Այսօր խաղաղության ու միջազգային անվտանգության լուրջ գործոն է չմիանալու շարժումը, որը դրական և հարաճուն դեր է խաղում: Չմիանալու շարժումը, լինելով լուրջ հակաիմպերիալիստական ուժ, հաջողությամբ է իրականացնում այդ դերը:

Այսօր այդ շարժումը միավորում է Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի, ինչպես նաև աշխարհի այլ շրջանների 101 երկիր, որոնց բնակչության ընդհանուր թիվը կազմում է 1,5 մլրդ մարդ: «Մենք հարգանքով ենք վերաբերվում չմիանալու շարժմանը, որի խաղաղասիրական քաղաքականությունն օգտակար ավանդ է մուծում միջազգային կյանքի մեջ»,— «ՍՍՀՄ վաթսուն տարին» զեկուցման մեջ շեշտեց Յու. Վ. Անդրոպովը:

Դելիի կոնֆերանսը նորից հաստատեց, որ ավելի են զարգացել այն հակաիմպերիալիստական, առաջադիմական-դեմոկրատական միտումները, որոնք հատուկ են եղել չմիանալու շարժմանը նրա ծագման պահից ի վեր: Խոսելով կոնֆերանսի արդյունքների մասին, Ինդիրա Գանդին նշեց. «Չմիանալու շարժմանը փլուզում գուշակողների հաշվարկները չարդարացան... քանի որ շարժումը հենվում է որոշակի սկզբունքների վրա: Չի կարելի դրանցից հրաժարվել ստիպել այն ժողովուրդներին, որոնք պայքարել են հանուն ազատության: Քանի դեռ ժողովուրդները շահագործման են ենթարկվում, կպահպանվի չմիանալու շարժման անհրաժեշտությունը»:

Չմիանալու շարժման էությամբ ու բնույթով, արդի միջազգային հարաբերություններում նրա տեղով ու դերով պայմանավորված պրոբլեմները կարևոր տեղ են զբաղեցնում համաշխարհային ասպարեզում ծավալված գաղափարախոսական պայքարում: Իմպերիալիզմի գաղափարախոսությունը ձգտում է կեղծել, աղավաղված տեսքով ներկայացնել այդ շարժման պատմությունն ու դերն աշխարհում, խոչընդոտել դրա հակաիմպերիալիստական, առաջադիմական նպատակների իրականացմանը, խարխլել ու թուլացնել այն: Սակայն իմ-

պերիալիզմի քաղաքագետներն ու գաղափարախոսներն այսօր արդեն չեն կարող, ինչպես Ջ. Ֆ. Դալեսի ժամանակներում, բացեիբաց հանդես գալ, նրանք ստիպված են հաշվի նստել շարժման հեղինակության և միջազգային կշռի հետ։ Իմպերիալիստական պետությունների շատ ղեկավարներ, ինչպես, օրինակ, Ռ. Ռեյգանը, Հ. Կոլը, Մ. Թետչերը և ուրիշներ, VII կոնֆերանսի հասցեին նույնիսկ հատուկ ուղերձներ հղեցին, ջանալով ներազդել դրա աշխատանքների ընթացքի վրա։

Չմիանալու շարժման դեմ մղվող գաղափարախոսական պայքարի առանձնահատկությունն այն է, որ իմպերիալիզմի գաղափարախոսներն ու քաղաքագետները, բուրժուական հեղինակները դիմում են քողարկված, հատկապես խորամանկ ձևերի ու մեթոդների, զուգակցելով գիտականակերպ աբստրակտ-տեսական դատողությունները և ուսումնասիրությունները, որոնք լի են բացահայտ հակակոմունիզմով, «սովետական սպառնալիքի» մասին աղմուկով և շարժման անդամ առանձին երկրների հասցեին սպառնալիքներով։

Իրենց այդ գլխավոր խնդրին հետամուտ՝ իմպերիալիզմի գաղափարախոսները չմիանալու շարժման դեմ իրենց էքսպանսիան իրականացնում են հետևյալ հիմնական ուղղություններով՝ ա) ընդդեմ շարժման ներսում գտնվող հետևողականորեն հակաիմպերիալիստական հեղափոխական ուժերի, դրանց վարկաբեկելու և մեկուսացնելու, հետևաբար և ողջ շարժման հակաիմպերիալիստական միտումները ձախողելու նպատակով. բ) ընդդեմ շարժման մեջ ներգրավված չմիացած երկրների հակաիմպերիալիստական ճակատի միասնության, նպատակ ունենալով պառակտել դրանց, երկրների տարբեր խմբեր հակադրել միմյանց, գժտություն ու կասկածամտություն սերմանել. գ) ընդդեմ հակաիմպերիալիստական, դեմոկրատական համաշխարհային շարժման միասնության, ձգտելով քայքայել նախ և առաջ չմիանալու շարժման և սոցիալիստական երկրների, ՍՍՀՄ-ի բարեկամությունն ու համագործակցությունը, համատեղ հակաիմպերիալիստական ճակատը. դ) ջանալով ուժեղացնել շարժման ներսում առկա պահպանողական ուժերի ազդեցությունն ու դիրքերը, հետևաբար, և ուժեղացնել շարժման վրա բուրժուական, իմպերիալիստական քաղաքականության ու գաղափարախոսության ազդեցությունը՝ նպատակ ունենալով ազատագրված երկրները ներքաշել իրենց միջազգային քաղաքականության ոլորտը, դրանց օգտագործել ընդդեմ ազգային անկախության, սոցիալական պրոգրեսի, խաղաղության ու սոցիալիզմի ուժերի։

Իմպերիալիզմի այդ ստրատեգիական նպատակները, իհարկե, խնամքով քողարկված ձևով, դրսևորվում են գաղափարախոսական ու քաղաքական կոնցեպցիաներում, բուրժուական հեղինակների աշխատություններում։

Վերջին տարիներս մարքսիստական և առհասարակ պրոգրեսիվ համաշխարհային գիտական գրականությունում երևան են եկել ոչ քիչ գրքեր ու հոդվածներ չմիանալու շարժման վերաբերյալ, այդ թվում և իմպերիալիստական կոնցեպցիաները քննադատելու առումով։ Այդ գործում կարևոր ներդրում կատարեցին բուն ազատագրված երկրների մի շարք գիտնականներ, առաջին հերթին՝ հնդիկ հեղինակները։

Սույն թեմայի նկատմամբ նման աճող հետաքրքրությունը բացատրվում է այն բանով, որ համաշխարհային ասպարեզում գաղափարախոսական պայքարի և իմպերիալիստական քաղաքականության կողմից «սառը պատերազմի» մեթոդներին (այդ թվում նաև ազգային-ազատագրական շարժման գոտիներում) վերադառնալու միտումների ուժեղացմանը զուգընթաց բուրժուական հեղինակներն այսօր փորձեր են ձեռնարկում վերանայելու չմիանալու շարժման պատմությունը, շարժման 50—60-ական թվականների պատմությունը հակադրելու դրա ներկա փուլին։

Իմպերիալիստական գաղափարախոսությունն այսօր լայնորեն օգտագործում է նոր տեսական կոնցեպցիաներ, ջանալով միևնույն ժամանակ նոր շունչ հաղորդել 50—60-ական թվականներին հորինած հին կոնցեպցիաներին։ Դրանց մի մասը նույնիսկ բառի բուն իմաստով կոնցեպցիաներ չեն, այլ խայտաբղետ և էկլեկտիկ կերպով ի մի են բերել զանազան բուրժուական տեսությունների պատառիկներ, արտահայտություններ, տարբեր հակակոմունիստական դոգ-



մաներ և այլն։ Այդ ըմբռնումների բնորոշ առանձնահատկությունը նաև այն է, որ դրանք միմյանց համար յուրատեսակ մեթոդաբանական դեր են խաղում, մի դեպքում՝ կարծես տեսական հիմքի, իսկ մյուսում՝ փաստարկի դեր կատարելով։ Ամենից առաջ դրանք չմիանալու շարժման «էռոզիայի» և «նախասկզբնական նպատակներից ետ կանգնելու» բլոկներից «հավասարաչափ հեռացածության» և «հավասար վտանգավորության», «չեզոքության» ըմբռնումներն են։ Վերջապես, հարկ է շեշտել, որ այդ ըմբռնումները կոչված են ոչ միայն ննգափոխելու, կեղծելու չմիանալու շարժման պատմությունն ու կոնկրետ պատմական առանձնահատկությունը, բովանդակությունը, իրենց ուզածի պես առաջադրելու և բացատրելու շարժման էական պրոբլեմները, այլև, առաջին հերթին, կատարելու կարևոր սոցիալ-քաղաքական, դասակարգային ֆունկցիա՝ շարժմանը խորհուրդներ տալ, լոզունգներ առաջադրել, իմպերիալիստական քաղաքականության շահերի տեսանկյունից սահմանել դրա քաղաքական ծրագիրն ու գործունեության ուղղությունները։

Չմիանալու «շարժման էռոզիան» նոր կոնցեպցիա է, որը փոխկապակցված է «նախասկզբնական նպատակներից ետ կանգնելու» կոնցեպցիայի հետ։ Ինչպիսի՞ն է դրանց բովանդակությունը։ Արևմուտքում հրապարակված հոդվածների անվանումներն ինքնին իրենց մասին են վկայում. «Չմիանալու շարժման ապագան», «Չմիանալու շարժման էվոլյուցիան», «Սովետական նոր դաշնակցություններ երրորդ աշխարհում» և այլն։ Ռ. Ռեյգանը մարտի 4-ին Ինդիրա Գանդիին հղած ուղերձում չմիանալու VII կոնֆերանսին խորհուրդ էր տալիս վերադառնալ այն իդեալներին, «որոնց հիման վրա ստեղծվել է շարժումը»։

Բուրժուական հեղինակների ելակետային դրույթն այն է, որ, իբրև թե, 70-ական և 80-ական թվականների սահմանագծում բացահայտորեն երևաց չմիանալու շարժման «էռոզիան»։ Ինչում է դա արտահայտվում։ Դոնալդ Զագարիան մատնանշում է իբրև թե «խոր պառակտումը... այսպես կոչված, չմիանալու շարժման մեջ»։ Ֆաուդ Այամին «էռոզիա» է տեսնում չմիանալու նախնական՝ «պահպանել հավասարաչափ հեռացածություն երկու գերտերություններից» սկզբունքից հեռանալու մեջ։ Ու. Լեոնհարդը ճգնում է «էռոզիայի» առկայությունն ապացուցել այն բանով, որ Կուբան ընտրվեց իբրև բարձր մակարդակով վեցերորդ կոնֆերանսի անցկացման վայր, հետևաբար և՝ ընդհուպ մինչև 1982 թվականը ազգերի չմիանալու շարժման նախագահ։ Այդ փաստը, ըստ Լեոնհարդի, խորհրդանշում է այլ փոփոխություն շարժման մեջ՝ դեպի ձախ դրա քաղաքական ծանրության կենտրոնի դրամատիկական տեղաշարժ։ Դա նշանակում է, ըստ հեղինակի, հեռացում ապագաղութացման նպատակներից, տնտեսական նպատակներից, բլոկների նկատմամբ չեզոքությունից և այլն։ Ս. Մորգանը գրում է. «Կուբան, որը ՍՍՀՄ-ին իր բնական դաշնակիցն է համարում, խիստ հեռու է Ներուի առաջադրած՝ գերտերությունների նկատմամբ միատեսակ վերաբերմունքի և նրանց գործերին չմասնակցելու սկզբունքը պահպանելուց»։ Հեղինակը հույս է հայտնում, թե Դելիում «կարելի կլինի վերադառնալ այդ շարժման նախնական սկզբունքներին»։

Իմպերիալիզմի գաղափարախոսներն այսօր շատ են գրում, թե, իբր, չմիանալու շարժման ընդհանուր միավորող հիմքը վերացել է, իբր, խորանում է անդունդը, մի կողմից, ընդհանուր հակաիմպերիալիստական դեկլարացիաների, նեոգաղութատիրության, ռասայականության դատապարտման և այլնի ու, մյուս կողմից՝ սեփական երկրներում չլուծված խնդիրների, իրենց ժողովուրդների առօրյա կարիքների և այլնի միջև։ Այս գաղափարային մարզանքների ողջ ստահոդությունը, միտումնավորությունն ու կեղծությունը մերկացնելու համար անհրաժեշտ է հստակորեն պատասխանել այն հարցին, թե ինչը կյանքի կոչեց չմիանալու շարժումը, որոնք են դրա իսկապես «նախնական» նպատակները, քաղաքական ծրագիրն ու գործունեության ուղղությունները։

Չմիանալու շարժումը և՛ որպես գաղափար, և՛ որպես քաղաքականություն ավելի վաղ է ծագել, քան որպես ժողովուրդների խոր սոցիալական շարժում նրա ձևավորվելը։ Անշուշտ, այն կոնկրետ պատմական պայմանները, որոնցում տեղի էին ունենում շարժման ծագման և լինելիության պրոցեսները, այն է՝ համաշխարհային երկու հակադիր հասարակարգերի պայքարը, համաշխար-

հային հեղափոխական ուժերի, նախ և առաջ համաշխարհային սոցիալիզմի դեմ իմպերիալիզմի վարած «սառը պատերազմը», իմպերիալիստական ռազմական բլոկների ձևավորումը և դրան ի պատասխան սոցիալիստական պետությունների Վարշավայի պայմանագրի կազմակերպության առաջացումը, նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքը և այլն, շատ բանով բացատրում են չմիանալու շարժման ծագման պատճառները և նրա որոշ խիստ էական հատկանիշները: Բայց ոչ գլխավորը: Շարժման ամենախոր ակունքները պետք է փնտրել երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ազգային-ազատագրական պայքարի հուժկու վերելքի և միջազգային ասպարեզում երիտասարդ անկախ ազգային պետությունների առաջացման մեջ, պետություններ, որոնք, համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ առանձնահատուկ տեղ զբաղեցնելով, ցանկություն դրսևորեցին անջատվել իմպերիալիզմի քաղաքականությունից, բողոք արտահայտեցին իրենց անիրավահավասար վիճակի դեմ:

Ազատագրված երկրների առջև ամբողջ հասակով մեկ անմիջապես ծառացավ հետամնացության հաղթահարման, սոցիալական առաջընթացի, քաղաքական անկախության պահպանման և ամրապնդման խնդիրը: Սակայն նրանք անմիջապես էլ բախվեցին իմպերիալիստական տերությունների նեոգաղութատիրության քաղաքականության ու գործելակերպի հետ, տերություններ, որոնք ձգտում էին ազատագրված երկրների նկատմամբ անուղղակի քաղաքական վերահսկողության նոր ձևեր սահմանել, պահպանել նրանց հետամնաց, կախյալ, հետևաբար և շահագործվող վիճակը համաշխարհային կապիտալիստական տնտեսության համակարգում: Իմպերիալիզմը տենդագին նոր ռազմական բլոկներ էր ստեղծում (ՍԷԱՏՕ-ն, Բաղդադի պակտը, ՍԵՆՏՕ-ն), կոպիտ ճնշման և շանտաժի օգնությամբ դրանց մեջ ներքաշելով ազատագրված երկրների կառավարություններին: Այսպիսով, նախկին գաղութային ու կիսագաղութային երկրները հայտնվեցին մի աշխարհում, որը բաժանված էր ոչ միայն հակամարտ հասարակարգերի, այլև հակադիր ռազմական բլոկների: Եվ այդ ստեղծված բարդ իրավիճակում ազատագրված երկըրներին անհրաժեշտ էր մշակել սեփական կուրս, որպեսզի առավել բարենպաստ պայմաններ ստեղծեին իրենց ազգային սուվերենության պաշտպանության ու ամրապնդման, սոցիալ-տնտեսական զարգացման և առաջընթացի խնդիրների ողջ կոմպլեքսի լուծման համար:

Չմիանալու շարժումն այդ իսկ պատճառով սկզբից ևեթ ուղղվեց ընդդեմ այն համաշխարհային ուժերի, որոնք խանգարում էին ազատագրված երկրների անկախ զարգացմանն ու սոցիալական առաջընթացին: Այդ ուժերը, նեոգաղութատիրական քաղաքականություն իրականացնելով, պաշտպանում էին համաշխարհային շահագործողական և անիրավահավասար հարաբերությունները, ռասայականությունը, գաղութատիրությունը, հրահրում էին միջազգային բախումներ, պատերազմներ, աշխարհը պահում էին ջերմամիջուկային պատերազմի եզրին:

Շարժման ստրատեգիական նպատակները, որոնք ձևակերպված են նրա փաստաթղթերում, սկզբից ևեթ բացահայտ հակաիմպերիալիստական բնույթ ունեին— խաղաղության և միջազգային անվտանգության պահպանում. օգնություն ազգային-ազատագրական շարժումներին. խաղաղ գոյակցության և չմիանալու սկզբունքի վրա հիմնված անկախ քաղաքականության վարում. սուվերենության պաշտպանություն և տնտեսական զարգացման իրականացում. անիրավահավասար տնտեսական հարաբերությունների համաշխարհային սիստեմի փոփոխում. միջազգային հարաբերությունների ամբողջ համակարգի դեմոկրատացում և այլն: Չմիանալու շարժման նպատակները, խնդիրները ու բնույթը, դրա էությունն ու ծագման ակունքները կարելի է հասկանալ և բացատրել միայն ազատագրված երկրների լրիվ ազգային-ազատագրման ու անկախ զարգացման խնդիրների տեսանկյունից:

Սկզբից ևեթ չմիանալու շարժման առջև ծառացած կարևոր խնդիրը՝ պայքարը հանուն խաղաղության, պատերազմի կանխման, ընդդեմ միջազգային հարաբերություններում ուժի գործադրման, ընդհանուր մարդասիրական, աբս-



տրակտ խնդիր չէր: Այն թելադրվում էր ամենից առաջ ազատագրված երկրների անմիջական կենսական շահերով, ազգային-ազատագրման, անկախ զարգացման և սոցիալական առաջընթացի պայմանների ու գործոնների ապահովման պատմական անհրաժեշտությամբ: Դա էլ, ըստ Չմիանալու նոր հեռանկարները գրքի հեղինակ Բ. Ն. Կաուլի, հանդիսանում է չմիանալու շարժման բոլոր խնդիրների առանցքը: Ահա թե ինչու, եզրակացնում է Բ. Կաուլը, չմիանալը հակաիմպերիալիստական, հակագաղութատիրական, հակառասայական, հակաշովինիստական ուժ է (B. N. Kaul, New Horizons of Non-alignment, New Dehli, *1981*, p. *2*):

Բուրժուական գաղափարախոսությունը, նենգափոխելով շարժման ակունքները, «նախասկզբնական նպատակները», միևնույն ժամանակ ձգնում է ապացուցել, որ այն առհասարակ սպառել է իրեն, կորցրել իր երբեմնի նշանակությունը: «Թայմս»-ը, օրինակ, «խորիմաստորեն» եզրակացնում է. «Գաղութատիրությունը հիմնականում անցյալի գիրկն է անցել, իսկ դրա հետ նաև այդ շարժման գոյության պատճառներից մեկը»: ԱՄՆ-ի Բոստոնի համալսարանի պրոֆեսոր Ուոլտեր Կլեմենսը ևս ժխտում է միջազգային գործերում շարժման կոնստրուկտիվ և հարաճուն դերը և Դելիում կայացած VII կոնֆերանսի պատվիրակներին խորհուրդ է տալիս զբաղվել իրենց ներքին պրոբլեմներով: Կոնֆերանսի արդյունքները ցույց տվեցին, որ ոչ թե տեղի է ունենում չմիանալու շարժման էռոզիա, դրա նախնական նպատակներից ու խնդիրներից նահանջ, այլ դրանց հետագա զարգացում, շարժման հիմքում ընկած հակաիմպերիալիստական միտումների ուժգնացում: Այդ բանում օբյեկտիվորեն և օրինաչափ կերպով դրսևորվում է ազգային-ազատագրական շարժման սոցիալական բովանդակության հետագա խորացումը:

Բուրժուական գաղափարախոսները փորձում են շարժումը ներկայացնել իբրև որոշակի քաղաքականություն, քաղաքական միտում, որը չունի համարժեք, բուն տվյալ քաղաքականությանը ներհատուկ սոցիալ-տնտեսական հիմքեր, շարժիչ ուժեր և դրդապատճառներ:

Չմիանալու շարժումը սկզբունքորեն նոր, մեր դարաշրջանի եռյապատերազմյան փուլի յուրահատուկ պայմաններում ծնված բարդ, սոցիալական շարժում է: Դա և՛ քաղաքական ստրատեգիա է, և՛ սոցիալ-տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական շարժում, և՛ որոշակի ենթահամակարգ միջազգային հարաբերությունների համընդհանուր համակարգում: Որ դա բարդ, սոցիալական երևույթ է, շարժում, քաղաքական ստրատեգիա և որոշակի միջազգային համակարգ, դեռևս նշել է Ջ. Ներուն: Հնդիկ գիտնական Պ. Տ. Կիլնանին իրավացիորեն շեշտում է, թե նոր համաշխարհային տնտեսական կարգի համար մղվող պայքարը՝ տնտեսական այդ խոր շարժումը, չմիանալու շարժման ասպեկտն է, ուղղությունը և օժտված է հսկայական հակաիմպերիալիստական ներունակությամբ ու լիցքով: Արդեն այս իմաստով չի կարելի, ինչպես դա անում են բուրժուական գաղափարախոսները, լրջորեն դատողություններ անել XIX և XX դարերի չեզոքության ընդհանուր գծերի՝ մի կողմից, Շվեյցարիայի և Շվեդիայի, մյուս կողմից՝ Հնդկաստանի և մյուս երիտասարդ պետությունների քաղաքականության ընդհանուր գծերի մասին: Չմիանալու շարժմանը ձևական-իրավական, սխոլաստիկ մոտեցումը, արտաքին քաղաքականությունը շարժման խոր սոցիալ-տնտեսական հիմքերից, նպատակներից ու շարժառիթներից արհեստականորեն անջատելը նպատակ են հետապնդում նսեմացնել կամ էլ միանգամայն զրոյի հավասարեցնել այն հսկայական կոնստրուկտիվ, վերափոխիչ պրոգրեսիվ պատմական դերը, որ խաղում է այդ շարժումը միջազգային հարաբերություններում, մարդկության զարգացման գործում:

«Հավասարաչափ հեռացածության» և «չեզոքության» կոնցեպցիաներն առաջադրվեցին, կարելի է ասել, չմիանալու շարժման հետ միաժամանակ՝ ըստ էության որպես իմպերիալիզմի դասակարգային ռեակցիա, գաղափարախոսական պատասխան երիտասարդ պետությունների այդ դիրքորոշմանը և կոչված էին ազգային-ազատագրական խորացող շարժման դեմ պայքարում մի ամբողջ շարք սոցիալ-քաղաքական դասակարգային ֆունկցիաներ կատա-

բելու: Որո՞նք են այդ ըմբռնումների հիմքերն ու բովանդակությունը: Իր ժամանակին Ջ. Դալեսը չմիանալու քաղաքականությունն անվանեց «բարոյազուրկ»: Հանս Մորգենթաուն, այդ երևույթի վերաբերյալ իր կարծիքն արտահայտելով «բարոյական անտարբերություն» արտահայտությամբ, այն բնութագրեց որպես «ուժի հաշվեկշռի ֆունկցիա սառը պատերազմում»: Այդ դրույթը զարգացրեց է. Լեֆևրը Չեզոքականություն և չմիանալու շարժում գրքում, նշելով, որ «չեզոքականությունը կամ չմիանալու շարժումը... ուղղակի պատասխան է սառը պատերազմին», և որ «աֆրիկա-ասիական չեզոքությունը երկբևեռայնության ֆունկցիա է»: Ըստ հեղինակի, դա «հավասարաչափ հեռացածություն է գերտերություններից»:

70-ական թվականների երկրորդ կեսից սկսած՝ իմպերիալիզմի գաղափարախոսները այդ ըմբռնումները, ճիշտ է, փոքր-ինչ ձևափոխված, նորից մղեցին առաջին պլան, որն այժմ արդեն բուրժուական գաղափարախոսության ռեակցիան էր հակաիմպերիալիստական ուղղությամբ չմիանալու շարժման աճի և խորացման նկատմամբ: Միևնույն ժամանակ բնորոշ է, որ չմիանալու շարժումն այժմ արդեն մեղադրվում է ոչ թե չեզոքականության, այլ իր հիմնական կոչումից՝ «գերտերություններից հավասարաչափ տարածություն պահպանելուց» նահանջելու համար: Կարծես ճակատագրի ծաղրը լինի, որ չմիանալու շարժման ղեկավարների նոր սերնդի դեմ զայրույթն իմպերիալիզմի գաղափարախոսներին հասցրել է այնտեղ, որ սրանք այժմ կոչ են անում այդ արվեստը սովորել Բանդունգի սերնդից, Ներուից, Նասերից: Շարժումն այժմ մեղադրվում է այն բանում, որ նրա «չեզոքականությունը բլոկների նկատմամբ» ձևական է դառնում:

Իմպերիալիզմի գաղափարախոսների հիասթափությունն ու զայրույթը հասկանալի են: Շարժման հստակ հակաիմպերիալիստական կողմնորոշումը համատեղվում է համաշխարհային հակաիմպերիալիստական մյուս ուժերին մերձենալու և կապերը սերտացնելու կուրսի հետ: Ահա թե ինչու Ուոլտի Կլեմենսը շեշտում է, որ «չմիանալու շարժումը գոյություն ունի և կունենա առնվազն այնքան ժամանակ, քանի դեռ գերտերությունների դաշինքները սպառնալիք են ստեղծում մյուս երկրների համար» և խորհուրդ է տալիս. «...Շարժումը պետք է մերժողականությունից (խոսքով և գործով) անցնի պոզիտիվ ծրագրերի... բլոկների քաղաքականության նկատմամբ ողջ շարժման շրջանակներում»: Այստեղ արտահայտված են չմիանալու շարժմանը հակասոցիալիստական, հակասովետական բնույթի որոշումներ պարտադրելու իմպերիալիզմի անիրականալի հույսերը:

Իրոք, չեզոքականության և չմիանալու շարժման, դրանց՝ որպես միջազգային կյանքում միմյանցից տարբեր ըմբռնումներ բովանդակող երևույթների, հարաբերակցության քննարկումը կօգնի ավելի խոր ներթափանցել տվյալ հարցի շուրջ արդի գաղափարախոսական պայքարի էության մեջ: Չեզոքականությունն իր դասական արտահայտությունում նշանակում է անձև, պասսիվ պացիֆիզմ, որը գլխավորապես հետամտում է փրկել գոյությունը, պահպանել ու ամրապնդել անկախությունը: Չմիանալու շարժումն սկզբից ևեթ չէր կարող չեզոք լինել՝ քաղաքական անկախություն ձեռք բերելու հաջորդ օրն իսկ ազատագրված երկրների առջև ծառացած խնդիրների բնույթի պատճառով: Ազատագրված երկրների ակտիվ, կոնստրուկտիվ արտաքին քաղաքականությունը, միջազգային հարաբերությունների զարգացման բնույթն ու միտումները, նրանց քաղաքական ու տնտեսական դիրքն աշխարհում կենսականորեն կարևոր այն գործոններն են, որոնք վճռականորեն պայմանավորում են ներքին բարդ խնդիրների՝ հետամնացության ու կախվածության հաղթահարման, սոցիալական պրոգրեսի, ազգային վերածնության պրոբլեմների հաջող լուծման հնարավորությունները:

Միանգամայն հասկանալի է, որ այնպիսի բարդ, նորատի երևույթում, ինչպիսին չմիանալու շարժումն է, չէին կարող չդրսևորվել չեզոքականության առանձին միտումներ, բայց դրանք չէին շարժման գլխավոր ուղղությունը, տիրապետող սկզբունքները որոշողը: Շարժման ղեկավարներն սկզբից ևեթ դրա բնույթի վերաբերյալ տարակուսանքներ ու տատանումներ չեն ունեցել: Ջ. Ներուն հստակորեն սահմանել է իր դիրքորոշումն այդ հարցում: Նա բացատրել է, որ եթե Հնդկաստանը հայտարարել է, թե ինքը «չի հարում խմբակցություններից ոչ մեկին», ապա դա ոչ մի ընդհանուր բան չունի չեզոքականության, պասսիվության կամ միջազգային գործերում «մեկուսացածության հետ, չի նշանակում «նստել երկու աթոռի միջև»: Ընդհանուր համաշխարհային գործերը լուծելիս, միջազգային հարաբերությունների պրոգրեսիվ փոփոխության հարցում նա, ի դեմս չմիանալու շարժման, Հնդկաստանի համար տեսնում էր ակտիվ, կոնստրուկտիվ, ինքնուրույն կերպով հանդես գալու հնարավորություն: Այս առումով բնորոշ է նաև Ջ. Ներուի այլ ասույթը. «Այնտեղ, որտեղ կատարվում են ագրեսիա, ճնշում, շահագործում, խտրականություն և անարդարություն, մենք չեզոք լինել չենք կարող»:

Նույնիսկ 1946 թ. սեպտեմբերին Դելիի ռադիոյով ելույթի ժամանակ Ջ. Ներուի առաջադրած այն դրույթը, թե Հնդկաստանի շահերը պահանջում են համաշխարհային ասպարեզում «հեռու մնալ... միմյանց հակադիր խմբակցություններից», միայն արտաքնապես է չեզոքական թվում: Իրականում, սոցիալիստական երկրների դեմ իմպերիալիզմի բորբոքած «սառը պատերազմի» կոնկրետ պայմաններում, երբ իմպերիալիստական քաղաքագետները, մասնավորապես Ջ. Դալեսը, հարց էին դնում, թե «ով մեզ հետ չէ՝ մեր դեմ է», Ջ. Ներուի հռչակած դիրքորոշումը բացահայտում էր իր հակաիմպերիալիստական հատկանիշներն ու միտումները: Այդ է պերճախոս կերպով վկայում Ջ. Դալեսի կոպիտ արձագանքը, որը չմիանալու դիրքորոշումը որակեց իբրև «անբարոյական»: Բնութագրական է նաև ամերիկյան հակակոմունիստ քաղաքաբան Հանս Մորգենթաուի այն հայտարարությունը, թե չմիանալու շարժումը «ծածուկ միացել է սովետական բլոկին» (H. Morgenthau, Critical lookat the New Neutralism, New York Times Magazin, August 27, 1961, p.p. 25, 76—77):

Ինչ վերաբերում է չմիանալու ըմբռնմանն իր «ժխտող» ասպեկտի՝ ամենից առաջ որպես մեծ տերությունների ստեղծած բլոկներին չմիանալու առումով, ապա այն ևս չի վկայում չեզոքականության մասին: Սարադա Միտրայի «Բանդունգի գաղափարները և մեր օրերի իրողությունները» հոդվածում այդ առթիվ արտահայտած դատողության հետ չի կարելի չհամաձայնել: Ազատագրված երկրները, նշում է նա, ըստ էության ընտրության հնարավորություն չունեին, թե ո՞ր բլոկներին միանան կամ՝ ոչ: Ասիական կամ աֆրիկյան (առավել ևս լատինաամերիկյան) մայր ցամաքներում չկար, ինչպես և այժմ չկա, Սովետական Միության կողմից ստեղծած ոչ մի ռազմական բլոկ: Կային միայն ԱՄՆ-ի իմպերիալիզմի ստեղծած բլոկները՝ ՍԷԱՏՕ-ն և Բաղդադի պակտը: Եվ ազատագրված երկրների համար խոսք կարող էր լինել միայն մեկ բանի մասին՝ միանա՞լ այդ բլոկներին, թե՞ մնալ դրանցից դուրս: Այս վերջին դիրքորոշումն էլ ստացավ «չմիանալու» անունը, շեշտում է Ս. Միտրան (տե՛ս «Национально-освободительное движение на пороге 80-х. С кем оно»?, Прага, 1982, стр. 34):

Հասկանալի են «հավասարաչափ հեռացածության», «հավասար վտանգավորության» ըմբռնումների արհեստականությունը, միտումնավորությունը: Ոչ միայն չմիանալու շարժման հակաիմպերիալիստական ուղղվածությունն է պայմանավորված մեր ողջ դարաշրջանի օբյեկտիվ պահանջմունքներով և օրինաչափություններով, ազատագրված երկրների պատմական առաջընթացի պահանջմունքներով: Պատմական օրինաչափություններով օբյեկտիվորեն և անհրաժեշտաբար պայմանավորված է նաև նրանց մերձեցումը, համագործակցությունը ՍՍՀՄ-ի, սոցիալիզմի երկրների հետ: Նման մերձեցման ու համագործակցության համար առկա է կայուն բազա: Ի՞նչն է կոնկրետ նրանց միավորում: Բ. Ն. Կաուլն իր գրքում առանձնացնում է հետևյալ հանգամանքները. երկու կողմն էլ՝ չմիացած երկրներն ու սոցիալիստական երկրները, կողմնակից են իսկական ու կայուն խաղաղության. երկուստեք լիովին դեմ են ագրեսիայի, ռասայականության, իմպերիալիզմի, գաղութատիրության, նեոգաղութատիրության և գերիշխանության բոլոր ձևերին. երկուսն էլ պաշտպանում են

*յուրաքանչյուր երկրի ազատությունը և ամբողջ աշխարհի յուրաքանչյուր մասի հավասար սոցիալ-տնտեսական պրոգրեսը (*B. N. Kaul, New Horizons of Non-alignment, New Delhi, *1981*, p. *82*)։

*Մեկ այլ հեղինակ՝ Հ. Դ. Մալավիյան նշում է, թե չմիանալու շարժման ամբողջ տրամաբանությունը պահանջում է, որպեսզի այն ավելի ու ավելի ամրապնդի համերաշխության իր կապերը խաղաղության, պրոգրեսի և սոցիալական արդարության բոլոր ուժերի հետ։ Միայն նման ձևով այն կկարողանա պահպանել և ուժեղացնել իր նշանակությունը որպես միջազգային գործերում իբրև դրական ու անկախ գործոն, իր ներդրումն ունենալ խաղաղության ամրապնդման մեջ, իմպերիալիզմի, գաղութատիրության, ռասայականության դեմ պայքարի գործում, այսինքն՝ այն նպատակներին հասնելու գործում, հանուն որոնց և առաջացել է ինքը՝ շարժումը (*H. D. Malaviya, Non-alignment onward March, New Delhi, *1981*, p. *91*)։

*Չմիացած երկրների VII կոնֆերանսի նախագահ Ինդիրա Գանդիին սովետական կառավարության և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հղած համատեղ ուղերձում շեշտված է, որ «Սովետական Միությունում միշտ ջերմ աջակցություն են գտել ու շարունակում են գտնել չմիանալու շարժման ջանքերը հանուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության, հանուն սպառազինությունների մրցավազքի դադարեցման և զինաթափման, հանուն արդարացի դեմոկրատական հիմունքներով միջազգային տնտեսական հարաբերությունների վերակառուցման, հանուն լրիվ և համակողմանի ապագաղութացման մղվող պայքարում»։ Սա է սոցիալիստական երկրների սկզբունքային դիրքորոշումը։ Միայն բոլոր խաղաղասեր երկրների ու ժողովուրդների համատեղ ջանքերով կարելի է խափանել ագրեսիվ ուժերի գործողությունները, իրադարձությունների ընթացքը շրջել միջազգային լարվածության սաստկացումից դեպի թուլացում, բախումների սրումից դեպի կարգավորում, ամենուրեք խաղաղ գոյակցության սկզբունքները ներդնել միջազգային հարաբերությունների պրակտիկայում։ Իմպերիալիստական գաղափարախոսությանն ու քաղաքականությանը չի հաջողվի պառակտել արդիականության մեծ հեղափոխական դաշինքը, կասեցնել ժողովուրդների պայքարը հանուն խաղաղության, դեմոկրատիայի, ազգային-ազատագրման, մարդկության առաջընթացի։*

---



# ԲՅՈՒՐԵՂԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՈՒՂՈՐԴՆԵՐՈՒՄ

**Ս. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**

ՏԱՐԻՆԵՐ ԱՌԱՋ, Մոսկվայում, Կրոպոտկինի փողոցի վրա գտնվող գիտնականների տանը, նիստերի ընդմիջման ժամանակ ես և խոշոր գիտնականներից մեկը զրուցում էինք՝ կանգնած միջանցքի անկյունում։ Ընկերս դեպքեր էր պատմում այն մասին, թե տարբեր գիտաշխատողներ ինչպես են արձագանքում քննադատությանը։

— Ընդհանրապես բարձր գնահատելով տաղանդավոր հայրենակիցներից մեկի աշխատությունը,— շարունակեց նա,— ես գտնում էի, որ որոշ թերություններ կան նրա դատողություններում։ Եվ իմ հոդվածում կասկածանքս էի հայտնել հեղինակի բերած որոշ փաստարկների վերաբերյալ։

— Իսկ դու գիտե՞ր նրան,— հարցրի ես։

— Իհարկե՝ ոչ։ Միայն ժամանակակից բյուրեղագիտության հիմնարար բաժիններից մեկը՝ դրանց ֆիզիկական, ավելի շուտ ֆիզիկաքիմիական պրոբլեմները շոշափող աշխատության առնչությամբ։ Որպես կանոն, նման դեպքերում հաջորդում են «տուժողի» կամ հեղինակավոր միջնորդի հեռախոսազանգերը։

— Դե, ինչպես, նա զանգահարե՞ց։

— Ո՛չ։

Բայց ա՛յ քեզ զուգադիպությո՛ւն։ Իրոք, մենք խիստ զարմացանք, երբ մեզ մոտեցավ երիտասարդ մի մարդ՝ ամաչկոտ, նուրբ ժըպիտով, խելացի, մեծ ու փայլուն աչքերով։ Նայելով ընկերոջս՝ ասաց.

— Ներեցեք։ Թույլ տվեք ներկայանալ։ Ես Բաղդասարովն եմ, հեղինակն այն հոդվածի, որի մասին արտահայտվել եք դուք երկու տարի առաջ, գիտական ամսագրում։

Նկատեցի, թե ինչպես ընկերս անհարմար վիճակի մեջ ընկավ, հանդիպելով այն մարդուն, որի աշխատության մասին արտահայտվել էր այնպես, ինչպես թելադրել էր գիտնականի խիղճը։ Հավանաբար այդ պահին նա մտածում էր, թե զուր է վիրավորել երիտասարդին։ Մինչ «տուժողը» շարունակեց.

— Ես երկար խորհել եմ ձեր դիտողությունների շուրջ։ Հարկ եղավ որպես ընդհիմախոս վերլուծել սեփական աշխատանքս։ Արդյո՞ւնքը. ես համոզվեցի, որ դուք ճիշտ եք։

Ընկերոջս դեմքի լարվածությունը չքացավ։

— Դուք օգնեցիք ինձ իմ աշխատության մեջ գտնելու այլ թերիներ ևս։ Այս երկու տարիների ընթացքում ես մշակել եմ ձեզ հայտնի աշխատության տեսական ու կիրառական դրույթները։ Լաբորատոր և կիսագործարանային փորձերը պսակվել են հաջողությամբ։ Ես որոշեցի ծանոթանալ ձեզ հետ և շնորհակալու-



թյունս հայտնել, մտածելով, թե հաճելի կլինի իմանալ այն օգնության մասին, որ դուք ցույց եք տվել ինձ: Հենց որ հրապարակվի նոր տարբերակը, կուղարկեմ ձեզ:

Երբ նա պատրաստվում էր հեռանալ, ես կանգնեցրի նրան:

— Երիտասա՛րդ: Չէ՞ որ մենք ծանոթ ենք:

Այս անգամ զարմացավ բարեկամս:

— Մի քանի տարի առաջ մեզ ծանոթացրել է պրոֆեսոր Ասլանյանը:

— Այո՛, այո՛, իհարկե, Աշոտ Տիգրանովիչը: Ուրախ եմ, որ հանդիպեցինք:

Հեռախոսի համարներ փոխանակելուց հետո Խաչատուր Սահակովիչը գնաց:

Մեզ հիացրեց նրա հարգալիցությունը: Խոսելու ողջ տոնը կրում էր երախտագիտության ու համեստության կնիքը, որը, ցավոք, ոչ բոլոր երիտասարդ գիտաշխատողներին է բնորոշ:

— Ո՞ւմ մտքով կանցներ: Ինչպիսի՜ զուգադիպություն: Ի՜նչ նեղ է աշխարհը,— մըտածում էինք մենք՝ դեռևս հմայված այդ երիտասարդով:

Հաջորդ պատահական հանդիպումը Բաղդասարովի հետ տեղի ունեցավ մեր ընկերներից մեկի ծննդյան օրը: Հաճելի զրույց էր սկսվել: Մոտ մեկ ժամ անց Խաչատուր Սահակովիչը ներողություն խնդրեց, պատրաստվելով գնալ: Լսվեցին առարկություններ:

— Դուք պատկերացնել իսկ չեք կարող, թե ինչպիսի ցավով եմ հեռանում ձեզնից: Այսպիսի բան մոսկովյան պայմաններում շատ չի պատահում: Ժամանակը սուղ է: Այսօր տանը մայրս մենակ է: Արդեն ութսունհինգի մեջ է: Խոստացել եմ ընթրել նրա հետ միասին: Ճարել եմ նրա սիրած որոշ բաներ: Ինչպե՞ս կարող եմ նեղացնել նրան: Սովորաբար ինստիտուտից ուշ եմ վերադառնում և նրան արթուն չեմ գտնում:

Եվ Բաղդասարովը գնաց:

Կան հանդիպումներ, որ երբեք չեն մոռացվում, կան արժեքներ, որ փողով ձեռք չես բերի: Խիղճն ու ազնվությունն են դրանք: Ես շնորհակալ եմ բախտից և՛ Գիտնականների տանը, և՛ մեր ընկերոջ տանը կայացած այս երկու հանդիպումների համար, ծերացած մոր նկատմամբ գիտնականի տածած որդիական սիրո համար:

Ուրախ եմ, որ հետագայում, Խաչատուր Սահակովիչի հետ ունեցած հետաքրքրական զրույցների արդյունքը եղավ այն, որ վերջապես ինձ հաջողվեց պատմել նրա մասին, ամենևին էլ չհավակնելով լիովին ընդգրկել նրա բազմակողմանի, բոլորանվեր գործունեությունը:



Սակայն ամենից առաջ այն գիտության մասին, որն այնպես հրապուրել է նրան:

Հնուց ի վեր բյուրեղները, ինչպես ասել է ռուս ականավոր բյուրեղագետ Ե. Ս. Ֆեդորովը, «իրենց սիմետրիկ փայլով» գրավել են մարդկանց ուշադրությունը: Ակադեմիկոս Ա. Ե. Ֆերսմանը գրել է. «Հին կուլտուրաներում տարբեր էր փայլաքարի, ակնեղենի և գունավոր քարի գործածությունը, բայց մարդկային պատմության ամենանախնական շրջաններից այն ուներ երեք հիմնական նշանակություն. **թալիսմանի**— որպես հազվագյուտ քարի նկատմամբ խորհրդապաշտական վերաբերմունքի արտահայտություն. **կնիքի**— սեփականության ըմբռնման արտահայտություն. **զարդի**— գեղեցկության, ներդաշնակության հանդեպ մարդու տածած սիրո արտահայտություն»:

Բնական բյուրեղներով հարուստ առաջին երկրներն էին Հնդկաստանը, նրա հարևան Բիրման և Տաիլանդը: Ցեյլոնը պատկերացնում էին իբրև տպազիոնի հեքիաթային կղզի: **Արևելյան Հնդկաստանի հրաշալիքները** գրքում հեղինակը՝ Ռոբերտ դը Բերկենը 1961 թվականին գրել է. «Ամեն օր մենք տեսնում ենք աշխարհի մի ծայրից մյուսը ձգտող համարձակ մարդկանց՝ վտանգներին ու ռիսկին ընդառաջ, որպիսիք անխուսափելի են, եթե կամենում ես հարստանալ սքանչելի թանկագին քարերով, քանի որ չկա այդ քարերից առավել գեղեցիկ... բոլոր առումներով առավել օգտակար բան...»:

Անշուշտ, այս տողերի հեղինակի մտքով իսկ չէր անցնում, թե որքան արժեքավոր են բյուրեղները: Այն բացահայտվեց մեր ժամանակներում, ֆիզիկական ու քիմիական այն սքանչելի հատկությունների գամմայում, որի շնորհիվ բյուրեղներն ունակ են առաջացնելու, ուժեղացնելու, վերափոխելու, մտապահելու ու փոխանցելու էներգիայի տարբեր տեսակներ:

Գիտության և տեխնիկայի բնագավառում այժմ լայն է բյուրեղների կիրառության շրջանակը: Օրինակ, անհնար է պատկերացնել կիսահաղորդիչների արդյունաբերության զարգացումը՝ առանց կրեմնիումի և գերմանիումի բյուրեղների, որոնց շնորհիվ և ամրապնդվել է այդ արդյունաբերությունը:

Խաչատուր Սահակովիչը ծնվել է 1929 թ. մայիսի 21-ին, Սամարղանդ քաղաքում, բանվորի ընտանիքում: Առաջին համաշխարհային պատերազմի ողբերգական տարիներին նրա ծնողները, մի կերպ փրկվելով կոտորածից, Կաղզըվանից (Արևմտյան Հայաստան) հասել էին Հյուսիսային Կովկաս, այնտեղից, պապի խորհրդով, բնակություն հաստատել Սամարղանդում: Եղբայրը, որ ծնվել էր 1921 թ., զոհվել է 1941 թ. օգոստոսին, Կանև քաղաքում, Դնեպրի ափերը միացնող կամուրջը գերմանացիներից պաշտպանելիս: Քույրն ապրում է Մոսկվայում: Նա վերջացրել է Մոսկվայի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետը: Խաչատուր Սահակովիչի որդին գիտական աշխատող է ՍՍՀՄ ԳԱ ֆիզիկայի ինստիտուտում: Երկու թոռներից ավագը երեք տարեկան է:

— Մանկությունս անցել է դժվարին տարիներում, շա՜տ բաներ չկային,— այդպես սկսեց պատմել իր մասին պրոֆեսոր Բաղդասարովը (Բաղդասարյանը):— Տասնամյակը ես ավարտել եմ Սամարղանդում: Պատանեկությունս համընկել է Հայրենական մեծ պատերազմին: Չորրորդ դասարանում ես սովորում էի երաժշտական խմբակում: Մենք համերգներ էինք տալիս էվակուահոսպիտալներում, որպիսիք շատ կային Սամարղանդում. մեր համերգները մեծ բավականություն էին պատճառում վիրավորներին: Հաճախ մետաղաջարդոն էինք հավաքում, ջանում էինք լավ սովորել: Սովորելն ինձ համար բավականին հեշտ էր, բայց դպրոցում արդեն ակներև էր իմ հակումը տեխնիկական գիտությունների նկատմամբ: Միաժամանակ ես շատ էի սիրում երաժշտությունը, սիրում էի մանդոլինա նվագել, իսկ նկարչությամբ հրապուրվել եմ համարյա մինչև տասներորդ դասարանը: Իմ մի քանի նկարներ ցուցադրվել են դպրոցական ցուցահանդեսներում: Իններորդ-տասներորդ դասարաններում ես երազում էի ուսումս շարունակել Մոսկվայում, քանի որ այնտեղ շատ էին տարբեր բարձրագույն ուսումնական հաստատությունները: Մասնավորապես շատ էի ցանկանում սովորել օդաչուական ինստիտուտում, թերևս այն պատճառով, որ զոհված եղբայրս երազում էր օդաչու դառնալ: Գուցե դրա համար էլ ուզում էի ավիակոնստրուկտոր դառնալ: Այդ ժամանակ ողջ երիտասարդությունը տարված էր օդագնացությամբ, և ես էլ բացառություն չէի:

Սամարղանդից Մոսկվա ես մեկնեցի գնացքով, շատ ծանր պայմաններում, 15 օրում, բեռնատար վագոնով: Ճանապարհին հիվանդացա մալարիայով, իսկ հետո Մոսկվայում ես երկար ժամանակ վատ էի զգում ինձ: Երբ հասա Մոսկվա, բուհական քննություններն արդեն ավարտվել էին, և մի քանի ինստիտուտներ էին միայն շարունակում ուսանողներ ժողովել, դրանց թվում էր և պողպատի ինստիտուտը: Ուստի ես ընդունվեցի այդ ինստիտուտը, որոշ իմաստով լրիվ պատահականորեն: Ճիշտ է, դեռևս մանկուց ես պատկերացում ունեի մետաղագործության մասին, քանի որ պապս և ապուպապս պղնձագործներ են եղել: Տանը ես հաճախ էի լսել պղնձաձուլության և այդ պրոցեսի առանձնահատկությունների մասին: Թերևս այդ հիշողություններն էլ մեծ դեր խաղացին իմ այդ ինստիտուտն ընտրելու գործում: Իմ կարծիքով, չնայած ընտրության պատահականությանը, ես շատ շահեցի հատկապես պողպատի ինստիտուտն ընդունվելով: Շահեցի նրանով, որ այս ինստիտուտում բարձր մակարդակով էին ավանդվում տեխնիկական առարկաները և հատկապես մաթեմատիկան, ֆիզիկան, քիմիան, նյութերի դիմադրությունը, մետաղագիտությունը: Այս ինստիտուտում ստացածս բոլոր գիտելիքները հետագայում ինձ շատ պետք եկան: Տեխնոլոգիական, և ոչ զուտ գիտական, արտադրության պահանջներին մոտ կրթությունն անդրադարձավ իմ հետագա ողջ գործունեության վրա. զուտ գիտական հետազոտություններից հետո ես միշտ պահանջ եմ զգում աշխատանքի արդյունքները հասցնելու արդյունաբերական ներդրման կամ գոնե փորձնական արտադրության: Այդպիսին է պողպատի ինստիտուտում ստացածս դաստիարակության, կրթության յուրահատկությունը:

— Խոշոր մետաղագործներից ո՞վ է ամենից շատ մոտ ձեր սրտին,— հարցրի ես:

— Ակադեմիկոսներ Բարդինը, Գուդցովը և ուրիշներ: Նրանք ստեղծել են կրթության լավագույն մթնոլորտ: Ունկնդրել այդպիսի կորիֆեյների դասախոսություններն արդեն բավական է հետագայում որակյալ մասնագետ դառնալու համար: Երկրորդ, հույժ կարևոր հանգամանքն այն է, որ 1946 թվականին, երբ ընդունվեցի ինստիտուտ, զորացրում էր տեղի ունենում: Բանակից ուսումնական հաստատություններն էին գալիս երեկվա զինվորները՝ հասուն, նպատակադրված, բացառիկ աշխատասիրությամբ օժտված: Գտնվելով այդպիսի կոլեկտիվում՝ ես շատ բան ձեռք բերեցի: Այդ կատարյալ կյանքի դպրոց էր, որովհետև ընկերներիցս յուրաքանչյուրը կյանքի վիթխարի փորձ ուներ: Ես ընդունվեցի պողպատի ինստիտուտի մետաղագործական ֆակուլտետը: Այդ ժամանակ երկու ֆակուլտետ կար միայն— տեխնոլոգիական և մետաղագործական: Այստեղ ես աշխատում էի հզոր սարքերի վրա: Մետաղագործությունն այն ժամանակ վերելք էր ապրում: Արդյունաբերության առաջատարն էր այն: Դրա համար էլ ես ընտրեցի մետաղագործության ֆակուլտետը:

— Ե՞րբ դուք հրապուրվեցիք գիտական գործունեությամբ:

— Սովորելու ընթացքում: Իմ դիպլոմային աշխատանքի նպատակն էր մետաղային ֆիզիկայի ընդհանուր տեսական օրինաչափությունների որոնումն ու հայտնաբերումը: Վերջին կուրսերում ես շատ էի տարված մետաղային ֆիզիկայով: Երբ ինստիտուտը բաշխում էր կատարում, ես ասացի, որ ցանկանում եմ մետաղային ֆիզիկայով զբաղվել: Սակայն ինստիտուտն ավարտելուց հետո ինձ ուղարկեցին Դմիտրովի էքսկավատորային գործարանի ձուլման արտադրամասը, որտեղ աշխատեցի որպես հերթափոխային վարպետ, իսկ մեկ տարի անց դարձա արտադրամասի տեխնոլոգ: Ինձ վիճակվեց ի մոտո զբաղվել մետաղների պնդացման ժամանակ խոտանի առաջացման պատճառների հայտնաբերմամբ: Այդ գործարանում աշխատեցի մոտ մեկ ու կես տարի: Մեր գործարանը ենթարկվում էր գլխէքսկավատոր վարչությանը: Վարչության գլխավոր մետաղագործը ծանր հիվանդացավ: Եվ այդ ժամանակ բոլորովին անսպասելիորեն շինարարական և ճանապարհային մեքենաշինության կադրերի բաժնի պետը կարգադրեց ժամանակավորապես տեղափոխել ինձ գլխավոր վարչություն՝ փոխարինելու գլխավոր մետաղագործին:

Այդ ժամանակ գլխէքսկավատոր վարչությանը ենթարկվում էին ինը գործարաններ և, անշուշտ, ծագեցին և՛ վարչական, և՛ զուտ արտադրական շատ լուրջ հարցեր, որոնցով անհրաժեշտ էր անհապաղ զբաղվել: Շատ էի լինում գործարաններում, հանգամանորեն ծանոթանում էի գործերի վիճակին, բացահայտում առանձին արտադրամասերի ետ մնալու պատճառները: Այդ աշխատանքի ընթացքում կոփվեցի, ընդլայնեցի մտահորիզոնս: Այդ ամենը՝ մինչև 1953 թվականը:

— Ձեր կյանքում շատ են անակնկալ շրջադարձերը,— նկատեցի ես:

— Ճակատագրի հեգնա՞նք,— ժպտալով պատասխանեց Բաղդասարովը,— 1953 թվականի վերջին հայտարարություն կարդացի ՍՍՀՄ ԳԱ բյուրեղագիտության ինստիտուտում «ռենտգենակառուցվածքային անալիզի» մասնագիտության գծով ասպիրանտուրայի ընդունելության մասին: Ռենտգենակառուցվածքային անալիզն ինձ արդեն ծանոթ էր ինստիտուտից, ուր հատուկ դասընթաց էինք անցել բյուրեղագիտությունից: Ես կամեցա շարունակել կրթությունս և զբաղվել առավել հիմնարար գիտական խնդիրներով. առանց դրանք իմանալու հնարավոր չէր հասկանալ բյուրեղացման պրոցեսների մեխանիզմը: Ռենտգենակառուցվածքային անալիզի մարզում կատարվող աշխատանքները ղեկավարում էր աշխարհահռչակ ակադեմիկոս Նիկոլայ Վասիլևիչ Բելովը: Ուստի և, բնականաբար, ես ցանկանում էի լինել այդ ականավոր մասնագետի դպրոցում: Սակայն, երբ ես ընդունվեցի ասպիրանտուրա, ակադեմիկոս Բելովի լաբորատորիայում տեղ չկար: Նրա մոտ ընդունվել էին իր ամբիոնի շրջանավարտները՝ Գորկու համալսարանից, ուր նա դասախոսություններ էր կարդում: Ինձ հնարավորություն էր ընձեռված ընտրելու և՛ ուրիշ ղեկավարներ, և՛ այլ թեմաներ ու ուղղություններ: Ես ընտրեցի «Բյուրեղացման և գերձայնային դաշտում լուծվելու պրոցեսների հետազոտությունը»: Ասպիրանտուրայում իմ ղեկավարն էր պրոֆեսոր Ալեքսանդր Պավլովիչ Կապուստինը: Այդ թեման բավական հետաքրքրական էր, քանի որ բյուրեղացման պրոցեսների վրա գերձայնի ազդեցության հետ կապված շատ հարցեր հայտնի չէին. չնայած արդեն բացահայտվել էին հետաքրքրական երևույթներ, մասնավորապես գերձայնի ազդեցությամբ բյուրեղացման կենտրոնների առաջացման պրոցեսները:

Այդ հետազոտությունները կատարելիս ես աշխատում էի բյուրեղագիտության ինստիտուտի դիրեկտոր, ականավոր բյուրեղագետ ակադեմիկոս Ալեքսեյ Վասիլևիչ Շուբնիկովի լաբորատորիայում: Ալեքսեյ Վասիլևիչը մեծ ուշադրություն էր նվիրում երիտասարդությանը: Շատ ժամանակ և ուշադրություն է հատկացրել նա ինձ: Գործնականում իմ աշխատանքային ամեն մի օրն սկսվում էր Ալեքսեյ Վասիլևիչի հետ հանդիպումով: Նա մոտենում էր իմ աշխատատեղին և հարցնում նոր արդյունքների մասին, քննարկում ապագա փորձարկումները, հուսադրում էր անհաջողությունների դեպքում, որպիսիք գիտության մեջ, ինչպես հայտնի է, ավելի շատ են լինում, քան հաջողությունները: Այդ ամենով նա զգալիորեն նպաստեց այն բանին, որ դիսերտացիոն աշխատանքը ես կատարեցի ժամանակին:

Այդ աշխատանքում ընդհանրացված էին գերձայնի ազդեցության տակ ընթացող պրոցեսների վերաբերյալ ուսումնասիրությունները— բյուրեղների քայքայումը գերձայնային դաշտում, բյուրեղների լուծումը և այլն: Ինձ առաջինը հաջողվեց հայտնաբերել բյուրեղների քայքայման հաճախականության և ամպլիտուդայնության հատկությունը: Այդ աշխատանքի արդյունքները լայնորեն տարածվեցին մետաղագործության մեջ՝ գերձայնային դաշտում մետաղների բյուրեղացման ժամանակ: Պարզվեց, թե հաճախականության ինչ-



պիսի դիապազոնում է այս կամ այն երևույթը հասնում իր առավելագույն դրսևորմանը: Ինձ հաջողվեց նաև հայտնաբերել նոր երևույթներ՝ կապված գերձայնային դաշտում տեղախախտումների երևան գալու հետ: Մեթոդիկան շատ պարզ էր, հուսալի և լայնորեն տարածվեց կիսահաղորդչային նյութագիտության ոլորտում: Մշակումներ եղան նաև գերձայնային դաշտում բյուրեղների լուծման վերաբերյալ, ուսումնասիրվեց լուծման մեխանիզմը: Ապացուցվեց, որ գերձայնի ներգործությամբ լուծման արագությունն աճում է տասնյակ անգամ:

— Ձեր ավագ գործընկերների վկայությամբ, այդ աշխատանքի ընթացքում դուք արդեն դարձաք բյուրեղների աճման հիմնարար հարցերով զբաղվող ինքնուրույն հետազոտող:

— Ասպիրանտուրան վերջացնելուց և թեկնածուական դիսերտացիան պաշտպանելուց հետո,— ասաց նա,— հասկացա, որ սխալ կլինի սահմանափակվել սոսկ գերձայնի հետ կապված մեթոդիկաներով: Բյուրեղների աճման և փորձարարական բյուրեղագիտության ասպարեզում գործերի վիճակը ցույց էր տալիս, որ այս գիտության մոտակա ապագան զգալիորեն կապված է կայուն, դժվարահալ բյուրեղների հետ: Հիսունական թվականների վերջին զգալիորեն աճեց հետաքրքրությունը դժվարահալ բյուրեղների նկատմամբ, հատկապես գերճշգրիտ օպտիկայի զարգացման առնչությամբ: Այդ ժամանակներում դժվարահալ բյուրեղների արտադրության տեխնոլոգիան ու գիտությունը սաղմնային վիճակում էին: Ուստի որոշեցի զբաղվել դժվարահալ բյուրեղների ստացման պրոբլեմներով: Ես մոտ էի կանգնած այդ հետազոտություններին: Կրթությամբ մետալուրգ էի և քաջածանոթ էի 2500—3000 աստիճան ջերմության ստեղծման մեթոդներին: Ուստի և մեթոդապես պատրաստ էի նշված խնդիրների լուծմանը:

— Ինչի՞ց սկսեցիք այդ, ըստ էության, նոր բնագավառը:

— Ամեն ինչ սկսվեց օպտիկայի համար ֆլյուորիտի բյուրեղներից: Հույժ արժեքավոր դժվարահալ նյութ է այն՝ օժտված հիանալի հաղորդչականությամբ: Դրա ստացման համար ինձ վիճակվեց ստեղծել բարձր ջերմաստիճանային բյուրեղացման համար առաջին հայրենական բյուրեղաստեղծ սարքը: Այն ստեղծվեց մեր կոնստրուկտոր Նիկոլայ Պավլովիչ Իլյինի և լաբորատորիայի աշխատակից Գեորգի Ֆեոդորովիչ Դոբրժանսկու համագործակցությամբ: Այդ ժամանակ ծագեցին լազերային դժվարահալ բյուրեղների ստացման հետ կապված հարցերը: Մեզ մոտ եկավ Նոբելյան մրցանակի դափնեկիր, ակադեմիկոս Ալեքսանդր Միխայլովիչ Պրոխորովը և հրապուրեց ինձ այդ խնդրով: Հույժ հեռանկարային էր համարվում երկվալենտ սամարիով կամ եռվալենտ ուրանով ակտիվացված ֆլյուորիտը: Քանի որ ես արդեն զբաղվել էի ֆլյուորիտով, ապա ինձ համար բնական էր զբաղվել նաև ֆլյուորիտի վրա լազերի ներգործության հարցով: Այդ խնդրի լուծման նպատակով ստեղծվեց մի խումբ, որը վերածվեց բարձր ջերմաստիճանային բյուրեղաստեղծման լաբորատորիայի: Այն կազմակերպվեց 1964 թվականին: Շատ բեղմնավոր էին ինձ համար 1960—1964 թվականները: Նախ՝ մեզ հաջողվեց լուծել լազերային սուտակի հույժ սկզբունքային պրոբլեմը: Անհրաժեշտ էր ստեղծել հայրենական առաջին կարծրամարմին լազերը: Նման լազերի պահանջը սաստիկ հրատապ էր: Պարզվեց, որ այդ խնդիրն այնքան էլ դյուրին չէ: Պետք էր կոմպլեքսայնորեն լուծել մի շարք հարցեր, սկսած սարքերի ստեղծումից, աճեցման մեթոդներից, բյուրեղների շիկաթափկացման մեթոդներից և շիկաթափկացման սարքերից, բյուրեղների որակի վերահսկման մեթոդներից և այլն: Սուտակը մեզ համար հանդիսացավ այն ելանյութը, որով մենք հայտնագործեցինք նյութագիտության այբուբենը՝ քվանտային էլեկտրոնիկայի համար:

Սուտակին զուգահեռ մենք լուծեցինք նաև վոլֆրամային կալցիումի, վանադատ իտրիի և այլ նյութերի լազերային բյուրեղների ստացման խնդիրը: Այդ ժամանակ ծագեց իտրիալյումինային գնդիկների (ԻԱԳ) լազերային բյուրեղների ստացման խնդիրը, որը կարևոր էր նրանով, որ ԻԱԳ-ի բյուրեղներն ինքնին օժտված էին բացառիկ լազերային հատկություններով, ցածր վերարտադրողականությամբ և օգտակար գործողության բարձր գործակցով: Այդ խնդրի լուծման համար հարկ եղավ կրկին պատրաստել բյուրեղաստեղծ սարքեր, մշակել բյուրեղացման ու աճեցման տեխնոլոգիայի նոր մեթոդներ, ապա ստեղծել լազեր և ուսումնասիրել դրանց հատկությունները: Այս բոլոր աշխատանքները կատարվեցին մեր լաբորատորիայում: Բանն այն է, որ այս պրոբլեմով ինտենսիվ կերպով զբաղվում էին նաև Բելլի լաբորատորիայի (ԱՄՆ) գիտնականները: Այս բյուրեղներն ստանալու համար նրանք ղեկավարվում էին Չոխրալսկու՝ իրիդիումային հալոցքանոթների հալվածքի բյուրեղների կորզմամբ: Գնահատելով ամերիկյան այս տեխնոլոգիան՝ ես հասկացա, որ նման բյուրեղների զանգվածային ստեղծման համար պետք է հրաժարվել իրիդիումից, քանի որ այն բնության հույժ հազվագյուտ մետաղներից է և շատ թանկ: Ծավալվեցին ֆի-

զիկաքիմիական հատուկ հետազոտություններ իրիդիումի փոխարինիչներ գտնելու նպատակով։ Իրիդիումը փոխարինվեց այլ, ավելի էժան մետաղով։ Այս խնդրի լուծման առնչությամբ մշակվեցին բյուրեղացման նոր մեթոդներ, որոնցից առավել հեռանկարայինը հորիզոնական ուղղվածության բյուրեղացման մեթոդն էր։

— Որն արտասահմանում կոչում են Բաղդասարովի մեթոդ,— նկատեցի ես։

— Այդ մեթոդի օգնությամբ մենք ստանում ենք գնդի և լեյկոշափյուղայի խոշոր բյուրեղներ։

1965 և 1966 թվականներին ինձ գործուղեցին ԱՄՆ՝ ծանոթանալու քվանտային էլեկտրոնիկայի համար բյուրեղների ստեղծման բնագավառի ամերիկյան նորագույն հետազոտություններին և բյուրեղների աճման ասպարեզի այլ աշխատանքների։ Չորսամսյա գործուղման ընթացքում ականատես եղա հետաքրքրական շատ աշխատանքների։ Հնարավորություն ունեցա ծանոթանալու և շփվելու բյուրեղների աճով զբաղվող նշանավոր մասնագետների հետ, գնահատելու այն ուղղությունը, որը զարգացնում էի ես մեզ մոտ։ Ինձ համար պարզ դարձավ, որ մեր ուղին հիմնովին տարբեր է ամերիկյանից։ Մեր լաբորատորիան մրցում էր ամերիկյան ֆիրմաների հետ ֆիզիկական նոր հատկություններով նոր բյուրեղների ստեղծման ասպարեզում։ Ամերիկյան ուղևորությունս ճիշտ ժամանակին էր։ Վերստին համոզվեցի, որ մեր ընտրած ճանապարհը ճիշտ է ու բեղմնավոր։ Հետագայում, լուծելով լազերային գնդի ստեղծման խնդիրը, նույն մեթոդների օգնությամբ մեզ հաջողվեց լուծել նաև գոհարեղենի (ակնեղենի) բյուրեղների և մի քանի այլ պրոբլեմներ։ Բյուրեղացման կարևորագույն խնդիրներից մեկը շափյուղային չտարատեղվող, օպտիկական բարձրորակ բյուրեղների ստեղծումն էր։ Եվ առաջինը մեզ հաջողվեց այն ստանալ։ Բացի դրանից, գիտականորեն հիմնավորվեց և առաջադրվեց նոր բյուրեղների որոնման խնդիրը՝ օպտիկական և լազերային նպատակներով, որը պսակվեց աշխարհի բոլոր լաբորատորիաների հետազոտած բոլոր բյուրեղների մեծ մասի ստեղծմամբ։

Կարևորագույն խնդիրներից մեկն է նաև խոշոր բյուրեղների ստեղծումը, որոնց ստացման ժամանակ համեմատաբար հեշտ է լուծվում դրանց բարձր օպտիկական միատարրության պրոբլեմը։ Բայց առավել կարևոր է այն, որ մի շարք տեխնիկական ուղղությունների զարգացումն անհնար էր առանց խոշոր բյուրեղների։ Մենք կանխատեսել էինք այդ ամենը և այդ խնդիրների ծագումից բավականին առաջ արդեն ստացել էինք շատ խոշոր լեյկոշափյուղա, այսինքն՝ սպիտակ թափանցիկ շերտեր։ Իսկ 5—6 տարի անց իր ողջ հրատապությամբ հառնեց շափյուղյա խոշոր շերտերի և առանցքների պրոբլեմը։ Օպտիկայի և քվանտային էլեկտրոնիկայի հետագա առաջընթացն այժմ հնարավոր չէ պատկերացնել առանց խոշոր բյուրեղների։

Այս բոլոր պրոբլեմները լուծվում էին բարձրջերմաստիճանային բյուրեղացման պրոցեսների հետազոտման զուգահեռ։ Այդ հնարավորություն ընձեռեց Խաչատուր Սահակովիչին 1970 թվականին հաջողությամբ պաշտպանելու դիսերտացիա՝ ֆիզիկամաթեմատիկական գիտությունների դոկտորի գիտական աստիճան ստանալու համար։ 1972 թ. շափյուղայի խոշոր բյուրեղների ստեղծման և հետազոտման համար չորս այլ աշխատակիցների հետ միասին նա արժանանում է ՍՍՀՄ պետական մրցանակի։ 70-ական թվականների վերջերին, հնգամյակում ձեռք բերած հաջողությունների համար, Բաղդասարովը պարգևատրվում է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։ Երկու անգամ նա պարգևատրվել է ՍՍՀՄ ժողտնտեսության ցուցահանդեսի ոսկե մեդալով։ Նրա գիտական աշխատությունների ու հրապարակումների թիվն անցնում է 150-ից։ Հեղինակցի հետ միասին գրել է երկու ինքնատիպ մենագրություն։ «Սուտակ և շափյուղա» մենագրությունը թարգմանվել է անգլերեն, մյուսը հրապարակվել է ԳԴՀ-ում։ Ունի ավելի քան 50 հեղինակային իրավունք։ Այդ գյուտերը լայնորեն օգտագործվում են արդյունաբերության մեջ։ Մասնավորապես այդ արդյունքների հիման վրա ՍՍՀՄ-ում ստեղծվել են լեյկոշափյուղայի և իտրի-ալյումինային գնդի, գոհարեղենի բյուրեղներ։

Լեյկոշափյուղայի բյուրեղների ստացման մեթոդը որպես լիցենզիա վաճառվել է ճապոնական «Տոսիբա էլեկտրիկ» խոշոր ֆիրմային։ Այդ ֆիրմայի ձեռնարկությունում կազմակերպված է փորձնական արտադրություն, որտեղ ճապոնական մասնագետները շարունակում են կատարելագործել այդ ուղղությունը։ Այն գնել են նաև Բուլղարիայի արտաքին առևտրական կազմակերպությունները։ Հետաքրքրությունն այդ մեթոդի նկատմամբ հետզհետե աճում է։ Այդ եղանակի լիցենզիայի վաճառման շուրջ բանակցություններ են վարվում իտալական և ֆրանսիական մի շարք ֆիրմաների հետ։ Արտասահմանում լայն ճանաչում է ստացել Բաղդասարովի մեթոդի առաջնայնությունը, մեթոդ, որը պատենտավորված է կապիտալիստական բոլոր խոշոր երկրներում։

— Ինձ հայտնի է գիտության հաջողությունները ժողովրդական տնտեսությանը ծառայեցնելու ձեր բարի ձգտումը։ Ինչպե՞ս եք դուք լուծում այդ հարցը այս դեպքում,— հարցրի ես։

— Դժվարահալ բյուրեղների պրոբլեմի լուծումը,— պատասխանեց գիտնականը,— մենք իրականացրինք արդյունաբերության հետ սերտորեն կապված։ Ունենք մի շարք ձեռնարկություններ, որոնց զարգացումն առնչված է մեր մշակումների հետ։ Օրինակ, Կիրովականի ֆիզիկաքիմիական լաբորատորիայի ստեղծումը և բյուրեղների խոշոր արդյունաբերական արտադրությունը սերտորեն կապված են մեր մշակումների հետ։ Այդ գործարանի համար մենք պատրաստել ենք բարձրորակ մասնագետներ։ Նույնը կամենում եմ ասել Հայաստանի գիտությունների ակադեմիայի ֆիզիկայի ինստիտուտի հետ ունեցած համագործակցության մասին, ինստիտուտն ունի բյուրեղների աճով զբաղվող խոշոր բաժին, որի ստեղծումը ևս արդյունք է այդ ինստիտուտի հետ ունեցած համագործակցության։ Ի վերջո, Երևանի համալսարանին առընթեր ըստեղծված խտացված միջավայրի ինստիտուտը ևս պայմանավորված է մեր գործունեությամբ, քանի որ նրանց համար մենք պատրաստել ենք մոտ 20 բարձրորակ մասնագետներ։ Մենք մասնագետներ ենք պատրաստել նաև այլ հանրապետությունների՝ Ուզբեկստանի, Տաջիկստանի, Բելոռուսիայի, ՌՍՖՍՀ-ի ինստիտուտների համար։

Որպես ղեկավար՝ պրոֆեսոր Բաղդասարովը պատրաստել է գիտության 15 թեկնածուներ։ Նրա լաբորատորիայում բացի իրենից գիտությունների դոկտորներ են դարձել ևս երեք հոգի։ Կադրերի պատրաստման գործը նրանց մոտ հաջող է ընթանում։ Գիտությունների երկու թեկնածու է պատրաստված Վիետնամի համար, երեք՝ Բուլղարիայի։ ՍՍՀՄ տարբեր բուհերից լաբորատորիայում ստաժավորվում են տարեկան 12 ուսանողներ։

Խաչատուր Սահակովիչի աշխատանքի ոճը համապատասխանում է նրա ուսուցիչների՝ ակադեմիկոսներ՝ Ա. Վ. Շուբնիկովի, Ն. Վ. Բելովի, Ա. Մ. Պրոխորովի աշխատանքի ոճին՝ հետազոտողին ազատ մտածելու իրավունք ընձեռող լայն դեմոկրատիզմին, ոճ, որի շնորհիվ բացահայտվում են առանձին աշխատողների ստեղծագործական հնարավորությունները, ստեղծագործական նախաձեռնությունը։ Բաղդասարովը ձգտում է իր բոլոր աշխատակիցներին, հատկապես երիտասարդներին, համակել ինքնուրույն աշխատելու ցանկությամբ։ Միջամտում է միայն այն ժամանակ, երբ տեսնում է, որ մարդը գլուխ չի հանում։ Տարվա վերջին սեմինարներում ըստուգվում է յուրաքանչյուր աշխատակցի գործունեությունը։ Միշտ չէ, որ գիտությունը կարող է անմիջապես արդյունք տալ։ Երբեմն աշխատակիցը մեկ-երկու տարի ոչ մի արդյունք չի տալիս, ապա դրան հաջորդում են արդյունքի ամբողջական սերիաները։ Ահա թե ինչու ղեկավարը պետք է շատ համբերող լինի։ Անշուշտ, այս ամենն արդյունավետ է, երբ գործադրվում է իր մասնագիտությունը սիրող, գիտակից, իր գործին հավատացող աշխատակիցների նկատմամբ։ Բայց պատահում են և այլ կարգի մարդիկ, այնպիսիք, որ պատահականորեն են մտել գիտության ասպարեզը։ Այդ դեպքում ծագում են լուրջ դժվարություններ, նույնիսկ՝ բախումներ։ Այդպիսի աշխատակիցներից մարդ ջանում է ազատվել, քանի որ գիտությունը ստեղծագործող մարդկանց տեղն է և ավելորդ ծանրություն չի հանդուրժում։

Իմ այն հարցին, թե ինչ գրողների է շատ սիրում, Խաչատուր Սահակովիչը պատասխանեց անմիջապես.

— Շատ եմ սիրում դասական գրականությունը, հատկապես Պուշկինի, Լերմոնտովի, Թումանյանի, Իսահակյանի պոեզիան։ Սիրում եմ ավելի, քան ժամանակակիցը։ Այս առումով ես բոլորովին ժամանակակից չեմ։ Սիրում եմ թատրոնը։ Սակայն չափազանց ծանրաբեռնվածությունը թույլ չի տալիս հաճախ լինել այնտեղ։ Այս ամառ երկու անգամ եմ դիտել ժամանակակից ներկայացումներ։

— Ամենից ավելի մարդու ո՞ր արժանիքն եք գնահատում,— հարցրի ես։

— Մարդու, գիտնականի գլխավոր հատկանիշը, իմ կարծիքով, ազնվությունն է, օրինավորությունը։ Եթե մարդն ազնիվ է, ապա նա պետք է լավը լինի և՛ որպես մարդ, և՛ առավել ևս որպես գիտնական։ Հույժ կարևոր է կարողանալ ժամանակին քաջություն ունենալ և արժանին հատուցել այն մարդկանց, ովքեր տվյալ ասպարեզում կատարել են քեզնից ոչ պակաս, կամ նույնիսկ քեզնից ավելի շատ։

Մարդու ամենասոսկալի հատկությունը անազնվությունն է։ Դրանից են բխում շատ դժբախտություններ և ընդհարումներ, տուժում է ընդհանուր գործը։ Ամեն մարդ չէ, որ մինչև

վերջ ազնիվ է լինում իր հանդեպ բարիք գործած մարդկանց նկատմամբ: Երբեմն մարդ անաչառ է ձևանում, իսկ վճռական իրավիճակում փախուստի է դիմում: Եվ այդ ժամանակ առջևդ կանգնում է այնպիսի մի երեսպաշտ, որ սարսափում ես ու մխիթարում ես քեզ այն մտքով, որ այդ մարդու հետ այլևս ոչ մի հարաբերություն չես ունենա:

Հետո մենք անդրադարձանք մեր օրերի անհանգիստ աշխարհին:

— Համաշխարհային իրադարձություններում ինձ, ինչպես և սովետական բոլոր մարդկանց, մտահոգում է խաղաղության գործը, անհանգստացնում է ԱՄՆ-ի անսանձ ռազմամոլությունը,— ասաց նա:— Բայց մենք հուսով ենք, որ կհաղթանակի մարդկային առողջ բանականությունը: Եվ գիտության մեծագույն հայտնագործությունները ի սպաս կդրվեն ոչ թե քաղաքակրթության կործանմանը, այլ նրա հետագա առաջընթացին:

Գիտության, տեխնիկայի ոլորտներում Խաչատուր Սահակովիչի ներդրած ծանրակշիռ ավանդը բարձր են գնահատել մեր երկրի ճանաչված, վաստակաշատ գիտնականները:

**Ակադեմիկոս Ն. Վ. Բելով.**— Խ. Ս. Բաղդասարովը անտարակուսելիորեն հանդիսանում է համաշխարհային գիտության ընդունակ գիտնականներից մեկը՝ բյուրեղների աճի, դրանց գիտատեխնիկական կիրառության բնագավառում:

**Ակադեմիկոս Բ. Կ. Վայնշտեյն.**— Խ. Ս. Բաղդասարովի գիտական հետազոտությունների արդյունքները լայնորեն հայտնի են մեր երկրում և արտասահմանում: Դրանց հիման վրա աշխարհի մի շարք երկրներում ծավալվում են հետազոտությունները դժվարահալ միաբյուրեղների գոյավորման բնագավառում:

**Ակադեմիկոս Ռ. Վ. Խոխլով.**— Հետազոտելով ու զարգացնելով միաբյուրեղների բարձրջերմաստիճանային սինթեզի մեթոդները՝ Խ. Ս. Բաղդասարովն ստեղծել է բյուրեղների բարձրջերմաստիճանային աճի գիտական և արտադրական խոշոր դպրոցներ:

**Ակադեմիկոս Ա. Մ. Պրոխորով.**— Խ. Ս. Բաղդասարովն իր աշխատություններով մեծ ավանդ է ներդրել երկրի գիտատեխնիկական առաջընթացում:

Ինձ մնում է մեծագույն բավականությամբ ու հաճույքով միանալ մեր երկրի ականավոր գիտնականների այս կարծիքներին:



# ՀՈԳՈՒ ՊԱՐՏՔԸ

Երբ կարդում ես **Ռուստամ և Դալիրե** գիրքը*, ամենից առաջ ուրախացնում, տեղ-տեղ ուղղակի հիացնում է քեզ այն ջերմ հուզավառությունը, որի մթնոլորտում, որի «թևերով» հեղինակը շարահյուսել է քնարաշունչ ու սխրալից իր պատմությունը: Իսպառ մոռանում ես անգամ, որ ի վերջո գործ ունես երկարամյա ու բազմաբովանդակ կյանքը քաղաքական-կազմակերպչական, մշակութային գործունեությամբ անցկացրած, թեկուզև, փոքրուց «իր համար» բանաստեղծելու սովոր մի հեղինակի հետ: Ներսես Ներսիսյանը, ութսուն տարեկանում գրիչ վերցրած պարսկերեն այս ռեքվիեմով երգել, հավերժացրել է ջահել օրերի իր ընկերների հիշատակը:

Երկը լույս է ընծայել «Սովետսկի պիսատել» հրատարակչությունը: Վիպական պատմությանը նախորդում է վաղեմի մի վերհուշ. 1922-ի մայիսին Ներսես Ներսիսյանը Երևանից գործով մեկնում է Թեհրան: Իր փայփայած մի նվազ հույսը՝ գտնել Գիլանում զոհված ընկերների հետքերը— նամակներ, վավերաթղթեր, գեթ կենսագրական ինչ-որ տվյալներ, ի դերև է ելնում: Վերադարձին, Ռեշտում, Հայկական հանրապետության դեսպանի հետ նա հանգրվանում է մի բարեկեցիկ հայ ընտանիքում, և մեկնելիս երիտասարդ տանտիրուհին նրան նվիրում է գեղապանույն մի արկղիկ, որը բաց է անում տուն հասնելուց հետո միայն...

Միշտ անհետաձգելի գործերով զբաղված, նա չի նկատում, թե ինչպես գլորվում են տարիներն ու տասնամյակներն իրար ետևից. մի անգամ Տաջիկստանում, իրենց ավագ ընկերը և ուսուցիչը՝ Շիր-Մամմադ Ախունդզադեն (Բահրամ Սիրուս մականունով) հարցնում, հիշեցնում, պարտադրում է. «Գրեցի՞ր այն ջահելների մասին. չի՛ լինի, որ մի հիշատակ չմնա նրանցից»:

Այդ հիշատակն է այս գիրքը՝ **Ռուստամ և Դալիրեն:**

Բացի նախերգանքից ու վերջերգից երեք բաժին ունի գիրքը. **Ծարավը, Սովը, Հագեցումը.** ճշգրիտ, իմաստալից խորագրեր: Երեք բաժիններն էլ բնաբան ունեն պարսից մեծագույն քնարերգակ Հաֆիզի տողերը: Սիրահարի մենությունն է սգում առաջին քառյակը, և այդ է իրոք այս բաժնի միջանցիկ «առանցքային» միտքն ու իրավիճակը:

Վիպական գործողությունը բացվում է Թեհրանի Ղավամ-օլ-Սալթանե փողոցի կենդանի, աշխույժ նկարագրությամբ: Օրվա լարված ժամին՝ կեսօրին, գեղջուկ իշատերերի խումբը սաստիկ իրարանցում, հարահրոց է առաջացնում փողոցում, որից չարաչար տուժում է մի ըմբոստ հայ երիտասարդ՝ Սամվելը, անկարող լինելով հանդուրժել ոստիկանի անօրեն վարմունքն իրենց հանդեպ: Հենց այս համարձակ մարդու որդին՝ Ռուստամը, ուշիմ և աշխատասեր մի պատանի, կարողանում է ընդունվել այդ փողոցի վրա գտնվող ամերիկյան ուսումնարանը և այնտեղ մտերմանում է երկու ուրիշ հայ աշակերտների հետ: Ռուստամի միջոցով էլ հետո մասամբ հեղինակն առաջ է տանում վիպական պատմությունը, որը շուտով փոխակերպվում է նամականիի՝ Ռուստամի և հարևան՝ իգական դպրոցի աշակերտուհի Դել-Արայի միջև:

Առինքնող է վիպական երկու հերոսների առաջին հանդիպումը: Տղաների դպրոցին կից ընդարձակ պարտեզի մեջ է աղջիկների դպրոցը: Տղաներին արգելված է բացել պարտեզահայաց պատուհանները: Բայց երեք ընկերները, իրենց արտասովոր ջանասիրությամբ տարին երկու դասարան փոխելով, արտոնություն են ձեռք բերում նախաճաշի ժամին դասարանում մնալու: Նրանցից ավագը, արգելքն արհամարհելով, դիտում է այն կողմի անցուդարձը: Եվ ահա, տեսնում է, թե ինչպես գարնանը հորդ հեղեղատի վերածված առվի բերանն է ընկնում այգում ընկերուհու հետ զբոսնող մի աղջիկ: Ռուստամը, պատու-

* Нерсес Нерсесян. Рустам и Далире. М., «Советский писатель», 1983 г.

հանից վար ցատկելով, փրկում է այս մատաղահաս աղջկան ջրապտույտի մեջ խեղդամահ լինելուց: Այս երկուսի միջև ծայր առած նամակագրությունը տարիներ շարունակ մնում է նրանց կապի միակ միջոցը: Կրոնից բացի նրանց անջատում, որևէ հանդիպում երկուստեք վտանգավոր է դարձնում կաստայական արգելքը. աղջիկը իշխանական տնից է: Հետզհետե ավելի մտերմական ու բովանդակալից են դառնում նամակները, փոխադարձաբար «լուսավորելով» երկուսին ու հոգեկան անխզելի կապ ստեղծելով նրանց միջև:

Տղան սիրած աղջկան հաղորդում է և իր ընտանիքի, հողազուրկ գյուղացու, պարսիկ խանին ճորտագրված հայ ռայաթի հոգսերը, և ընթերցողի առջև ուրվանկարվում է Իրանի հայ գյուղացիության դարուս տասնական թըվականների կյանքի դառնադաժան պատկերը: Գյուղական համայնքի մեջ անջատվում են Ռուստամի հոր՝ ըմբոստ հայ գեղջուկի և, մանավանդ, Սուսան տատի տպավորիչ դեմքերը: Տիպական է մանավանդ վերջինս՝ ուժեղին հարմարվելու և համակերպվելու կենսափիլիսոփայությամբ, աշխարհիս տերերի հովանու տակ ինչ գնով էլ լինի հնազանդ ապրելու իր հորդորներով: Որդու ձախորդությունների համար էլ նա մեղավոր է համարում նրա հորը՝ իր ամուսնուն, առհասարակ «նրանց կողմը», և այդ «ցեղագրությունը» տանում-հասցնում է մինչև Նոյ նահապետը, որը, ինչպես համոզված է, նույնպես չենթարկվող, համառ, իր ասածի մարդ է եղել: Բնորոշ է այս կնոջ՝ միամիտ հավատքով արած մի այլ պնդումը. թե՝ քանի որ հայերեն մարդ արարածին անվանում են «ադամորդի»՝ Ադամի զավակ, պարզ է, ուրեմն, որ երկրագնդի երեսին ապրած առաջին մարդիկ բոլորն էլ հայ են եղել...

Այս կերպ, «ինքն իրեն» գծագրվում է և իրարից տարանջատվող սերունդների փոխհաջորդումը մեր դարասկզբին, մի շրջափոխություն, որը երրորդ սերնդի ներկայացուցչին՝ Ռուստամին, տանում, գործուն մասնակիցն է դարձնում Գիլանի՝ 1918 թվականի հեղափոխության:

Ուշագրավ, համոզիչ են հայ և պարսիկ հողագործների կրոնական խտրականությունից ու ազգային թշնամանքից զերծ հարաբերությունները Ռուստամի ծննդավայրում՝ Վերին Զանախչի գյուղում:

Ավելի ցայտուն և ամբողջական է, սակայն, կեղեքիչների, պարսիկ ֆեոդալների ու պաշտոնյաների սոցիալական դեմքը մեծ տերությունների անհաշտ պայքարի թատերաբեմ հանդիսացող Իրանում: Հավաստիորեն տպավորիչ են Դել-Արայի հոր շահամոլությունը ու դաժանությունը, նրա խորամանկ դիմափոխությունը պատերազմի ժամանակ ամեն մի նոր իրադրության հարմարվելիս:

Համարյա բոլոր դրվագներում, ողբերգական իրադարձությունների նկարագրության մեջ տեղ-տեղ պոռթկում է գրվածքի հերոսների հումորը, որը, անշուշտ, բխում է հեղինակի մարդկային խառնվածքից:

Բայց և այնպես գրավիչն այս գրքում նրա երկու գլխավոր հերոսների ապրած մտավոր ու հոգեկան կյանքն է, որը սիրով և իմացությամբ գեղանկարում է հեղինակը:

Առաջին, տևական և ուժեղ հոգեբանական ազդակը Ռուստամի արթնացման, արիացման մեջ վիրավորանքի, նվաստացման այն զգացումն է, որ լեռնային բնության ծոցում աչք բացած տղայի հոգում հարուցում են ուսման շրջանում նրա դեմ ծառացող արգելքները:

Իհարկե, ժամանակի ընթացքում հասարակական իրադրության ճանաչումով և իր անձնական կենսափորձով միայն նա աստիճանաբար գիտակցում է այդ բոլոր արգելքների անհեթեթությունը: Իսկ սկզբում նրա մեջ խոսում է զգացմունքը միայն, մանավանդ կեղեքված գեղջուկ տղայի մեջ արթնացած հըպարտության զգացումը: Բնական ու հասկանալի է, երբ, ստանալով ազնվական ընտանիքում մեծացող աղջկա սիրո խոստովանությունը, նա շտապում է զգուշացնել աղջկան այն վտանգներից, որ սպառնում է նրան իրենց մտերմությունը: Իսկ աղջկա աներկյուղ, սիրատենչ պատասխանն ալեկոծում է նրա հոգին:

«Ռուստամի ձեռքով հստակ շարադրված» էջերը երկուսի ապագա գիտակցական սըխրանքի հոգեբանական նախադրյալներն են բացահայտում: Գրքի լավագույն էջերից են դրանք: Հետաքրքրական է Ռուստամի Դել-Արային գրած «նամակների տրցակը», մանավանդ խռովահույզ թափառումի երեք գիշերների «հաշվետվությունը» աղջկան: Որոշիչ զգացմունքն այստեղ ցավկոտ, բայց և անզոր բողոքն է հենց այդ անհամար արգելանքների դեմ: Նրա ատելության առաջին առարկան աղջիկների դպրոցի վրա բացվող պատուհանի թանձրանկրկ, անթափանց ապակին է: Ահա տղայի հոգեվիճակը փախուստի, մենության այդ գիշերներին. «Պատերն էին արգելափակում ինձ, փողոցների այդ մեռյալ պատերը, որ դեմս կտրում էին ամեն կողմից: Ուր էլ գնայի, նրանց էի դեմ առնում և չէի կարող պրծնել. բռնում պահում էին ու բաց չէին թողնում: Ինչպես այն ատելի պատուհանը, որի մեջ քեզ տեսա... Ինչպե՞ս էի ատում



ես այդ ապակին: Իմ զգացած վախի համար էի ատում, այդ վախի համար ամաչելուց, ամոթի՛ զգացումն էր տանջում ինձ...: Ինչի՞ց էի վախենում: Հետո գլխի ընկա. միստր Ջորդենից, չլինի թե դուրս անեն դպրոցից... Ուրեմն դպրոցը նույնպես թակարդ է: Հրապուրել, բռնել են քեզ՝ ինչպես կաքավի, իսկ դու դեռ ուրախ ես, որ թպրտում ես ցանցի մեջ»:

Հետո, հաջորդ գիշերներին տղայի մեջ գլուխ է բարձրացնում **վախը** (չլինի թե տեսնեն իրեն հարուստների թաղամասերում ուշ գիշերին թափառելիս և սիրած աղջկա դղյակի մատույցներից ուղիղ շպրտեն ոստիկանատան մի խուց), և տիրում է մռայլ, անլույս մտորմունքը: Իսկ երեք օր անց, տղաների հետ իրենց ընդհանուր սենյակն է վերադառնում մի ուրիշ, ասես նոր ծնված Ռուստամ, որ շատ բան է կռահել (խորհրդածելով նաև իր համագյուղացիների ճակատագրի մասին):

Այստեղ, **Վախը** ենթագլխում, կա «գյուղից մնացած» մի ցնցող հուշապատկեր: Նարանա լեռների սարահարթում անջրդի մի հողակտոր ունի իրենց ընտանիքը: Աղբյուրը հեռու է, ձորում: Ջրի գնալիս թփի տակ տղան տեսնում է իրար փարված լեռնային կաքավների մի ողջ ընտանիք. չեն շարժվում, մեռած են ասես: Սարսափահար փախչում է յուրայինների մոտ: Պարզվում է, որ վերից այս կաքավներին հետևող արծիվն ուժգին սլացքով խոյացել է իր որսի վրա, խրվել փշոտ ճյուղի մեջ ու սատկել-մնացել է այդտեղ: Իսկ վարը՝ թփի տակ, կաքավներն են տուժել արծվի սարսափից. խեղճ, անզոր, անպաշտպան կաքավները:

Գալիս են մեծերը, տեսնում: Հայրը բացատրում է տղային. «Արծվի սարսափից... Կարծել են՝ նայում է, հետապնդում է իրենց... Ինչից են մեռե՞լ. վախի՛ց: Սրտաճաք են եղել, հասկացա՞ր»:

Տղան դաս է առնում գյուղի կյանքի այս և այլ եղելություններից. «Վախը մահ է, վախը մահից էլ վատ է»:

Ահա հոգեկան վերափոխման նախադրյալները դեռևս Թեհրանի ամերիկյան դպրոցի աշակերտ Ռուստամի կյանքում, որոնք անջնջելի տպավորություն են թողնում և նրա սիրած աղջկա վրա: Նրանց նամակները համեմվում, ողողակի գեղազարդվում են պարսից մեծ բանաստեղծների իմաստուն մտքերով ու ամբողջ քառատողերով: Ընթերցողին չըպետք է զարմացնի այս բանը: Իրանում գրագետ մարդու համար Սաադիի, Հաֆիզի, Ֆիրդուսու, Խայյամի և մյուս դասական բանաստեղծների ժառանգությունը հաց ու ջուր է, ամենօրյա հոգեկան սնունդ:

Ռուստամի վրա մեծ ազդեցություն է գործում ժամանակակից բանաստեղծը՝ Աբոլղասեմ Լահութին՝ ճշմարտության ու արդարության իր քարոզով: Տղային ոգևորում և նրա կյանքի ուղեկիցն է դառնում և ինքը՝ դեմառդեմ հանդիպած բանաստեղծը, և Ռուստամը մոլեգնության հասնող կրքով կրկնում է Լահութիի մեծ վարպետին՝ Սաադիին տված երդումը. «Եվ եթե իմ ազատության բերած այդ ճշմարտությունն ու արդարությունը՝ Հաղիղաթը, գրոհի հենց ինձ վրա՝ վագրի նըման կուրծքս հոշոտելու և սիրտս կորզելու, և ինձ վիճակված լինի կործանվել ու փոշիանալ, այդ դեպքո՛ւմ նույնիսկ ես ազատություն կտամ ճշմարտությանը՝ ազատ արձակելով վագրին»:

Իրանական էպոսի համար տիպական մի մտակառուցում...

Վախն ու արգելանքը և դրանցից բխող նվաստացման զգացումը դեռ երկար հետապնդում ու շատ անգամ նեղում են Ռուստամին, նույնիսկ մայրաքաղաքի այն հայ ընտանիքում, որ օթևան է տվել նրան ու իր երկու ընկերներին: Այստեղ նրանք տեսնում են կյանքի խոցերը, հաղթահարում արյան մեջ մտած վախը, կոփվում կյանքի կռվում:

Բավական ժամանակ է անցնում, մինչև Ռուստամը գլխի է ընկնում, որ անհնար է իր անձնական երջանկությունն առանց ընդհանուր վերափոխման: Նյութական մեծ զոհողությունների գնով նա քաղաքում սովորելու էր գնացել ընդամենը հեռագրիչ դառնալու, ամսական քսան թուման վաստակելու հույսով: Ի վերջո, սակայն, դառնում է հեղափոխական, արդեն ո՛չ միայն նյութապես, այլև ֆիզիկապես անապահով մի մարդ: Իսկ սովի տարին՝ 1918-ին, նա թողնում է դպրոցը և գալիս իրենց գյուղը: Այդ օրերին առավել դաժանորեն է դրսևորվում հողատերերի ու դրամատերերի տմարդությունը:

Ուշագրավ է Դել-Արայի և Ռուստամի հանդիպման նախօրյակին տղայի ապրած տագնապի նկարագրությունը: Կյանքում իր տեղը որոնող աշակերտը չէ այլևս Ռուստամը: Անսահման սիրելով հանդերձ, նա լիակատար ազատություն է տալիս սիրած աղջկան: «Իմացի՛ր, Արև՛, քո կյանքը քեզ է պատկանում, դու ազատ ես վճիռ կայացնելու— ...Բայց ինչպես էլ որոշես, ես օրհնում եմ քեզ նրա համար, որ դու կաս, ապրում ես այս երկրագնդի երեսին, և որ կյանքումս ես քե՛զ հանդիպեցի»:

Գեղարվեստական ամենամնայուն հաջողությունն այս վիպերգում, մեր կարծիքով, աղջ-

կա՝ Դել-Արայի կերպարն է: Դել-Արա, նա ինքը բացատրում է իր նամակներից մեկում, նշանակում է **«սրտի զարդ»**: Իսկ հետո, երբ փախչում է հոր տնից, անցնում Գիլանի հեղափոխականների մոտ, փոխում է և իր անունը՝ կոչվելով Դալիրե, այսինքն **«անվեհեր»**:

Վիպերգում գտնված է այս աղջկա խոսելաձևը՝ խոստովանատոն, որը, ինչպես հայտնի է, Արևելքի և Արևմուտքի գրականությունների մեջ վիթխարի շառավիղ ունի՝ հին դարերից սկսած մինչև նորագույն, հաճախ նույնիսկ մոդեռնիստական երկերը, և որն ավելի քան հարմար է գալիս հերոսուհու զեղումներին, նամակներում լինեն դրանք, թե օրագրային նշումներում:

Գրքի երկրորդ բաժնում, որը կրում է **Սովը** խորագիրը, ծանոթանում ենք Դել-Արայի օրագրին, որով նա անպատասխան զրույցի է բռնվում սիրածի հետ և զայրույթով դիմում է Աստծուն. «Ի՞նչ հանցանք ենք գործել քո դեմ, ժողովրդի՛ դեմ, պարսիկների դեմ, հայերի դեմ, քրիստոնյաների դեմ, մահմեդականների դեմ... որ այսպես դաժանորեն պատժում ես մեզ»:

Դել-Արան այստեղ էլ իր ողջ էությամբ. մտածելակերպով ու հուզաշխարհով պարսիկ խանի ընտանիքում հասակ առնող աղջիկ է: Նրան տանջում է հոր անտարբերությունն ու արհամարհանքը նույն հարեմում ապրող նրա կանանցից չորրորդի՝ իր մոր հանդեպ, մոր իրավազուրկ վիճակը, նրա համակերպումն ամեն կոպտության ու անարգանքի: Այս աղջըկան խորթ չեն նաև սնոտիապաշտությունը, երկյուղն ու ակնածանքը կրոնի հանդեպ: Դել-Արան միևնույն ժամանակ գիտե, որ իր հայրը վիթխարի քանակությամբ ցորեն է ամբարել՝ ճարակող սովի ամենաճակատագրական պահին վաճառքի հանելու: Այսպիսի ծանրակշիռ սոցիալ-հոգեբանական հանգամանքներն են հարկադրում նրան՝ երես դարձնել հորից, նրա կաստայից, իշխողների դասից, իր միջավայրից առհասարակ:

Իր հոգեկան վերափոխման այս վիճակում գտնվող աղջկա համար հույժ բնութագրիչ է նրա նամակը դեմոկրատական հովերով հանդես եկող շահզադեին՝ թագաժառանգ Սուլեյման Միրզային: Իսկ արգելքները նրա հոգեկան ազատագրման ճանապարհին դեռ վիթխարի են: Դրանք պատկերանում են աղջըկան իբրև Թեհրանի ու Կասպից ծովի միջև, արևելքից արևմուտք ձգված Ալբորզի (Էլբուրս) լեռնաշղթան, որի ձյունածածկ լեռնապարերը պետք է հաղթահարել՝ ըղձալի հանգրվանը հասնելու համար: Այն պահին անգամ, երբ նա արդեն հոգեպես պատրաստ է այդ սխրանքին և այդ անցումը կատարում է իր սիրելի ընկերուհու՝ աշխատավոր ընտանիքի զավակ Սաքինեի հետ, մնում է դեռ մի այլ, դժվարանցանելի անջրպետ ևս: Կհավատա՞ն, կվստահե՞ն արդյոք իրեն՝ իշխանուհուն, բոլորովին ուրիշ, կեղեքյալ ժողովրդի ծոցից ելած այն մարդիկ, որոնք սկզբից ևեթ ոչինչ չեն ունեցել կորցնելու: «Սերը բացեց մեր աչքերը, որպեսզի տեսնենք ու հասկանանք,— գրում է նա Ռուստամին իր կյանքի այդ վճռական բեկման նախօրեին:— Մենք ոչինչ չունենք քաշվելու մեր սիրուց, իսկ հպարտանալ նրանով իրավասու ենք, այն օգնեց մեզ մարդ դառնալու... Չծիծաղես ինձ վրա, Ռուստա՛մ ջան, եթե ասեմ, որ ուխտագնացությունից վերադառնալուց հետո ես ինձ երևակայում եմ մի Ժաննա դ'Արկ, որ Ռախշին նստած իր Ռուստամին է սպասում»:

Այս ամենը սոսկ արևելյան, իրանական կոլորիտ չէ գրքում, կենցաղ է, հոգեբանություն, լեզու, արտահայտչաձև:

Երրորդ՝ **Հագեցում** բաժնում մի վերջին ինքնաքննություն, հոգեբանական ինքնաժխտում ու ինքնահաստատում է ապրում Դալիրեն իրեն արդեն անհաշտ թշնամի հորը, նրա պալատը լքելուց հետո: Դրա արտահայտությունն է նրա պատասխանը Ռուստամի այն նամակին, որտեղ նա իր համոզմունքն է հայտնում, թե մարդիկ բաժանվում են ոչ թե ըստ հավատի, ըստ ազգության, ըստ իրենց զբաղմունքի, տարիքի կամ մորթի գույնի: Նրանք բոլորը սոսկ երկու տեսակ են լինում. «մարդ» և «նամարդ»:

Այս «բանաձևը» նաև աղջկա սրտովն է հիմա, և նա իր հորը հաշիվ է ներկայացնում հենց նրա տմարդի արարքների համար. դրանք շատ են, նաև նրա ստորաքարշ ընթացքը ռուսաց ցարի ու ցարական գեներալների առաջ, և հետո՝ 1917-ին, երբ նրանք ուժազրկվում են, խոհեմ ու շրջանկատ անցումը բրիտանական առյուծի հովանու տակ:

«Վերջին լուրերը», որ այս գրքում ստանում ենք Դել-Արայից, այն են, որ նա եղել է Բաղդադում, հետո «կրկին գնացել է («եղբորը փնտրելու»), այս անգամ Աստրախան, իբրև Սիրուսի (Ախունդզադեի) անձնական կապավոր, նրա կողմից՝ Կիրովի մոտ»: Իսկ Ռուստամը գիտե նաև, որ իր ընկերուհին, ճանապարհվել է «մի անգլիական լրտեսի, ռուս սպիտակգվարդիականի հետ»:

Ըստ էության այստեղ ամբողջանում է վիպական պատմությունը:

«Սովետսկի պիսատել» հրատարակչությունը մեծ խնամքով է տպագրության պատրաստել և լույս ընծայել այս գիրքը: Թարգմանչուհի Աննա Մլինեկը հաջողությամբ հաղթահարել է նյութի դժվարությունները: Շատ բանով է զգալի և այն լուրջ ու խնամոտ գրական աշխատանքը, որ կատարել են հրատարակչության գեղարվեստական խմբագիրները՝ Մայա Կուզանյանը և Անտոնինա Պովոլոցկայան: Հաճելի տպավորություն է թողնում գրքի ձևավորումը, որ կատարել է նկարիչ Վալերի Լոկշինը: Հեղինակի՝ Ներսես Ներսիսյանի լուսանկարի հետ, գրքի առաջին կազմաշապկին մենք տեսնում ենք Բահրամ Սիրուսի, այդ «հավերժական ճամփորդի» արտահայտիչ դիմապատկերը՝ Լահութիի նրան բնութագրող բանաստեղծության հետ միասին: Իսկ վերջին կազմաշապկին՝ բանաստեղծ Աբոլղասեմ Լահութիի նկարն է և նրա ընծայագիրը 1927-ին իր «սիրելի եղբորը»՝ Ներսես Ներսիսյանին նվիրված գրքի վրա:

Եզրափակիչ մի հուզիչ ակորդ ևս կա, արդեն **Վերջերգում**: Ինտերնացիոնալիզմի, տարբեր ազգերի աշխատավորների համատեղ պայքարի մասնակիցների բարեկամության վառ արտացոլումն է այդ: Ռուստամը մի տեսակ մայիսյան տոնակատարություն է կազմակերպում Կասպիականի հուզախռով ջրերի վրա: Նավակում են կոմունիստներ հայ բեռնակիր Հակոբի որդին՝ Դանյարը, պարսիկ հողագործի աղջիկ Փարվինը, Ահմադը և Ֆադիդան, Ռուստամը և իր Դել-Արան՝ Դալիրեն, հարուստ արիստոկրատական ընտանիքի փափկասուն դուստրը: Նրանք զինվորագրվել են Իրանի աշխատավորության ազատագրության պայքարին: Եվ հնչում է նրանց ազատաբաղձ երգը՝ **Վարշավյանկան**, ռուսերեն, ապա՝ պարսկերեն: Ռուստամի և Դալիրեի նախահարսանեկան զբոսանքն էր այդ, ընկեր-բարեկամների հոգևոր ճոխ խնջույքը: Իսկ հետհարսանեկան նրանց կյանքը մեկ տարի է տևում: Չիթենու դարավոր անտառի եզրին, շահի՝ հարավից գրոհող զորքերից Մենջիլի մեծ կամուրջը պաշտպանելիս, երբ հեղափոխական ջոկատները օգնություն են սպասում թևերից, օգնողների փոխարեն դավաճաններ են վրա հասնում: Դիտապաստ ընկած Ռուստամի համար վրեժ լուծելով՝ Դալիրեն, արդեն մահառիթ գնդակը կրծքում, հասցնում է անվրեպ կրակել մատնիչի վրա, սպանել նրան:

Նույն ժամին ընկած երկու անձնազոհ երիտասարդներին հուղարկավորում են միասին, արդեն ընդմիշտ իրար կողքի... Գրքի ողբերգական ավարտը հեղինակն ամփոփում է պարսից մեծ բանաստեղծ Հաֆիզի լավատեսական այս խոսքերով.

*«Սի՛րտ իմ, համբերի՛ր... դու մի՛ վշտանա,*
*Այս երեկոն կունենա իր արշալույսը,*
*Եվ գիշերն այս իր վաղը կունենա»:*

Այսպես է վերջանում Ներսես Ներսիսյանի **Ռուստամ և Դալիրե** վիպակը, մի նոր քնարաշունչ դյուցազներգություն, շարադրված հընադարյան սիրավեպերի ավանդույթներով, քսաներորդ դարի հերոսական ու աղետալի իրադարձությունների համայնապատկերի վրա:

Հեղինակի համար ուրիշ բան չէ այս, քան հոգու պարտք՝ իր ընկերների, իրենց պատանեկության վեհ իդեալների հանդեպ և, միևնույն ժամանակ, մի նվիրական ավանդ ժամանակակից երիտասարդությանը, գալիք սերունդներին:

**Ռաֆայել ԱԹԱՅԱՆ**

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

**Հայրապետյան Ս.**— ՍՄԿԿ 26-րդ համագումարը զարգացած սոցիալիստական հասարակությունում երիտասարդության տեղի ու դերի մասին, ԵՊՀ հրատ., 1983 թ.:

**Թումանյան Վ.**— Արդի հակակոմունիզմը իմպերիալիստական ռեակցիայի գաղափարախոսությունն ու քաղաքականությունն է: ԵՊՀ հրատ., 1983 թ.:

**Վոլկոգոնով Դ.**— Գիտատեխնիկական առաջադիմությունն ու անհատի զարգացումը: ԵՊՀ հրատ., 1983 թ.:

**Պետրոսյան Վ.**— Ինտերնացիոնալիզմի դրոշի հավատարիմ, «Հայաստան» հրատ., 1983 թ.:

**Կիրակոսյան Ջ.**— Երիտթուրքերը պատմության դատաստանի առաջ, Երկրորդ գիրք, «Հայաստան» հրատ., 1983 թ.:

**Սիմոնյան Ա.**— Քաղաքամայր Երևանը, «Հայաստան» հրատ., 1983 թ.:

**Սարգսյան Ա.**— Հակակղերական միտքը Հայաստանում 19-րդ դարի կեսերին, ԵՊՀ հրատ., 1983 թ.:

**Բալյան Ա.**— Մանկավարժական հոգեբանության հարցեր, «Լույս» հրատ., 1983 թ.:




Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ, թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի 19.12.83 թ.: Ստորագրված է տպագրության 20.1.84 թ.: ՎՖ 04519: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16450: Պատվեր՝ 3342:*

Сдано в набор 19.12.83. Подписано к печати 20.1.84. ВФ 04519. Формат 70×108 1/16. Высокая печать. Усл. печ. л. 8,4. Учет.-изд. л. 9,8. Тираж 16450. Заказ 3342.

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении. Ереван-23, пр. Орджоникидзе, 2.